# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 ԴԵԿՏԵՄԲԵՐ, 1980
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ✦ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը Հայաստանի բանվորներին, կոլտնտեսականներին, մտավորականությանը, բոլոր աշխատավորներին ջերմորեն և ի սրտե շնորհավորում են մեծ տոնի՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության և Հայաստանի կոմունիստական կուսակցության 60-ամյակի առթիվ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը արմատական շրջադարձ նշանավորեց հայ ժողովրդի ճակատագրում: Նա հայ ժողովրդին բերեց իսկական սոցիալական և ազգային ազատագրություն, բացեց սոցիալիստական զարգացման լայն ասպարեզ, ցույց տվեց նոր, երջանիկ կյանքի ուղին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հենվելով ՍՍՀՄ ժողովուրդների, և ամենից առաջ ռուս մեծ ժողովրդի, անշահախնդիր եղբայրական օգնության վրա, Սովետական Հայաստանը անցած վաթսուն տարում ակնառու հաջողությունների հասավ տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ: Հայկական ՍՍՀ-ն արժանի ավանդ է մուծում բազմազգ սովետական պետության հզորացման, մեր մեծ հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման մեջ:

Հայրենական մեծ պատերազմի ահեղ տարիներին Սովետական Հայաստանի որդիները ու դուստրերը մեր սոցիալիստական հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ միասնական մարտական շարքում անձնվիրաբար կռվում էին ֆաշիստական զավթիչների դեմ և այդ պայքարում ցույց տվեցին արիության, խիզախության և հերոսության օրինակներ:

Սովետական Հայաստանն այսօր մի հանրապետություն է՝ բարձր զարգացած էկոնոմիկայով, որը երկրի ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսի կարևոր բաղկացուցիչ մասն է կազմում: Հայկական ՍՍՀ-ի դեմքն են բնորոշում ատոմային էներգետիկան, մետալուրգիան, էլեկտրատեխնիկական, էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, սարքաշինական, քիմիական, թեթև և սննդի արդյունաբերությունը: Որակական խոր վերափոխումներ են կատարվել գյուղատնտեսության մեջ: Աննախընթաց ծաղկման են հասել գիտությունը և հայ ժողովրդի հին, ինքնատիպ, ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Տարեցտարի բարձրանում է աշխատավորների նյութական բարեկեցությունը: Հանրապետությունում լայն հնարավորություններ են ստեղծվել աշխատավոր մարդկանց համակողմանի, ներդաշնակ զարգացման համար, պետության ու հասարակության գործերի կառավարմանը նրանց ակտիվ մասնակցության համար: Այս ամենը վառ կերպով վկայում է սոցիալիզմի ստեղծարար մեծ ուժը, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության

հաղթանակը, ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների համակողմանի զարգացման նկատմամբ կուսակցության և կառավարության մշտական հոգատարությունը:

Հանրապետության աշխատավորների նվաճումները անխզելիորեն կապված են Հայաստանի կոմունիստական կուսակցության՝ ՍՄԿԿ-ի մարտական և փորձված ջոկատներից մեկի գործունեության հետ: Իր բովանդակ վաթսունամյա պատմության ընթացքում Հայաստանի կոմկուսը հանդես է գալիս որպես մասսաների քաղաքական ղեկավար ու կազմակերպիչ: Նա աշխատավորներին անդուլ կերպով դաստիարակում է մարքսիզմ-լենինիզմի, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների հավատարմության ոգով:

Հանրապետության և Հայաստանի կոմկուսի հոբելյանը նշվում է ՍՄԿԿ XXVI համագումարի նախապատրաստության նշանակալի օրերին: Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները ակտիվորեն սոցիալիստական մրցության մեջ են մտել ի պատիվ կուսակցության առաջիկա համագումարի, հաջողությամբ ավարտում են տասներորդ հնգամյակի առաջադրանքները, անձնվիրաբար պայքարում հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի հետագա բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևի ցուցումների կենսագործման համար:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հաստատ վստահություն են հայտնում, որ Հայկական ՍՍՀ-ի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, այսուհետև ըստ ամենայնի կամրապնդեն մեր մեծ հայրենիքի հզորությունը, Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը, նոր հաջողությունների կհասնեն կոմունիստական շինարարության ասպարեզում:

Կեցցե՛ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը:

Կեցցե՛ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը՝ ՍՄԿԿ-ի մարտական ջոկատը:

Կեցցե՛ Սովետական Միության լենինյան կոմունիստական կուսակցությունը՝ սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը:

**ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**

**ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ**

**ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ
## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ
## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ

**Հայկական ՍՍՀ կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, բանվորներին, կոլտնտեսականներին, ինժեներատեխնիկական աշխատողներին, ծառայողներին, գիտնականներին ու մասնագետներին, հանրապետության բոլոր աշխատավորներին:**

Թանկագին ընկերնե՛ր:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն ի սրտե շնորհավորում է ձեզ աշխատանքային մեծ հաղթանակի՝ արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ընդհանուր ծավալի աճի տեմպերի՝ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղություններով տասներորդ հնգամյակի համար սահմանված առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու առթիվ:

Կարևոր է, որ արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի թողարկման ավելացումը ձեռք է բերվել, ինչպես որ սահմանված է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով, գլխավորապես արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, աշխատանքային և նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հաշվին: Հնգամյակի տարիներին հանրապետությունում խոշոր միջոցառումներ են իրականացվել գործող ձեռնարկությունների ընդլայնման, վերակառուցման ու տեխնիկական վերազինման, արտադրական կարողությունների արդյունավետ օգտագործման ուղղությամբ: Որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի արտադրության ծավալը աճել է ավելի քան չորս անգամ:

Ժամկետից շուտ են կատարվել ժողովրդական սպառման ապրանքների թողարկման, ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառության աճի, կապի արտադրանքի, բնակչության կենցաղային սպասարկումների ծավալի աճի հնգամյակի առաջադրանքները: Բարձրացել է աշխատավորների կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը:

Հետևողականորեն իրականացնելով կուսակցության ագրարային քաղաքականությունը, հանրապետության աշխատավորները տարեցտարի մեծացնում են գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ծավալները: Հաջողությամբ են կատարվել պետությանը հացահատիկային կուլտուրաներ, կարտոֆիլ, բանջարեղեն, շաքարի ճակնդեղ վաճառելու հնգամյա պլանները:

Հանրապետության արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման բարձր ցուցանիշները աշխատավորական կոլեկտիվների անձնվեր աշխատանքի, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական և քաղաքական հմուտ գործունեության արգասիքն են: Ուրախալի է նշել, որ աշխատավորները այդ հաջողությունները ձեռք են բերել փառապանծ հոբելյանի՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության և Հայաստանի կոմունիստական կուսակցության 60-ամյակի տարում:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն հաստատ վստահություն է հայտնում, որ Հայկական ՍՍՀ-ի բանվորները, կոլտնտեսականները, ինժեներատեխնիկական աշխատողները, ծառայողները, գիտնականները և մասնագետները այսուհետև էլ կգտնվեն կոմունիստական շինարարության հոյակապ պլանների իրականացման պայքարի առաջնագծում, ՍՄԿԿ առաջիկա XXVI համագումարը կնշանավորեն աշխատանքային նոր մեծագործություններով:

**Լ. ԲՐԵԺՆԵՎ**

**Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար**

## ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն Սովետի նախագահությունում, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՀՆԴԿԱՍՏԱՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի՝ Հնդկաստանի Հանրապետություն կատարած պաշտոնական բարեկամական այցի արդյունքները, որը տեղի ունեցավ 1980 թվականի դեկտեմբերի 8—11-ը, ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս ընկ. Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը ՍՍՀՄ-ի և Հնդկաստանի բարեկամության ու համագործակցության հարաբերությունների զարգացման և ամրապնդման ուղղությամբ, խորին գոհունակություն հայտնում Հնդկաստանի պրեմիեր մինիստր Ի. Գանդիի և մյուս հնդիկ ղեկավարների հետ վարած բանակցությունների ընթացքում ձեռք բերված արդյունքների առթիվ:

Անկեղծության ու փոխըմբռնման մթնոլորտում անցած այդ այցը կարևոր պատմական ուղենիշ դարձավ Սովետական Միության և Հնդկաստանի բարեկամության հետագա ամրապնդման ճանապարհին, որի կայուն հիմքը խաղաղության, բարեկամության ու համագործակցության սովետա-հնդկական պայմանագիրն է: Այցը նոր բովանդակությամբ լցրեց ՍՍՀՄ-ի և Հնդկաստանի ավանդական բարեկամական հարաբերությունները, ծանրակշիռ ավանդ եղավ Ասիայի և ամբողջ աշխարհի խաղաղությունն ու անվտանգությունը ամրապնդելու գործում:

Ինչպես իրավացիորեն նշեց Լ. Ի. Բրեժնևը Դելիի միտինգում ունեցած իր ելույթում, «Այսօր զարգացնելով Սովետական Միության և Հնդկաստանի բարեկամության հարաբերությունները, մենք բարի գործ ենք անում, ընդ որում, ոչ միայն մեր ժողովուրդների այժմյան սերնդի համար, այլև գալիք սերունդների համար, մարդկության խաղաղ ապագայի համար»:

Հնդկաստանում Լ. Ի. Բրեժնևի այցի ընթացքում ստորագրված փաստաթղթերը, նախ և առաջ սովետա-հնդկական համատեղ դեկլարացիան, նոր հորիզոններ են բացում սովետա-հնդկական հարաբերությունների զարգացման

ասպարեզում՝ ի բարօրություն երկու երկրների ժողովուրդների: Դեկլարացիայի գաղափարներն ու դրույթները հավանությամբ ընդունվեցին Սովետական Միությունում, Հնդկաստանում և աշխարհի այլ երկրներում:

Սովետա-հնդկական հարաբերությունները սոցիալ-տնտեսական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների կենսագործման ցայտուն օրինակ են: Այդ հարաբերությունները զարգանում են ի շահ երկու երկրների ժողովուրդների հավասարության ու փոխադարձ հարգանքի, սուվերենության խստիվ կիրառման և միմյանց ներքին գործերին չմիջամտելու հիման վրա և ուղղված չեն երրորդ երկրների դեմ:

Բանակցություններում նշվեց ՍՍՀՄ-ի և Հնդկաստանի տնտեսական, առևտրական, գիտատեխնիկական ու մշակութային համագործակցության բնագավառում ձեռք բերված զգալի առաջընթացը, համագործակցություն, որը զարգանում է պլանային ու երկարաժամկետ հիման վրա և էական ավանդ ներդնում երկու երկրների առջև ծառացած ժողովրդատնտեսական խնդիրների լուծման գործում: Այցի ընթացքում կնքված համաձայնագրերը նոր ազդակ կհանդիսանան նրանց է՛լ ավելի սերտ տնտեսական համագործակցության զարգացման համար:

Լ. Ի. Բրեժնևի Հնդկաստան կատարած այցի ժամանակ կրկին իր լիակատար հաստատումն ստացավ Արևելքի ժողովուրդների հետ բարեկամության ու համագործակցության լենինյան արտաքին քաղաքականությունը, իմպերիալիզմի, նեոգաղութատիրության ու ռասիզմի դեմ, ազգային անկախության և ազատության համար մղվող պայքարում նրանց ջանքերին աջակցելու քաղաքականությունը:

Սովետական Միությունը և Հնդկաստանը վստահություն հայտնեցին, որ մարդկության առջև ծառացած կարևորագույն խնդիրը խաղաղության ամրապնդումն է, նոր համաշխարհային պատերազմի կանխումը: Նշելով իմպերիալիստական շրջանների մեղքով աշխարհի իրադրության բարդացումը և լարվածության նոր օջախների առաջացումը, նրանք հանդես եկան միջազգային լարվածության թուլացման պրոցեսը պահպանելու և խորացնելու, այդ պրոցեսին անշրջելի և համապարփակ բնույթ հաղորդելու օգտին:

Լ. Ի. Բրեժնևը և Ի. Գանդին հավաստեցին, որ միջազգային կարևորագույն պրոբլեմների նկատմամբ Սովետական Միությունը և Հնդկաստանը հանդես են գալիս ընդհանուր կամ համանման դիրքերից: Նրանք հայտարարեցին, որ անհրաժեշտ է հակահարված տալ լարվածության թուլացման պրոցեսը խափանելու, ժողովուրդներին սպառազինությունների մրցավազքի նոր փուլ պարտադրելու, աշխարհում ստեղծված ռազմական հավասարակշռությունը իրենց օգտին թեքելու, ռազմական կոնֆլիկտների օջախները շատացնելու՝ խաղաղության հակառակորդների փորձերին:

Բանակցությունների ընթացքում Կողմերը այն համոզմունքը հայտնեցին, որ առաջնահերթ կարևորության խնդիր է սպառազինությունների, նախ և առաջ միջուկային սպառազինությունների մրցավազքի դադարեցումը, և վրճռականություն հայտնեցին այսուհետև էլ իրենցից կախված ամեն ինչ անել այդ նպատակներին հասնելու համար: Հավաստվեց խաղաղ գոյակցության սկզբունքները ամենուրեք գործնականում կիրառելու առաջնահերթ նշանակությունը, ելնելով այն բանից, որ Ասիայում, ինչպես որ ամբողջ աշխարհում, չլուծված պրոբլեմները կարող են և պետք է կարգավորվեն բացառապես խաղաղ միջոցներով:

Լ. Ի. Բրեժնևը Հնդկաստանում ունեցած իր ելույթներում վերլուծեց աշխարհի արդի իրադրության առանձնահատկությունները, պարզաբանեց սովետական դիրքավորումը միջազգային կյանքի արմատական պրոբլեմների նկատմամբ:

Շատ երկրների ժողովուրդներ հետաքրքրությամբ և հավանությամբ ընդունեցին նրա առաջ քաշած նոր կարևոր առաջարկությունները Պարսից ծոցի շրջանի երկրների, Սովետական Միության, ԱՄՆ-ի, արևմտյան այլ տերությունների, Չինաստանի, Ճապոնիայի, այն բոլոր պետությունների միջև համաձայնագիր կնքելու հիման վրա այդ շրջանի խաղաղությունն ու անվտանգությունն ապահովելու ուղիների մասին, որոնք շահագրգռվածություն կդրսևորեն դրա նկատմամբ: Սովետական Միության այդ առաջարկությունները նշում են մեր մոլորակի ամենապայթյունավի շրջաններից մեկում կայուն խաղաղություն ապահովելու խելամիտ, արդարացի և ռեալ ուղին:

Քաղաքական կանոնավոր կոնտակտները, երկու երկրների ղեկավարների փոխադարձ բարեկամական այցերը դարձել են Սովետական Միության և Հնդկաստանի հարաբերությունների անկապտելի ու կարևոր մասը:

Առանձնահատուկ նշանակություն ունեն սովետա-հնդկական բարձր մակարդակի հանդիպումներն ու կոնտակտները, որոնք հնարավորություն են տալիս ամփոփելու Սովետական Միության և Հնդկաստանի հարաբերությունների զարգացման արդյունքները և նշելու դրանց նոր բնագծերը, խորացնում են նրանց փոխըմբռնումն ու համագործակցությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, բարձր գնահատելով Լ. Ի. Բրեժնևի Հնդկաստան կատարած այցի արդյունքները, այն կարծիքին են, որ Դելիում կայացած հանդիպումները կարևոր ներդրում են ընդհանուր խաղաղությունն ապահովելու պայքարում:

Կուսակցական և սովետական ղեկավար մարմինները կառավարությանն ու հնդիկ ժողովրդին անկեղծ երախտագիտություն են հայտնում Հնդկաստանում ընկ. Լ. Ի. Բրեժնևին ցույց տրված ջերմ ու սիրալիր ընդունելության համար:

Սովետական ժողովուրդը, որը միահամուռ հանդես է գալիս ի պաշտպանություն ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության վարած խաղաղության լենինյան արտաքին քաղաքականության, խորին հավանությամբ ընդունեց Դելիի բանակցությունների արդյունքները: Այդ քաղաքականության նվաճումներն ու հաջողությունները մարդկանց ոգեշնչում են նոր մեծագործությունների կոմունիստական շինարարության ասպարեզում:

# ԴԵՊԻ ՆՈՐ ԲԱՐՁՈՒՆՔՆԵՐ

1980 ԹՎԱԿԱՆՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏՈՒԿ տեղ կգրավի մեր հանրապետության փառավոր տարեգրության էջերում։ Տասներորդ հնգամյակի ավարտական տարին, հնգամյակն ամբողջությամբ, պսակվեցին աշխատանքային նորանոր հաջողություններով։

Կենսագործելով կուսակցության XXV համագումարի որոշումները, կուսակցության տնտեսական քաղաքականության հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումները, մասսայական սոցիալիստական մրցություն ծավալելով իր 60-ամյա հոբելյանն արժանավայել դիմավորելու համար, Սովետական Հայաստանն արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ընդհանուր ծավալի աճի տեմպերով ժամկետից շուտ հասավ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններով նախատեսված մակարդակին։ Հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու առթիվ հանրապետության աշխատավորությանը շնորհավորեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։

Արդյունաբերության բնագավառում արտադրանքի թողարկումն ավելացել է 46 տոկոսով՝ առաջադրանքով նախատեսված 43—47 տոկոսի փոխարեն։ Կատարվել են մետաղահատ հաստոցների, դարբնամամլակային սարքավորումների, ծծմբաթթվի, ավտոդողերի, տրիկոտաժեղենի, կաշվե կոշիկի և արդյունաբերական արտադրանքի այլ կարևոր տեսակների արտադրության պլանները։ Հնգամյակի տարեկան առաջադրանքներից ավելի արտադրվել է 400 միլիոն ռուբլու արտադրանք, որից՝ 300 միլիոն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ։

Արտադրության ծավալի աճի ավելի քան 80 տոկոսն ապահովվել է գործող ձեռնարկությունների ընդլայնման, վերակառուցման, տեխնիկական վերազինման և տեղակայված կարողությունների օգտագործման արդյունավետության բարձրացման նպատակով զգալի աշխատանքներ կատարելու հաշվին։ Առավել արագ տեմպերով են զարգանում գիտատեխնիկական առաջընթացը որոշող արդյունաբերական ճյուղերը, որոնք ունեն նվազ նյութատարություն և նվազ էներգատարություն։ Որակական էական փոփոխություններ են կատարվել արդյունաբերության կառուցվածքի մեջ։ Արդյունաբերական արտադրության հիմնական աճը ստացվել է շնորհիվ զարգացման ինտենսիվ գործոնների արմատավորման։ Մշակվել և արտադրության մեջ ներդրվել են էլեկտրոնային հաշվիչ նոր մեքենաներ, թվածրագրային կառավարմամբ մետաղահատ հաստոցներ, տարածական մագնիսահաղորդակով ուժային տրանսֆորմատորներ և այլ տեսակի մեքենաներ, սարքեր, բարձրարտադրողական սարքավորումներ։

Հնգամյակի տարիներին ներդրվել է մոտավորապես 500 մեքենայացված հոսքային և ավտոմատ գիծ, կոմպլեքսայնորեն մեքենայացվել է ավելի քան 250 արտադրամաս, տեղամաս և արտադրություն, նորացվել է յոթ հազար միավոր արտադրական սարքավորում։ Մեծ աշխատանք է կատարվել արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, առաջավոր տեխնոլոգիայի, կառավարման, աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերի լայն ներդրման ուղղությամբ։ Բարձրացել է արտադրանքի որակը։ Մշակվել և արմատավորվում է որակի կառավարման հանրապետական սիստեմը։ Ավելի քան 2600 անուն արդյունաբերական ապրանքներ թողարկվում են պետական որա-



կանիշով, որոնց տեսակարար կշիռն արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ կազմում է ավելի քան 18 տոկոս։ Գերակշռող մեծամասնությամբ դրանք ժողովրդական սպառման ապրանքներ են։

Լայն թափ է ստացել պայքարը խնայողության ռեժիմն ըստ ամենայնի ուժեղացնելու, նյութական, վառելիքաէներգետիկ, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու համար։ Խնայվել են տասնյակ հազարավոր տոննա մետաղ, հարյուր հազարավոր տոննա վառելիք, ավելի քան 500 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Տնտեսվել են զգալի քանակությամբ նյութեր, որոնք հնարավորություն են ընձեռել իջեցնելու թողարկվող արտադրանքի ինքնարժեքը, ստանալու միլիոնավոր ռուբլիների արտապլանային արտադրանք։ Միայն հանրապետական ենթակայության արդյունաբերական ձեռնարկություններում հնգամյակի տարիներին տեղական նյութերից և արտադրության մնացուկներից թողարկվել է 45 միլիոն ռուբլու արտադրանք։

Հանրապետության մայրաքաղաքի արտադրական միավորումների և արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներն արդյունաբերական արտադրության աճի տեմպերով ժամկետից շուտ հասան տասներորդ հնգամյակի առաջադրանքի մակարդակին, ապահովելով արդյունաբերական արտադրության ծավալի 36 տոկոս աճ։ Հնգամյա առաջադրանքները հաջողությամբ են կատարել «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրաշարժիչ», «Հայարդկապ», «Մասիս» արտադրական, «Գարուն» և Կ. Ցետկինի անվան կարի միավորումների, ալյումինի գործարանի, Ֆ. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի և այլ առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները։ Արդյունաբերության աշխատողների ձեռք բերած բարձր արդյունքները բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների, գիտնականների և ծառայողների, մայրաքաղաքի բոլոր աշխատավորների անձնվեր ստեղծագործական աշխատանքի, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական նպատակասլաց աշխատանքի արգասիքն են։ Աշխատանքային այդ մեծ հաղթանակի առթիվ ՀԿԿ Կենտկոմը ջերմորեն շնորհավորեց Երևանի աշխատավորներին և հաստատ վստահություն հայտնեց, որ մայրաքաղաքի աշխատավորները կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ կամրապնդեն ձեռք բերած հաջողությունները, ավելի հաստատակամորեն պայքար կծավալեն աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման համար, աշխատանքային նոր մեծագործություններով կդիմավորեն ՍՄԿԿ XXVI համագումարը։

Արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի աճի տեմպերով հնգամյա պլանի առաջադրանքները կատարել են նաև Լենինական, Կիրովական քաղաքները, Աբովյանի, Նաիրիի և Հրազդանի շրջանները, թեթև արդյունաբերության, անտառային և փայտամշակման արդյունաբերության, տեղական արդյունաբերության, ավտոմոբիլային ճանապարհների շինարարության ու շահագործման, բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությունները, հանրապետության ավելի քան 220 արտադրական միավորումներ և ձեռնարկություններ։

Հանրապետությունը նշանակալի հաջողությունների է հասել արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման, արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման բնագավառում։ Արտադրության կառավարումը և նրա ճյուղային կառուցվածքը կատարելագործելու հետ մեկտեղ տեղի է ունենում արտադրողական ուժերի վերաբաշխման ինտենսիվ պրոցես, երբ դրանք ավելի ռացիոնալ կերպով են տեղաբաշխվում հանրապետության տարածքում՝ այն ոչ մեծ քաղաքներում ու բնակավայրերում, որոնք աշխատանքային ազատ ռեսուրսներ ունեն։ Դրա շնորհիվ փոքր քաղաքների և բնակավայրերի արդյունաբերական արտադրության աճը կկազմի 75 տոկոս, որը շատ ավելի բարձր է, քան հանրապետության միջին մակարդակը։

Ակնհայտ է տասներորդ հնգամյակում սոցիալիստական գյուղի աշխատավորների ներդրումը հանրապետության ժողովրդական տնտեսության զարգաց-

ման մեջ։ Անցած տարիներին հանրապետության գյուղատնտեսությունը հասավ ավելի բարձր աստիճանի, դարձավ առավել արտադրողական, ֆոնդահագեցված, ավելի ինտենսիվ։ Չնայած այդ տարիներին ընդհանուր առմամբ եղանակներն անբարենպաստ էին, հանրապետությունը հաջողությամբ կատարեց պետությանը բանջարեղեն, կարտոֆիլ, կաթ, բուրդ վաճառելու հնգամյա առաջադրանքը, իսկ հացահատիկի և շաքարի ճակնդեղի վաճառքի պլանը մեր պանծալի հողագործները կատարեցին չորս տարում։ Գյուղատնտեսության արտադրանքի ծավալի ավելացումն ապահովվել է հիմնականում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման հաշվին։

Արգասալի հաջողությունների հասան Անիի, Ախուրյանի, Սիսիանի շրջանների հողագործները, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Արտաշատի և Մասիսի շրջանների բանջարաբույծները, Արարատի, Շամշադինի և Թալինի շրջանների խաղողագործները, Նոյեմբերյանի, Աբովյանի, Նաիրիի, Արարատի և Գուգարքի շրջանների պտղաբույծները, Ստեփանավանի, Կրասնոսելսկի, Մարտունու, Մասիսի, Կամոյի շրջանների կարտոֆիլաբույծները, Ախուրյանի, Սպիտակի և Արթիկի շրջանների ճակնդեղագործները, Վարդենիսի, Աշտարակի, Եղեգնաձորի ծխախոտագործները, Հրազդանի, Նաիրիի, Կրասնոսելսկի, Աբովյանի, Ղուկասյանի և մի շարք այլ շրջանների անասնապահները։

Տասներորդ հնգամյակի տարիներին մեծ աշխատանք է կատարվել գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման ասպարեզում։ Իրականացվել է բուսաբուծության և անասնապահության աշխատատար պրոցեսների հետագա մեքենայացման, ջրատնտեսական շինարարության, հողերի մելիորացման միջոցառումների կոմպլեքս։

Տասներորդ հնգամյակի անցած տարիներին հանրապետության կուսակցական, սովետական, գյուղատնտեսական օրգանները կազմակերպչական, մասսայական-քաղաքական նպատակասլաց աշխատանք են կատարել։

Հիրավի, գյուղատնտեսական արտադրության վերջնական նպատակը բնակչությանը սննդամթերքներով և վերամշակող արդյունաբերությունը հումքով ապահովելն է։ ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումը խնդիր դրեց՝ ելնելով այդ նպատակներից, սահմանել դրանց իրականացումն ապահովող ուղիները։ Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն որոշում ընդունեց պարենային ծրագիր մշակելու մասին, ուր օրգանապես կմիացվեն գյուղատնտեսության և նրան սպասարկող արդյունաբերության ճյուղերի, մթերքների մթերման, պահպանման, փոխադրման ու վերամշակման, սննդի ինդուստրիայի և պարենամթերքների առևտրի զարգացման հարցերը։ Այդ ագրոարդյունաբերական պարենային կոմպլեքսը կպլանավորվի և կկառավարվի որպես միասնական ամբողջություն՝ ապահովելով վերջնական բարձր արդյունքներ։ Կուսակցությունը տնտեսական ու քաղաքական առաջնահերթ նշանակություն ունեցող խնդիր է համարում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության արագ վերելքը, ընդսմին նկատի ունենալով ինչպես այդ ապրանքների քանակը, այնպես էլ դրանց որակը, տեսականին։ Խնդիր է դրվում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը զարգացնել լավ մտածված, երկարաժամկետ ծրագրի հիման վրա, որը միավորի բոլոր ճյուղերի, ինչպես «բ» խմբի, այնպես և ծանր արդյունաբերության ջանքերը։

ՀԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը, ելնելով կուսակցության պահանջներից, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի առջև խնդիր դրեց համապատասխան մինիստրությունների, գերատեսչությունների, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի և մյուս գիտական հիմնարկների հետ համատեղ մշակել հանրապետության պարենային ծրագիր տասնմեկերորդ հնգամյակի և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի համար։ Այդ ծրագիրը նախատեսում է գյուղատնտեսական մթերքների արտադրության վերելք, գյուղատնտեսությանն սպասարկող արդյունաբերության ճյուղերի զարգացում, գյուղատնտեսական մթերքների պահպանման, ինչպես նաև դրանց վերամշակման և սպառողին հասցնելու գործը բարելավելու միջոցառումներ։



Գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի միջոցառումների պրակտիկ իրականացման գործում մեծ դեր է պատկանում կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ղեկավարներին ու սկզբնական կուսակցական կազմակերպություններին, կուսակցության գյուղական շրջկոմներին և շրջանների ակտիվին։ Հարկավոր է ըստ ամենայնի ուժեղացնել կազմակերպչական ու քաղաքական աշխատանքն անմիջականորեն կոլտնտեսություններում, սովխոզներում, միջտնտեսային ձեռնարկություններում, բրիգադներում և օղակներում, ֆերմաներում և տեղամասերում այն հաշվով, որ անհրաժեշտ նախադրյալներ ստեղծվեն տասնմեկերորդ հնգամյակի հաջող աշխատանքի համար։

Կուսակցության XXV համագումարի նշած կուրսին համապատասխան, հանրապետության հանրային արտադրության դինամիկ զարգացման, նրա արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման հիման վրա բարձրացել է ժողովրդի բարեկեցությունը։ Հնգամյակի ընթացքում ազգային եկամտից ժողովրդի կենսամակարդակի աճին հատկացվել է 3,5 միլիարդ ռուբլով ավելի, քան իններորդ հնգամյակում։ Ավելացել են բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները, բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձը, կոլտնտեսականների աշխատանքի ամսական միջին վարձատրությունը։ Իրականացվել է լայն մասշտաբներով բնակարանային շինարարություն։ Ընդլայնվեց ու զարգացավ սպասարկման ոլորտը։ Մեծացան մանրածախ ապրանքաշրջանառությունը, կենցաղային ծառայությունների ծավալը։ Բարեկարգվել ու գեղեցկացել են մեր քաղաքներն ու գյուղերը, մեծապես հարստացել է ժողովրդի նյութական և հոգևոր կյանքը։

Տասներորդ հնգամյակում ձեռք բերված նշանակալի հաջողություններով մեր ժողովուրդը դիմավորեց Հայկական ՍՍՀ-ի և Հայաստանի կոմունիստական կուսակցության փառապանծ վաթսունամյակը։ Այդ պանծալի տարելիցին նվիրված հանդիսությունները հանրապետությունում վերածվեցին հարազատ կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը Սովետական Հայաստանի աշխատավորների սերտ համախմբվածության վառ ցույցի։ Հայ ժողովուրդը գոհունակությամբ ընդունեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ողջույնը։ «Ուրախալի է գիտակցել,— ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի հանդիսավոր նիստում,— որ Սովետական Հայաստանի հոբելյանի տոնակատարությունը վերածվեց իսկական համաժողովրդական տոնահանդեսի, դարձավ մեր ժողովուրդների բարեկամության ու եղբայրության մեծ ու պայծառ տոն, նրանց կուռ համախմբվածության և սովետական հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի վեհ իդեալներին հավատարմության նոր վառ դրսևորում»։

Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին, անձամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևին հավաստեցին, որ իրենք այսուհետ ևս իրենց բոլոր ուժերը, եռանդն ու գիտելիքները կնվիրաբերեն մեր երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման պայքարին, կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրների կենսագործմանը։

Չնայած 1980 թվականին և ամբողջ տասներորդ հնգամյակում ձեռք են բերվել ակնառու հաջողություններ, այսուհանդերձ կատարված աշխատանքներում տակավին տեղ են գտել թերություններ ու թերացումներ։ Դեռևս ոչ բոլոր աշխատավորական կոլեկտիվներն են կատարել իրենց արտադրական պլանները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Ոչ բոլոր տնտեսավարներն են ձեռք բերել արտադրության արդյունավետությունն ու որակը բարձրացնելու աշխատանքի ճաշակ։ Նրանց գործունեության մեջ հաճախ գերակշռում են շտամպը, հին աշխատաձևը։ Ամենուրեք չէ, որ լիովին կատարվում են գործարկված կարողությունների արագ յուրացման, առկա ռեզերվների առավելագույն օգտագործման, նյութական, աշխատանքային, էներգետիկ և ֆինանսական ռեսուրսների խնայողության ռեժիմի ուժեղացման վերաբերյալ

ՍՄԿԿ Կենտկոմի պահանջները: Դեռևս անբավարար է կապիտալ ներդրումների արդյունավետության ձեռք բերված մակարդակը:

Տասներորդ հնգամյակում միայն 1976 թվականին է հանրապետության արդյունաբերությունը գերակատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման նախատեսված առաջադրանքը, մնացած բոլոր տարիներին այն ետ է մնացել հնգամյակի նախանշումներից: Հարկավոր է, որպեսզի աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանի կատարման ապահովումը դառնա ձեռնարկությունների, մինիստրությունների և գերատեսչությունների կուսակցական կազմակերպությունների և տնտեսական ղեկավարների, կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների, բոլոր սովետական և պլանային մարմինների կարևորագույն խնդիրը:

Հանրապետության սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, որոնք այս տարի անցան ավելի կազմակերպված, գաղափարաքաղաքական բարձր մակարդակով, կոմունիստները կոնկրետ և գործարար մթնոլորտում քննարկեցին կուսակցական կազմակերպությունների գործունեության բոլոր կողմերը, բացահայտեցին կազմակերպական-կուսակցական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքում, տնտեսավարման պրակտիկայում եղած թերությունները: Անհրաժեշտ է պատշաճ խորությամբ ուսումնասիրել և ընդհանրացնել կոմունիստների արած քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, հաշվի առնել ողջ արժեքավորը, կոնկրետ միջոցներ ձեռնարկել դրանց իրականացման նպատակով:

Ավարտվեցին շրջանային ու քաղաքային կուսակցական կոնֆերանսները: Դրանք համակողմանիորեն վերլուծեցին կուսակցության շրջանային, քաղաքային կոմիտեների գործունեությունը, պաշտպանեցին ամբողջ գրականը, քննադատաբար վերլուծեցին եղած թերությունները, միջոցառումներ մշակեցին կուսակցական կոմիտեների աշխատանքի ոճի և մեթոդների հետագա կատարելագործման համար: Հաշվետու ընտրական կամպանիան,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում,— մեզ պարտավորեցնում է դարձյալ ու դարձյալ համակողմանի վերլուծել կուսակցության XXV համագումարի որոշումների կատարման ասպարեզում կուսակցական կազմակերպությունների աշխատանքը: Նոր համագումարի նախապատրաստությունը ինչպես կոմունիստների, այնպես էլ անկուսակցականների քաղաքական և աշխատանքային ակտիվության վերելքի հզոր լծակ է:

Հանրապետությունում ամենուրեք ծավալվել է կուսակցության XXVI համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի լայն և շահագրգռված քննարկումը:

ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը տեսական ու գործնական հսկայական կարևորության փաստաթուղթ է: Դրանում ստեղծագործաբար ընդհանրացված է ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարության պրակտիկան, հաշվի է առնված սոցիալիզմի մյուս երկրների փորձը, մարմնավորված է սովետների երկրի տնտեսական, սոցիալական և հոգևոր զարգացման կարևորագույն հարցերում ՍՄԿԿ ստրատեգիան ու տակտիկան՝ հաշվի առնելով մեր դարի ութսունական թվականների կոնկրետ պայմանները:

Առաջիկա տասնամյակը նոր խոշոր փուլ է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների զարգացման, նոր մարդու ձևավորման գործում: Այդ ժամանակամիջոցում,— ասված է նախագծում,— պետք է ապահովվի հասուն սոցիալիզմի հասարակության հնարավորությունների և առավելությունների ավելի լրիվ օգտագործումը, զգալիորեն ավելացվեն դրա նյութական և հոգևոր հարստությունները, արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալը: Կամրապնդվի ՍՍՀՄ-ի սոցիալական հիմքը՝ բանվորների, գյուղացիների և մտավորականության անխախտ դաշինքը, կամրապնդվի ժողովուրդների բարեկամությունը:

Ութսունական թվականներին կոմունիստական կուսակցությունը հետևո-



ղականորեն կշարունակի իր տնտեսական ստրատեգիայի իրականացումը, որի գերագույն նպատակն է ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքը, անհատի համակողմանի զարգացման լավագույն պայմանների ստեղծումը՝ ամբողջ հանրային արտադրության արդյունավետության հետագա բարձրացման, աշխատանքի արտադրողականության մեծացման, սովետական մարդկանց սոցիալական և աշխատանքային ակտիվության աճի հիման վրա:

Մոտակա տասնամյակում խնդիր է դրվում ապահովել հասարակության հետագա սոցիալական առաջընթացը, իրականացնել ժողովրդի բարեկեցության բարձրացման լայն ծրագիր: Բնակչության պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու համար ընդլայնել բարձրորակ ու բազմազան սննդամթերքների, արդյունաբերական ապրանքների, կուլտուր-կենցաղային առարկաների արտադրությունը:

Կոմունիստական հումանիզմի գաղափարներով են տոգորված նախագծի այն դրույթները, որտեղ մասնավորապես խնդիր է դրվում բարելավել բնակչության կյանքի բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանները, հիմնականում հասնել յուրաքանչյուր ընտանիքի առանձին բնակարանով ապահովելուն, զարգացնել քաղաքների և գյուղերի կոմունալ տնտեսությունն ու տրանսպորտը, դրանց բարեկարգումը:

Մեզանում արդեն իրողություն է դառնում փաստաթղթի հետևյալ սահմանումը. խոր վերափոխումներ իրականացնել մարդկանց կենսագործունեության կարևորագույն ոլորտում՝ աշխատանքում, բարելավել և հեշտացնել դրա պայմանները, ապահովել բարձրարտադրողական և ստեղծագործական աշխատանքի լայն հնարավորություններ, զգալի քայլ կատարել մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները վերացնելու, ագրարային աշխատանքն ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի վերածելու ուղիով:

Հասարակության ու անհատի միջև կատարյալ ներդաշնակության վկայությունն է ուղղությունների խոր մարդկային առաջարկը. կիրառել արդյունավետ դեմոգրաֆիական քաղաքականություն, նպաստել ընտանիքի՝ որպես սոցիալիստական հասարակության կարևորագույն բջջի, ամրապնդմանը, մայրությունն աշխատանքային ու հասարակական գործունեությանը կնոջ ակտիվ մասնակցության հետ զուգակցելու լավագույն պայմանների ստեղծմանը. բարելավել հասարակության հաշվին երեխաների և անաշխատունակների խնամքը. իրականացնել մարդկանց կյանքի տևողությունը և նրանց աշխատանքային ակտիվությունը մեծացնելու, բնակչության առողջությունն ամրապնդելու միջոցառումների սիստեմ: Որքա՜ն կենսական ու հրատապ են հնչում անհատի ներաշխարհը հարստացնող դրույթները. ընդլայնել մարդկանց հոգևոր ներդաշնակ կյանքի, կուլտուրական արժեքներն ամբողջ բնակչության համար մատչելի դարձնելու հնարավորությունները, ապահովել կրթության և կուլտուրայի հետագա վերելքը, ուժեղացնել բարոյական դաստիարակությունը, զարգացնել կոմունիստական վերաբերմունքը աշխատանքի և հանրային տնտեսության նկատմամբ: Հիրավի, իրականանում է անցյալի մտածողների երազանքը. ազատ ժամանակն է հասարակության հարստությունը: Ավելի խելացիորեն օգտագործել աշխատաժամանակը, վերացնել նրա անարտադրողական ծախսումներն ու կորուստները, ավելացնել աշխատավորների ազատ ժամանակը՝ հասարակական սպասարկումը զարգացնելու, տնային տնտեսության մեջ կատարվող աշխատանքը հեշտացնելու հիման վրա, կատարելագործել ժամանցի, հատկապես երիտասարդության ժամանցի ձևերն ու կազմակերպումը: Բնական է, որ այս հումանիստական ծրագիրը նպաստում է ՍՍՀՄ ազգերի և ազգությունների համակողմանի զարգացմանն ու մերձեցմանը, հասարակության սոցիալական միատարրության ուժեղացմանը, սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց պատմական նոր հանրության, գաղափարաքաղաքական միասնության ամրապնդմանը:

Զարգացած սոցիալիզմի արդի փուլում անհրաժեշտ է ապահովել հասարակության հետագա տնտեսական առաջընթացը, նյութատեխնիկական բազայի

որակական խոր տեղաշարժերը՝ հանրային արտադրության ինտենսիվացման, նրա արդյունավետության բարձրացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման հիման վրա։ Երկարաժամկետ այդ վիթխարի խնդիրների իրականացման գործում պատասխանատու փուլ կդառնա տասնմեկերորդ հնգամյակը։ Այն կոչված է մարմնավորելու երկրի սոցիալ-տնտեսական զարգացման կուրսի հաջորդայնությունը և ութսունական թվականների համար կուսակցության ստրատեգիական կանխատեսումները՝ հաշվի առնելով մերձավորագույն հնգամյակի յուրահատկությունը։

Տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է ապահովել սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճը ժողովրդական տնտեսության հաստատուն, առաջընթաց զարգացման հիման վրա գիտատեխնիկական պրոգրեսն արագացնելու, էկոնոմիկան զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու, երկրի արտադրական պոտենցիալն ավելի ռացիոնալ օգտագործելու, ռեսուրսների բոլոր տեսակներն ըստ ամենայնի խնայելու և աշխատանքի որակը բարելավելու հիման վրա։

Կուսակցությունն այդ խնդրի լուծման համար անհրաժեշտ է համարում իրականացնել ժողովրդի բարեկեցությունը հետևողականորեն բարձրացնելու միջոցառումների սիստեմ. ապահովել էկոնոմիկայի առաջընթաց աճը, կատարելագործել հանրային արտադրության կառուցվածքը, հաստատակամորեն բարձրացնել արտադրության արդյունավետությունը և բարելավել արտադրանքի և սպասարկումների որակը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում՝ նրա համակողմանի ինտենսիվացման հիման վրա. ապահովել գիտատեխնիկական առաջընթացի հետագա արագացումը. ուժեղացնել բնության պահպանությունը. կատարելագործել կառավարումը և բարձրացնել տնտեսավարման մակարդակը էկոնոմիկայի բոլոր օղակներում, ուժեղացնել դրանց կողմնորոշումը ժողովրդատնտեսական լավագույն վերջնական արդյունքների հասնելու նպատակով. բարձրացնել արտաքին տնտեսական կապերի արդյունավետությունը։

Նախագծում առանձնապես կարևորվում է գիտության ու տեխնիկայի զարգացումը, որը մեծապես նպաստում է սովետական հասարակության հետագա առաջընթացին, արագացնում էկոնոմիկայի փոխադրումը ինտենսիվացման ուղու վրա։ Դրանից ելնելով, նախատեսվում է ապահովել գիտատեխնիկական կարևորագույն պրոբլեմների լուծման նպատակային կոմպլեքսային ծրագրերի մշակումն ու իրացումը, էականորեն կրճատել նոր տեխնիկայի ստեղծման և յուրացման ժամկետները, ուժեղացնել գիտության և արտադրության փոխադարձ կապերը, ամրապնդել գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների փորձնաարտադրական բազան, օպերատիվ կերպով փոխել հետազոտությունների ու մշակումների ուղղությունը, գիտական հիմնարկների կազմակերպական կառուցվածքը՝ գիտատեխնիկական հեղափոխության պահանջներին համապատասխան, կատարելագործել գիտական կադրերի պատրաստումը, որակավորման բարձրացումը և ատեստավորումը. ըստ ամենայնի աջակցել գյուտարարների և ռացիոնալիզատորների մասսայական գիտատեխնիկական ստեղծագործության զարգացմանը։

Արդյունաբերական արտադրանքի արտադրությունը կավելանա 26—28 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցներինը՝ 26—28, իսկ սպառման առարկաներինը՝ 27—29 տոկոսով։ Արդյունաբերական արտադրության աճի մասշտաբների մասին են վկայում այսպիսի թվեր. 1985 թվականին էլեկտրաէներգիայի արտադրությունը կկազմի 1.550—1.600 միլիարդ կիլովատ-ժամ, նավթի հանույթը, ներառյալ գազի կոնդենսատը, կկազմի 620—645 միլիոն տոննա, ածխինը՝ 770—800 միլիոն տոննա, սև մետաղների պատրաստի գլանվածքի արտադրությունը՝ 117—120 միլիոն տոննա։ Կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների թողարկումը կաճի առնվազն 1,4 անգամ։

Փաստաթղթում մեծ նշանակություն է տրվում արդյունաբերության կառուցվածքի կատարելագործմանը, արդյունահանող և մշակող ճյուղերի զարգացման մեջ հաշվեկշռվածության ապահովմանը, ժողովրդական տնտեսու-



թյան մեջ տեխնիկական առաջընթացը որոշող արտադրանքի թողարկման առավել արագ ավելացմանը, նոր, բարձր արդյունավետ տեխնիկայի ստեղծման, յուրացման և արտադրության մեջ դրա ներդրման մասշտաբների զգալի մեծացմանը, կոնստրուկցիոն նյութերի անվանացանկի և տեսականու ընդլայնմանն ու սիստեմատիկ նորացմանը, վառելիքաէներգետիկ ռեսուրսների օգտագործման բարելավմանը, նյութական ռեսուրսների խնայողության ապահովմանը։ Նախատեսվում է նաև բարձրացնել արտադրանքի շահութաբերությունը, իջեցնել ինքնարժեքը, կատարելագործել արդյունաբերական արտադրության կազմակերպման ձևերը, բարձրացնել դրա մասնագիտացման ու կոոպերացման մակարդակը, զգալիորեն ընդլայնել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ու վերակառուցման մասշտաբները, ներդնել առաջադիմական տեխնոլոգիան, աշխատանքի և արտադրության գիտական կազմակերպումը, բարելավել արտադրական կարողությունների և հիմնական ֆոնդերի օգտագործումը։

Փաստաթղթում տրված է ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման ծավալուն բնութագիրը, որի հիմնական խնդիրն է երկրի հուսալի ապահովումը պարենով և գյուղատնտեսական հումքով։ Պարենային ծրագրի հաջող իրականացման նպատակով նախատեսված է ապահովել ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի միասնական պլանավորում, համամասնական և հաշվեկշռված զարգացում, դրա նյութատեխնիկական բազայի զգալի ամրապնդում, ճյուղերի միջև տնտեսական կապերի կատարելագործում, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, դրա պահպանումը, փոխադրումը, վերամշակումը և սպառողին դրանց առաքումը բարելավելու բնագավառում հստակ փոխգործողության կազմակերպում։

Գյուղատնտեսության ասպարեզում խնդիր է դրված հասնել բոլոր ճյուղերի դինամիկ զարգացման և արդյունավետության բարձրացման, արտադրանքի արտադրության ավելացման և որակի բարելավման, ընդ որում, շարունակելով գյուղատնտեսական արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացման կուրսը։ Որոշված է նաև հաստատակամորեն արմատավորել առաջավոր փորձը, կատարելագործել աշխատանքի և արտադրության կազմակերպումը կոլտնտեսություններում ու սովխոզներում, զգալիորեն բարձրացնել հողի, արտադրական ֆոնդերի, նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը, կիրառել տնտեսական հաշվարկի ամրապնդման միջոցառումների սիստեմ։

Հնգամյակում գյուղատնտեսական արտադրանքի տարեկան միջին արտադրությունը կավելանա 12—14 տոկոսով։ Հացահատիկի տարեկան միջին արտադրությունը պետք է հասցվի 238—243 միլիոն տոննայի, բամբակինը՝ 9,2—9,3 միլիոն տոննայի, շաքարի ճակնդեղինը՝ 100—103 միլիոն տոննայի, մսի արտադրությունը՝ 17—17,5 միլիոն տոննայի, կաթինը՝ 97—99 միլիոն տոննայի, ձվինը առնվազն 72 միլիարդ հատի և բրդինը՝ 470—480 հազար տոննայի։

Նախատեսվում է հողերի մելիորացման հետագա զարգացում, հողագործության և անասնապահության քիմիացման միջոցների մատակարարումների ավելացում և դրանց ավելի ռացիոնալ օգտագործում, գյուղատնտեսության տեխնիկական վերազինման շարունակում։ Կոլտնտեսություններն ու սովխոզները հնգամյակի ընթացքում կստանան 1.870 հազար տրակտոր, 1.450 հազար բեռնատար ավտոմոբիլ, հացահատիկի 600 հազար կոմբայն, մեծ քանակությամբ այլ տեխնիկա, ինչպես նաև հանքային պարարտանյութեր, քիմիական կերախառնուրդներ և բույսերի պաշտպանության միջոցներ։ Հետևողականորեն կզարգանա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը՝ միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման հիման վրա։

Փոխադրումների ասպարեզում ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքներն ավելի լրիվ և ժամանակին բավարարելու նպատակով նախատեսվում է տրանսպորտի բոլոր տեսակների հետագա զարգացում։ Երկրի տնտեսական վերելքի մասշտաբներն ու տեմպերը մեծապես որոշվում են շինա-

բարության տեմպերով ու որակով։ Ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները հինգ տարում կաճեն 12—15 տոկոսով։ Նախատեսված է գլխավոր ուշադրությունը նվիրել հիմնական ֆոնդերի և արտադրական կարողությունների գործարկումը ժամանակին ապահովելուն, միջոցներն ու ռեսուրսները կենտրոնացնել կարևորագույն կառույցների վրա, կապիտալ ներդրումները առաջին հերթին հատկացնել ձեռնարկությունների վերակառուցմանն ու տեխնիկական վերազինմանը և ավելի վաղ սկսված կառույցների ավարտմանը, կրճատել շինարարության ժամկետները, բարելավել նախագծային-նախահաշվային գործը։

Ազգային հարստության բազմապատկման աղբյուրը աշխատանքն է և հասարակությունը կարող է բաշխել միայն այն, ինչ արտադրված է։ Ուստի, որքան բարձր են աշխատանքի արդյունքները, այնքան ավելի է ամրապնդվում սոցիալիստական հայրենիքի հզորությունը, այնքան լրիվ են բավարարվում անձնական և հասարակական պահանջմունքները, այնքան բարձր է սովետական մարդկանց կենսամակարդակը։ Միաժամանակ աշխատանքի բարձր արտադրողականությունը պայմանավորում է աշխատանքի բարձր արդյունքները։ Հնգամյակի ընթացքում ազգային եկամտի աճի առնվազն 85—90 տոկոսը կստացվի հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Կուսակցության Կենտկոմի փաստաթղթում աչքի ընկնող տեղ է գրավում սոցիալական զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման ծրագիրը։ Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները կբարձրանան 16—18 տոկոսով, բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձը կավելանա 13—16 տոկոսով և հնգամյակի վերջին կհասցվի ամսական 190—195 ռուբլու, կոլտնտեսությունների հանրային տնտեսությունից կոլտնտեսականների եկամուտները՝ 20—22 տոկոսի։ Բացի դրանից, կուժեղանա սպառման հանրային ֆոնդերից տրվող վճարումների և արտոնությունների դերը, որոնք հնգամյակի ընթացքում կաճեն 20 տոկոսով։ Նախատեսված է հինգ տարում կառուցել 530—540 միլիոն քառակուսի մետր մակերեսով տներ։

Նախագծում պատշաճ տեղ են հատկացված այն միջոցառումներին, որոնք նպատակամղված են սովետական մարդկանց աշխատանքի ու հանգստի առավել բարենպաստ պայմանների ստեղծմանը; նրանց կրթական և կուլտուրական մակարդակի բարձրացմանը, առողջության պահպանմանը, ընտանիքի ամրապնդմանը, երեխաների դաստիարակությանը։ Է՛լ ավելի կզարգանան սոցիալական ապահովության սիստեմը, առևտուրը, հասարակական սնունդը և կենցաղային սպասարկումը, ժողովրդական կրթությունը։ Պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնական հաստատություններում բարձրորակ բանվորների պատրաստումը հինգ տարում կհասցվի 13 միլիոնի, կպատրաստվեն բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մոտավորապես 10 միլիոն մասնագետներ։ Սովետական մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, նրանց հոգևոր բազմապիսի պահանջմունքների առավել լրիվ բավարարման գործում մեծ է սոցիալիստական կուլտուրայի և արվեստի հարաճուն դերը, որոնց զարգացման համար լայն հեռանկարներ են բացվում առաջիկա հնգամյակում։

Նախատեսվում է ՍՍՀՄ-ի արտաքին տնտեսական կապերի, և ամենից առաջ սոցիալիստական երկրների հետ կապերի հետագա զարգացում, ակտիվ մասնակցություն ՏՓԽ-ի անդամ երկրների սոցիալիստական տնտեսական ինտեգրացման հետագա խորացմանը։ Կզարգանան փոխշահավետ ապրանքափոխանակությունը և մյուս կապերը զարգացող երկրների հետ։ Ելնելով սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքներից և միջազգային լարվածության թուլացումը խորացնելու անհրաժեշտությունից, նախատեսված է հաստատուն փոխշահավետ կապեր իրականացնել կապիտալիստական այն զարգացած երկրների հետ, որոնք շահագրգռություն են ցուցաբերում համագործակցելու Սովետական Միության հետ։

Փաստաթղթում առաջադրված են այն խնդիրները, որոնք առնչվում են բոլոր օղակներում կառավարման հետագա կատարելագործման, տնտեսավարման մակարդակի բարձրացման հետ։ Սահմանված են միութենական հանրապետությունների և տնտեսական շրջանների զարգացման հիմնական ուղղությունները։



Հայկական ՍՍՀ-ում նախատեսվում է ավելացնել արդյունաբերական արտադրանքի արտադրությունը 29—32 տոկոսով, մեծացնել այդտեղ ռադիոտեխնիկական և էլեկտրոնային արդյունաբերության, սարքաշինության և հաստոցաշինության բաժինը։ Նախատեսվում է գործարկել կարողություններ Հրազդանի մեքենաշինական գործարանում, կառուցել ավտոբեռնիչների արտադրության գործարան և օծանելիքի ֆաբրիկա։ Կվերակառուցվեն գունավոր մետալուրգիայի և քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները, կավարտվի Իջևան—Հրազդան երկաթուղագծի կառուցումը, ընդլայնվելու են հանքային ջրերի լցարկման կարողությունները։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը կաճի 10—12 տոկոսով։ Հացահատիկի տարեկան միջին արտադրությունը կկազմի 310 հազար տոննա, խաղողինը՝ 240—260 հազար, բանջարեղենինը՝ 400—430 հազար, մսինը (սպանդային քաշով)՝ 95 հազար, կաթինը՝ 520 հազար տոննա։ Ընդլայնվելու է պտուղների, հատապտուղների և եթերայուղային կուլտուրաների արտադրությունը։ Ոռոգելի կդառնան 30 հազար հեկտար նոր հողեր։ Այս հոյակապ բնագծերը պարտավորեցնում են հանրապետության կուսակցական կազմակերպություններին մոբիլիզացնելու աշխատավորներին, արտադրական կոլեկտիվներին հնգամյակի առաջին իսկ օրերից անպայման կատարելու պլանային առաջադրանքները։ Հարկավոր է նոր ուժով ծավալել սոցիալիստական մրցությունը տասնմեկերորդ հնգամյա պլանի հաջող իրականացման համար։

ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի համակողմանի քննարկումը մեծ և պատասխանատու կամպանիա է։ Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները պարտավոր են ապահովել քննարկման գործարար բարձր մակարդակը, դրան հաղորդել նպատակասլաց բնույթ, այնպես անել, որ քննարկումը նպաստի մեր ամբողջ տնտեսական ու քաղաքական գործունեության վերելքին։ Ինֆորմացիայի և պրոպագանդայի մասսայական միջոցները պետք է բազմակողմանիորեն ցույց տան ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման գործում հանրապետության աշխատավորների ձեռք բերած նվաճումները, լուսաբանեն նախահամագումարյան մրցության ընթացքը, ցույց տան Սովետական Հայաստանի և ամբողջ երկրի հետագա զարգացման մասշտաբներն ու հեռանկարները; կուսակցության մշակած ստեղծարար աշխատանքի հոյակապ ծրագրի իրականացման ուղիները։

ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումի որոշումների, պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթի շնորհիվ առաջացած քաղաքական և աշխատանքային բարձր ակտիվության պայմաններում հանրապետության բոլոր աշխատավորները ձգտում են ՍՄԿԿ XXVI համագումարը դիմավորել հասարակական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած նոր հաջողություններով։ Նրանք լի են վճռականությամբ լիովին կենսագործելու Սովետական Հայաստանի տնտեսական ու սոցիալական հետագա զարգացման՝ ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում նախատեսված վիթխարի պլանները, տասնմեկերորդ հնգամյակը դարձնելու մեծագործությունների, աշխատանքային արիության ու փառքի նույնպիսի հնգամյակ, ինչպիսին էր տասներորդ հնգամյակը, անձնվիրաբար պայքարել հանուն լենինյան կուսակցության հռչակած մեծ նպատակների իրագործման։

Հոբելյանական տարվա հաջողություններն ամուր երաշխիք են՝ հաստատելու, որ տասներորդ հնգամյակը Սովետական Հայաստանի Կարմրադրոշ հնգամյակն է։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Բ. Ե. ՍԱՐԿԻՍՈՎ**
Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի
նախագահության նախագահ

Մեր ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ աշխատավորները հասարակական-քաղաքական բարձր ակտիվության և աշխատանքային աննախադեպ վերելքի պայմաններում նշեցին Հայաստանում սովետական կարգերի հաստատման ու կոմունիստական կուսակցության կազմավորման պանծալի 60-ամյակը։

Երկար, դեռ շա՜տ երկար կմնա մեր հիշողության մեջ այդ օրերի հուզիչ տպավորությունը։ Հոբելյանական տոնակատարությունը վերածվեց մեր հզոր հայրենիքի բոլոր ժողովուրդների եղբայրական ջերմ բարեկամության, ռուս մեծ ժողովրդի, սովետական մյուս ժողովուրդների նկատմամբ հայ ժողովրդի խոր երախտագիտության, մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչ լենինյան կուսակցության շուրջը նրա սերտ համախմբվածության վառ ու տպավորիչ ցույցի։ Հանրապետության աշխատավորները խորին երախտագիտությամբ ընդունեցին պանծալի տոնի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների խորհրդի ողջույնի նամակը։ Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում հայ ժողովրդի պատմական նվաճումների, մեր հայրենիքի բարգավաճման գործում նրա ներդրած ավանդի բարձր գնահատականը, որ տրված է այդ նամակում, օրինական հպարտությամբ է համակում հանրապետության բոլոր աշխատավորների սրտերը։ Հոբելյանական հանդիսություններին առանձին շուք ու բովանդակություն հաղորդեց եղբայրական բոլոր հանրապետությունների, ինչպես և Մոսկվայի ու Լենինգրադի պատվիրակությունների մասնակցությունը։ Մենք մեր խորին շնորհակալությունն ենք հայտնում եղբայրական հանրապետությունների պատվիրակություններին՝ հանրապետության հոբելյանական հանդիսություններին նրանց մասնակցության համար, հայ ժողովրդին ուղղված ջերմ խոսքերի համար, կոմունիստական շինարարության ասպարեզում նրանց բարեմաղթությունների համար։

Սովետական Հայաստանի անցած պատմական ուղին վառ ու համոզիչ կերպով ցուցադրում է լենինյան մեծ գաղափարների, կոմունիստական կուսակցության իմաստուն ազգային քաղաքականության, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության կենսական ուժն ու հաղթանակը։

Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը մենք իրավամբ համարում ենք մարդկության սոցիալական առաջընթացի մեծագույն նվաճումներից մեկը։ Այն իր կոնկրետ մարմնավորումն է գտել մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամության մեջ, բարեկամություն, որը սովետական հասարակության հզոր շարժիչ ուժն է դարձել։ Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակի առթիվ Երևանում արտասանած ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Սովետական մարդիկ մտքով ու սրտով գիտեն, որ իրենց զորությունը ամրակուռ միասնության մեջ է, միմյանց օգնելու, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ դեպի վսեմ նպատակը, դեպի



կոմունիզմ համատեղ ընթանալու պատրաստակամության մեջ։ Մեր երկրի եղբայր ժողովուրդները միշտ միասին են՝ թե՛ ահեղ փորձությունների տարիներին, թե՛ տոնախմբությունների փառավոր օրերին. նրանք կիսում են թե՛ հաղթանակների բերկրանքը և թե անհաջողությունների դառնությունը, ապրում են ընդհանուր խոհերով, ընթանում մեկ ճանապարհով»։

Սովետական ժողովրդի միասնությունն ու սերտ դաշինքը ահեղ քննություն բռնեցին Հայրենական մեծ պատերազմում։ Հարձակվելով Սովետական Միության վրա, հիտլերյան զավթիչները հույսով էին, թե առաջին իսկ անհաջողություններից հետո մեր հայրենիքում կծագեն ազգամիջյան ընդհարումներ ու պառակտումներ։ Բայց ֆաշիստները չարաչար սխալվեցին։ Նրանք հաշվի չէին առել, որ սոցիալիստական ազգերն ու ազգությունները իրենք են ընտրել իրենց ուղին և շաղկապված են եղբայրության ու բարեկամության անխորտակ կապերով։

Սովետական բազմազգ ժողովուրդների հետ այդ քննությունը պատվով բռնեցին նաև Հայաստանի աշխատավորները, որոնք կոմունիստական կուսակցության կոչով ոտքի ելան կրծքով պաշտպանելու իրենց մեծ հայրենիքի սոցիալիստական նվաճումները, իրենց խաղաղ տունն ու արժանապատվությունը։ Նրանք մարտի դաշտում ցուցաբերեցին անօրինակ արիություն և խիզախություն։ Մեր հանրապետության տասնյակ հազարավոր զավակներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով, իսկ 105 հայորդիներ արժանացան Սովետական Միության հերոսի բարձր կոչման։

Շատ դյուցազուններ տուն չվերադարձան։ Այսօր էլ, երեսունհինգ տարի անց, սովետական մարդիկ բազում հուշարձաններ են կանգնեցնում, անմար կրակներ են վառում ի հիշատակ նրանց, ովքեր իրենց կյանքը զոհեցին հանուն սոցիալիստական հայրենիքի ազատության ու անկախության, հանուն այսօրվա մեր երջանիկ կյանքի, հանուն գալիք սերունդների բարօրության։

Այս առթիվ ուզում եմ հիշատակել հուզիչ մի դեպք։

Բոլորովին վերջերս Էջմիածնի շրջանի Փարաքարի № 227 ընտրական օկրուգում, որտեղից ես ընտրված եմ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, ընտրողների հետ հանդիպման երեկո էր։ Հավաքվել էին ամենատարբեր զբաղմունքի տեր մարդիկ և աշխույժ խոսակցություն էր ընթանում զանազան հարցերի շուրջը։ Իսկ երբ խոսք եղավ, թե ով ինչպիսի պահանջ կամ խնդրանք ունի, դահլիճի առաջին շարքերից ոտքի կանգնեց պատերազմի դառնությունը ճաշակած հաղթանդամ մի մարդ ու ասաց.

— Ընկեր նախագահ, մեր խնդրանքը, մեր գլխավոր պատվիրանը միայն մեկն է՝ պահպանե՛ք խաղաղությունը։ Հաղորդեք ընկեր Բրեժնևին մեր մեծ շնորհակալությունն այն ամենի համար, ինչ նա կատարում է երկրի վրա խաղաղությունը պահպանելու նպատակով։

Պատերազմի վետերան Արշակ Նիկողոսյանն էր։ Ասաց ու նստեց։

Խորհրդավոր մի լռություն տիրեց դահլիճում։ Ոմանք, հավանաբար, պատերազմի արհավիրքները հիշեցին, ոմանք՝ պատերազմում զոհված իրենց հարազատներին, ոմանք էլ, երևի, տագնապել էին, հիշելով, որ միջազգային դրությունը նորից շիկացած է։

Պահպանե՛ք խաղաղությունը։

Դա միայն պատերազմի վետերանի ցանկությունը չէր։

Դա հավաքված բոլոր մարդկանց ցանկությունն էր։

Դա ժողովրդի ցանկությունն էր։ Դա ռուսի ու լատիշի, մոնղոլի ու հնդիկի, արաբի ու նեգրի սրտի խոսքն էր՝ ասված պատերազմի վետերան Արշակ Նիկողոսյանի կողմից։ Սովետական Միությունը՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը, խաղաղության դրոշակակիրն է, տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության ջատագովը։ Մեր երկրի ջանքերը մշտապես ուղղված են ժողովուրդների խաղաղությունն ու բարեկամությունը ամրապնդելու, պատերազմի սպառնալիքը չեզոքացնելու դժվարին ու պատասխանատու գործին։

Վերջին ժամանակներս իմպերիալիստական պետությունների կառավարող

շրջանների բորբոքած սպառազինությունների մրցավազքին և պատերազմի մոլուցքին կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը հակադրել են հավասարակշռված, իմաստուն ու զուսպ արտաքին քաղաքականություն, որը նոր ուժով շեշտվեց նաև խաղաղության, բարեկամության ու համագործակցության սովետա-հնդկական պայմանագրում:

Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես և սովետական բոլոր մարդիկ, միահամուռ հավանություն են տալիս համաշխարհային սոցիալիզմի դիրքերն ամրապնդելու, ազգային ազատագրության և սոցիալական առաջընթացի համար ժողովուրդների պայքարը պաշտպանելու, իմպերիալիզմի ոտնձգությունները մերկացնելու գործում կոմունիստական կուսակցության և սովետական պետության վարած արտաքին քաղաքականությանը:

Հայ ժողովրդի սոցիալիստական վերածնունդն ու ծաղկումը, տնտեսության, գիտության և մշակույթի ասպարեզներում նրա մեծ նվաճումները դարերի ընթացքում ստեղծած կուլտուրայի գանձերը խաղաղ ու ապահով պայմաններում տեսնելու հնարավորությունը, մեր պետական դրոշը, գերբը և հիմնը ամրապնդեցին պետականության և ազգային արժանապատվության նրա վեհ ձգտումները: Սովետական Հայաստանի, ինչպես և սովետական մյուս հանրապետությունների սուվերենության երաշխիքը ՍՍՀՄ-ի հզորությունն է:

Սովետական կարգերի վաթսո՜ւն տարի:

Պատմության համար ակնթարթ հանդիսացող այս ժամանակահատվածում, Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ աննախընթաց վերելք է ապրել մեր հանրապետությունը: Լինելով Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական ջոկատներից մեկը, Հայաստանի կոմունիստական կուսակցությունն իր կազմավորման օրից դարձել է ժողովրդի լուսավոր իդեալների արտահայտիչն ու իրականացնողը: Համախմբվելով կոմունիստական կուսակցության շուրջը, հայ ժողովուրդն իրականացրել ու իրականացնում է իր դարավոր երազանքը:

Սովետական իշխանության վաթսուն տարիների ընթացքում հանրապետությունում կառուցվել է մոտ յոթ հարյուր արդյունաբերական ձեռնարկություն, որոնցից շատերի արտադրանքը համապատասխանում է համաշխարհային ստանդարտներին: Հանրապետության ժողովրդական տնտեսության ոլորտում ներկայումս աշխատում են ավելի քան 1 միլիոն 150 հազար բանվորներ և ծառայողներ: Այսօրվա Հայաստանը բարձր զարգացած ինդուստրիայի, խոշոր մեքենայացված գյուղատնտեսության, սոցիալիստական մշակույթի և առաջավոր գիտության երկիր է:

Հանրապետության ազգային եկամտի մոտ 70 տոկոսը բաժին է ընկնում արդյունաբերական արտադրությանը: Հանրապետության ինդուստրիայի դեմքը բնորոշող ճյուղերն են էլեկտրաէներգետիկան և քիմիան, լեռնահանքային արդյունաբերությունն ու գունավոր մետալուրգիան, էլեկտրոնիկան և ռադիոէլեկտրոնիկան, էլեկտրամեքենաշինությունն ու ճշգրիտ մեքենաշինությունը, սարքաշինությունն ու շինանյութերի արտադրությունը, թեթև և սննդի արդյունաբերությունը: Մեր հանրապետության հետագա բարգավաճման նկատմամբ հոգատարության վկայությունն է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը, որի իրականացումը նոր հեռանկարներ է բացել բոլոր ասպարեզներում:

Ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացն արմատապես փոխեց հանրապետության էկոնոմիկայի տեսքը: Ծնունդ առան ու զարգացան արտադրության բոլորովին նոր ճյուղեր, որոնք իրենց հերթին կյանքի կոչեցին գիտության նոր ուղղություններ: Հնարավոր եղավ իրականացնել հաշվողական տեխնիկայի, քվանտային գեներատորների և արդիականության կնիքը կրող այլ արտադրատեսակների արտադրությունը: Այսօր հանրապետության արդյունաբերական ապրանքների շուրջ 180 տեսակներ արտահանվում են 80 երկրներ:

Փոխվել է Սովետական Հայաստանի արդյունաբերական քարտեզը, նրա վրա իրենց հաստատուն տեղն են գտել Հրազդանն ու Ջարենցավանը, Աբովյանն ու Սևանը, Արթիկն ու Քաջարանը և ուրիշ անուններ:



Երիտասարդ սերնդի ուժերը խելացիորեն օգտագործելու, գործունակ բնակչությանը տեխնիկական գիտելիքներ պահանջող համապատասխան աշխատանքով ապահովելու համար մեծ ուշադրություն է դարձվում արդյունաբերության աշխատատար ճյուղերի զարգացմանն ու ընդլայնմանը:

Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ այսօր աշխատում են բարձրագույն կրթությամբ 156 հազար և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 124 հազար մասնագետներ, որոնք ընդունակ են լուծելու գիտաարտադրական ամենաբարդ խնդիրներ:

Մոտ ապագայում մենք կգործարկենք Արփա—Սևան ջրատարը, որի կառուցումը Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամության և համագործակցության փայլուն օրինակ է: Ապավինելով այդ բարեկամությանը, մեր հանրապետությունը համարձակորեն ձեռնամուխ եղավ համաշխարհային պրակտիկայում եզակի այդ կառույցի շինարարությանը: Մենք բարեկամության կառույց ենք կոչել նաև Հայաստանի ատոմային էլեկտրակայանը, որը հանրապետության բարձր զարգացած գիտատեխնիկական մտքի պոտենցիալ հնարավորությունների վառ վկայությունն է:

Մեծ են մեր ժողովրդի նվաճումները գիտության ու կրթության ասպարեզում: Սովետական Հայաստանի նորաստեղծ կառավարության առաջին ձեռնարկումներից մեկը Երևանում պետական համալսարանի հիմնադրումն էր: Ամեն տարի հանրապետության 13 բարձրագույն և 65 միջնակարգ մասնագիտական հաստատությունները տալիս են ավելի քան 20 հազար շրջանավարտ՝ 200-ից ավելի մասնագիտություններով: Հանրապետությունում ներկայումս կա ավելի քան 18 հազար գիտաշխատող:

Այժմ մեզ մոտ ուսման բոլոր ձևերում ընդգրկված է շուրջ մեկ միլիոն 135 հազար մարդ: Ընդ որում, հանրակրթական դպրոցներում սովորում է 607,4 հազար, պրոֆտեխնիկական ուսումնարաններում՝ 28,3 հազար, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 54,1 հազար, բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 58 հազար մարդ: Միայն անցած տարի մեր բարձրագույն ուսումնական հաստատությունները տվեցին 10,9 հազար մասնագետ:

1979 թվականին հանրապետության քաղաքային և գյուղական բնակչությանը սպասարկում էր 1340 մասսայական գրադարան՝ մոտ 20 միլիոն գրքային ֆոնդով: Նույն թվականին հանրապետությունում հրատարակված գրքերի և գրքույկների ընդհանուր տպաքանակը կազմեց 11 միլիոն: 1979 թվականին հանրապետությունում բժիշկների թիվն ավելացավ 2,8 տոկոսով և հասավ 10,7 հազարի:

Եթե սովետական կարգեր հաստատվելուց առաջ հայ երիտասարդները բարձրագույն ուսում ստանալու համար ստիպված էին մեկնել հեռավոր երկրներ, ապա այսօր Եվրոպայի և Ասիայի շատ երկրներից մեզ մոտ սովորելու են գալիս հարյուրավոր ուսանողներ ու ասպիրանտներ:

Որակական տեղաշարժեր կատարվեցին հանրապետությունում հատկապես տասներորդ հնգամյակում, որի ընթացքում հանրապետության բնակչության թիվն անցավ երեք միլիոնից, իսկ մայրաքաղաք Երևանն արդեն ունեցավ մեկ միլիոնից ավելի բնակիչ: 1980 թվականի հունվարի մեկի տվյալներով Սովետական Հայաստանի բնակչությունը կազմում էր ավելի քան 3 միլիոն մարդ: Դա միայն քանակական իրողություն չէ: Դրանում արտացոլումն են գտել քաղաքական, տնտեսական և սոցիալական այն խոր որակական տեղաշարժերը, որ կատարվել են սովետական իշխանության օրոք: Չէ որ հանրապետության ներկայիս տարածքում 1920 թվականին ապրում էր ընդամենը 720 հազար մարդ:

Սովետների երկրի պատմության մեջ 1977 թվականը մտավ որպես Սովետական Միության նոր սահմանադրության ընդունման տարի: ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների նվիրական իղձերն իրենց արտացոլումը գտան դարակազմիկ այդ փաստաթղթում: Նոր սահմանադրությունը կարևոր ուղենիշ

եղավ մեր երկրի քաղաքական պատմության մեջ: Այն վառ կերպով վկայում է, որ շարունակվում են հաջողությամբ կենսագործվել Հոկտեմբերյան հեղափոխության հռչակած լենինյան մարդասիրական իդեալները:

ՍՍՀՄ-ի նոր սահմանադրությունը զգալիորեն հարստացրել է սովետական քաղաքացու իրավական ստատուսը. դրա ընդունմամբ առավել խորացել է սոցիալ-տնտեսական և անձնական իրավունքների ու ազատությունների բովանդակությունը, ծանրակշիռ են դարձել դրանց նյութական երաշխիքները:

Մեր հասարակությունում քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները ապահովվում են սոցիալ-տնտեսական ու կուլտուրական շինարարության ծրագրի կատարումով, քաղաքական, տնտեսական, գաղափարախոսական ու իրավական երաշխիքների ողջ համակարգով:

Սովետական մարդիկ, բարձր գնահատելով սահմանադրությամբ իրենց տրված իրավունքներն ու ազատությունները, միաժամանակ քաջ գիտակցում են, որ չկան ու չեն կարող լինել իրավունքներ առանց պարտականությունների: Այդպիսին է սոցիալիստական դեմոկրատիզմի, սովետական ապրելակերպի հիմնարար սկզբունքը: Հենց դրանով է բնորոշվում սովետական մարդու նկարագիրը՝ ոչ միայն օգտվել իրավունքներից, այլև անթերի կատարել կոլեկտիվի, պետության հանդեպ իր պարտականությունները:

Մեր հասարակարգի ուժը մասսաների գիտակցականության մեջ է: ՍՍՀՄ քաղաքացին պարտավոր է պահպանել սահմանադրությունը և սովետական օրենքները, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները, արժանապատվությամբ կրել սովետական քաղաքացու բարձր կոչումը, պահպանել, ամրապնդել սոցիալիստական սեփականությունը, պաշտպանել պետության շահերը, զինված ուժերի շարքերում պատվով ծառայել հայրենիքին:

1978 թվականի ապրիլին Հայկական ՍՍՀ իններորդ գումարման Գերագույն սովետի յոթերորդ արտահերթ նստաշրջանն ընդունեց Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր սահմանադրությունը: Այն լիովին համապատասխանում է հանրապետության զարգացման արդի փուլին, հասուն սոցիալիստական հասարակարգի պահանջներին, տնտեսական, սոցիալական, քաղաքական, կուլտուրական առաջընթացի այն բարձունքներին, որին մենք հասել ենք կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ:

Սահմանադրության մեջ ժողովուրդը տեսնում է իր և պետության շահերի սերտ զուգակցումը: Աշխատավոր մարդը, որ դարեր շարունակ ստիպված է եղել թողնելու իր օջախը, քրտինքով ստեղծածը, սոցիալիստական կարգերի շնորհիվ սահմանադրականորեն վավերացրել է աշխատանքի, բնակարանի, առողջության պահպանման, կրթության, պետական կառավարման գործերին մասնակցելու իր իրավունքները:

Նոր սահմանադրությունը սովետական պետական իշխանության մարմինների աշխատանքի հստակ ծրագիր է, որը, ամփոփելով սովետների կուտակած ամբողջ փորձը, ավելի է բարձրացնում դրանց դերը մեր առջև դրված խնդիրների լուծման գործում: Հանրապետության սովետները, դրանց գործադիր կոմիտեները, կատարելով կուսակցության XXV համագումարի որոշումները, զգալի չափով ակտիվացրել են իրենց կազմակերպչական-մասսայական աշխատանքը:

Սովետների ամբողջ աշխատանքը ժողովրդական դեպուտատների կոլեկտիվ ջանքերի արդյունքն է: Բնական է, որ յուրաքանչյուր դեպուտատի գործունեությամբ է պայմանավորված այդ արդյունքի ծանրակշիռ լինելը: Հանրապետության սովետներում ընտրված են 27.407 դեպուտատ, որից 340-ը՝ Գերագույն սովետում, 27.067-ը՝ տեղական սովետներում:

Ինչպես հայտնի է, դեպուտատների ցանկությամբ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հավանությամբ 1976 թվականի նոյեմբերից հանրապետությունում սահմանված է Գերագույն սովետի դեպուտատի միասնական օր, երբ բոլոր դեպուտատները հանդիպում են իրենց ընտրողների հետ, կատարում քաղաքացիների ընդունելություն: Մինչև հիմա անցկացվել է դեպուտատի 12 միասնական օր: Տեղի է ունեցել մոտ 3500 դեպուտատական հանդիպում, որոնց մաս-



նակցել է ավելի քան մեկ միլիոն մարդ: Դեպուտատների մոտ անձնական ընդունելության են եղել մոտ 35000 քաղաքացիներ: Այս և նման մյուս կազմակերպական միջոցառումները նպաստում են, որպեսզի դեպուտատների աշխատանքը, նրանց կապը ընտրողների հետ լինեն ոչ թե էպիզոդիկ, դեպքից-դեպք, այլ մշտական ու նպատակային:

Կոմունիստական հասարակարգի կառուցման արդի փուլում զգալիորեն ակտիվացել է սովետների դերը: Բարձրացել է տեղական սովետների, նրանց մշտական հանձնաժողովների ու դեպուտատների վերահսկողական ֆունկցիայի իրականացման մակարդակը: Սովետների նստաշրջաններում և գործադիր կոմիտեների նիստերում սկսել են ավելի հաճախ քննարկվել պետական, տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարության հարցեր: Պետական իշխանության տեղական մարմինները ուժեղացրել են միութենական նշանակության ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքի, ընտրողների պատվիրանների իրականացման, աշխատավորների առաջարկությունների, դիմումների ու գանգատների քննարկման նկատմամբ իրենց կոորդինացնող գործունեությունն ու վերահսկողությունը: Այս աշխատանքներին եռանդուն մասնակցում են հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինները:

Գերագույն սովետի նստաշրջաններում, նրա նախագահության և մշտական հանձնաժողովների նիստերում կանոնավորապես քննարկվում են կառավարության, մինիստրությունների ու գերատեսչությունների, տեղական սովետների գործադիր կոմիտեների զեկուցումները՝ սահմանադրական պահանջները կենսագործելու, պլանային առաջադրանքների կատարման ընթացքի, սովետական օրենքների կիրառման, ժողովրդական տնտեսության ճյուղերում գործերի վիճակի, պետական կարգապահության ամրապնդման մասին:

Սովետները լուրջ ուշադրություն են դարձնում վերահսկողության որակի բարձրացմանը, բացահայտված թերությունները վերացնելու համար անհրաժեշտ միջոցների ձեռնարկմանը: Այս ամենը հնարավորություն է ընձեռում հետևողականորեն բարձրացնելու հանրապետության սովետների աշխատանքի արդյունավետությունը, ուժեղացնելու նրանց ազդեցությունը տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարության խնդիրների լուծման վրա:

Մեր նպատակն է հասնել այն բանին, որ հանրապետության բոլոր սովետներում վերահսկողական աշխատանքները կրեն սիստեմատիկ բնույթ, դրանցում գործուն մասնակցություն ունենան մշտական հանձնաժողովները, առավել լիակատարությամբ կիրառվեն սովետների լիազորությունները՝ հանձնարարված աշխատանքի և կատարողական կարգապահության վիճակի համար պաշտոնատար անձանց անձնական պատասխանատվությունը բարձրացնելու գործում, որպեսզի սովետների և դրանց մարմինների ընդունած որոշումները լինեն կոնկրետ ու գործնական:

Սովետների աշխատանքի հետագա բարելավման համար կարևոր նշանակություն ունի «Պլանային առաջադրանքների, ընդունված որոշումների իրականացման և կատարողական կարգապահության նկատմամբ հսկողությունն ուժեղացնելու գործում Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի մասին» ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1980 թ. սեպտեմբերի 1-ի որոշումը, որը քաղաքական ու պետական կարևոր փաստաթուղթ է: Քննարկելով այդ հարցը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը նշեց, որ Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների սովետները, ղեկավարվելով ՍՄԿԿ XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետագա պլենումների որոշումներով, ելնելով ՍՍՀՄ սահմանադրության և Հայկական ՍՍՀ սահմանադրության պահանջներից, զգալի աշխատանք են կատարում տվյալ ասպարեզում: Միաժամանակ այդ որոշմամբ հանրապետության Գերագույն սովետի նախագահության առջև խնդիր դրեց՝ կատարելագործել այդ ոլորտներում սովետների աշխատանքի ձևերն ու մեթոդները:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը, հանրապետության ժողովրդական դեպուտատների տեղական սովետները, ղեկավարվելով

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության սույն որոշմամբ, այսուհետև սիստեմատիկաբար կքննարկեն պետական մարմիններում, ձեռնարկություններում, հիմնարկություններում ու կազմակերպություններում վերահսկողության իրականացման և կատարման ստուգման հետ կապված հարցեր։ Անհրաժեշտ է հետևողականորեն բարձրացնել վերահսկողության արդյունավետությունը, կատարողական կարգապահության և հանձնարարված աշխատանքային տեղամասերի վիճակի համար պաշտոնատար անձանց պատասխանատվությունը։

Սովետների մշտական հանձնաժողովների աշխատանքի հետագա բարելավումը, դեպուտատների բարձրացրած հարցերի ժամանակին քննարկումն ու լուծումը, այդ կապակցությամբ համապատասխան միջոցառումների կիրառումը ավելի գործուն և արդյունավետ կդարձնեն հանրապետության բոլոր սովետների աշխատանքը։

Առաջնահերթ է նաև սովետների որոշումները կենսագործելու, պետական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների գործունեությունը վերահսկելու ուղղությամբ դեպուտատների աշխատանքին ակտիվորեն աջակցելը։

Կոմունիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում սովետների ակտիվ մասնակցությունն ապահովելու, ընդունվելիք որոշումների նախապատրաստման որակը բարձրացնելու նպատակով, ինչպես նշված է Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի մասին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության որոշման մեջ, անհրաժեշտ է համակողմանիորեն ուսումնասիրել գործերի օբյեկտիվ վիճակը և արմատավորված պրակտիկան, խոր կերպով բացահայտել թերությունների ծնող պատճառները։ Որպեսզի ընդունված որոշումները լինեն ավելի նպատակային, այսուհետև դրանց նախնական քննարկման և կատարման վերահսկման գործում է՛լ ավելի լայնորեն պետք է ընդգրկել քաղաքացիներին։

Ավարտվող հնգամյակը մեր հանրապետության կյանքում շատ բանով էր նշանավոր։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը ընդունեցին հանրապետության համար կենսական նշանակություն ունեցող մի շարք որոշումներ։ Առանձնահատուկ կարևորություն ունեն մասնավորապես «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին», «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողատարածությունների հետագա զարգացման միջոցառումների մասին», «Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին» որոշումները, որոնցում կոմպլեքսային ձևով դրվում ու լուծվում են հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման համար վճռորոշ նշանակություն ունեցող մի շարք հարցեր։

Տնտեսական և կուլտուրական բուռն զարգացումն ապահովելու, աշխատավորների բարեկեցությունն առավել բարձրացնելու գործում կարևոր դեր խաղաց հանրապետությունում իրականացվող լայն թափի կապիտալ շինարարությունը, որը խոշոր չափեր է ընդունել հատկապես վերջին շրջանում։ Իրականացվել է բնակարանային շինարարության մեծ ծրագիր։ Միայն վերջին հինգ տարիների ընթացքում շահագործման են հանձնվել 5,8 միլիոն քառակուսի մետր օգտակար մակերեսով բնակելի տներ, կամ 90,2 հազար բնակարան, որը հնարավորություն տվեց բարելավելու հանրապետության յուրաքանչյուր հինգերորդ բնակչի բնակարանային պայմանները։ Միայն 1979 թվականին շահագործման են հանձնվել 31,3 հազար աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ, 6,6 հազար տեղով նախադպրոցական հիմնարկություններ, 720 մահճակալով հիվանդանոցներ։

Հայ ժողովրդի սոցիալիստական վերածնունդը լայն ասպարեզ բացեց մեր գրականության ու արվեստի ծաղկման համար։ Ինչպես մեր ամբողջ մշակույթի, այնպես էլ գրականության ու արվեստի համար բնորոշ են ազգային ձևի և նոր, սոցիալիստական բովանդակության զուգակցումը։ Սովետահայ գրականությունն ու արվեստը, առաջադեմ մարդասիրական ավանդները ներդաշնակորեն միահյուսելով սոցիալիստական ռեալիզմի սկզբունքներին, այսօր ապրում են վերածնված ժողովրդի շահերով, գործում են հանուն նրա առաջընթացի, հանուն նրա երջանկության։



Սովետական Հայաստանի քաղաքացին մեր մեծ տերության ներկայացուցիչն է, որի հոգևոր ներկայանակը հարստացել է նոր երանգներով, սոցիալիստական արժույթներով։ «Սովետական Հայաստանի ժողովուրդը,— ասում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— կոմունիստներն ու անկուսակցականները, բանվորությունը, գյուղացիությունը և մտավորականությունը հայրենասիրության ոգին սքանչելիորեն զուգակցում են սովետական մարդու մի այլ, ոչ պակաս արժեքավոր հատկության՝ ինտերնացիոնալիզմի հետ»։

Հանրապետության վաթսունամյա փորձը համոզիչ վկայությունն է այն բանի, որ ազգային զարգացման լենինյան ուղին, որով մենք ընթանում ենք, միակ ճիշտ ուղին է։ Սովետական Միության եղբայրական ժողովուրդների համերաշխ ընտանիքում հայ ժողովուրդը պայծառ հավատով է նայում իր ապագային։

Ավարտվում է տասներորդ հնգամյակը, մենք ոտք ենք դնում նոր՝ տասնմեկերորդ հնգամյակի շեմին։ Սովետական մարդիկ սեփական փորձով գիտեն, որ ամեն մի հնգամյակ իրենով մի նոր փուլ է նշանավորում երկրի սոցիալ-տնտեսական զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում։ Տասնմեկերորդ հնգամյակի՝ իր մասշտաբներով հիրավի վիթխարի խնդիրների հոյակապ համապատկերը ներկայացված է ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների ու մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում, որը ներկայացված է համաժողովրդական քննարկման։ Կուսակցությունը, հավատարիմ լենինյան ավանդույթին, իր պլաններին օրենքի ուժ տալուց առաջ խորհրդակցում է ժողովրդի հետ։ Մեծ են այս գործում սովետների անելիքները։ Նրանք պետք է ամեն կերպ նպաստեն աշխատավորական կոլեկտիվներում նախագծի գործարար քննարկման կազմակերպմանը, կուսակցական կազմակերպությունների հետ միասին խնամքով ընդհանրացնեն արված առաջարկությունները, դիրեկտիվ մարմիններին ներկայացնեն ուշագրավ նկատառումներն ու դիտողությունները։

Մեր երկիրը նշանակալից օրեր է ապրում։ Ընդամենը երկու ամիս հետո իր աշխատանքը կսկսի ՍՄԿԿ XXVI համագումարը։ Ինչպես ամբողջ Միության, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորները համագումարի պատվին ծավալված մրցության մեջ ձեռք բերած ակնառու հաջողություններով են ընթանում դեպի հարազատ կուսակցության համաժողովը։ Հանրապետության աշխատավորները մեծ խանդավառությամբ ընդունեցին տասներորդ հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու առթիվ ընկեր Լ. Ի. Բրեժնևի շնորհավորական ջերմ նամակը։ Բարձր գնահատելով հանրապետության աշխատավորների հաջողությունները, ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի կողմից հաստատ վստահություն է հայտնում, որ Հայկական ՍՍՀ-ի բանվորները, կոլտնտեսականները, ինժեներատեխնիկական աշխատողները, ծառայողները, գիտնականները և մասնագետները այսուհետ ևս կգտնվեն կոմունիստական շինարարության հոյակապ պլանների իրականացման պայքարի առաջնագծում, ՍՄԿԿ առաջիկա XXVI համագումարը կնշանավորեն աշխատանքային նոր մեծագործություններով։

Հանրապետության աշխատավորները, ինչպես միշտ, այդ մեծ վստահությունը պատվով կարդարացնեն և տասնմեկերորդ հնգամյակը կնշանավորեն մեր սոցիալիստական հայրենիքի հետագա բարգավաճման ասպարեզում ձեռք բերած նոր հաղթանակներով։

## ՍՄԿԿ XXVI համագումարին ընդառաջ

# ՀԱՅՐԵՆԻ ՀՈՂԻՆ ՀԱՅՐԱԿԱՆ ԽՆԱՄՔ

**Հ. Պ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
ՀՍՍՀ գյուղմինիստրության հողագիտության
և ագրոքիմիայի ԳՀԻ դիրեկտոր

Հ*ՈՂԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ հիմնական արտադրամիջոցն է, նրա բերրիության մակարդակով ու նրա նկատմամբ ցուցաբերվող վերաբերմունքով են պայմանավորված գյուղատնտեսական արտադրանքի քանակը և որակը։*

*Հանրապետության գյուղատնտեսության աշխատողները, կենսագործելով ՍՄԿԿ ագրարային քաղաքականությունը, զգալի աշխատանք են կատարել հողի բերրիությունը բարձրացնելու, հողային ֆոնդի օգտագործման և պահպանման գործը բարելավելու և, առհասարակ, գյուղատնտեսական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու նպատակով։*

*Կապիտալ ներդրումների և տնտեսությունների էներգազինվածության աճը, աշխատատար պրոցեսների մեքենայացումը, հողագործության քիմիացման մակարդակի բարձրացումը, գիտության նվաճումների և առաջավոր փորձի ներդրումը նպաստեցին հողային ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործմանը, բարձրարտադրողական հողահանդակների և ոռոգելի տարածությունների ընդլայնմանը։*

*Վերջին տասնամյակում յուրացվել և գյուղատնտեսական շրջանառության մեջ են դրվել 74 հազար հեկտար նոր հողեր, այդ թվում՝ 11,3 հազար հեկտար վարելահող։ Ոռոգելի հողատարածություններն ավելացել են 16 հազար հեկտարով, բարելավվել են 99 հազար հեկտար խոտհարքներ։ Այդ նույն ժամանակում ջրարբիացվել է 130 հազար հեկտար արոտավայր, իսկ 42 հազար հեկտարի վրա կատարվել են մակերեսային բարելավումներ։ Գյուղատնտեսության մեջ չօգտագործվող 16 հազար հեկտար քարքարոտ հողատարածություն հատկացվել է անտառմելիորացիային։*

*Բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը։ Տասներորդ հնգամյակի տարիներին հացահատիկի միջին բերքատվությունը 12—13 ցենտներից հասել է մինչև 18—20, իսկ մի շարք տնտեսություններում՝ 35—45 ցենտների։ Էապես բարձրացել է բանջարաբոստանային և պտղատու կուլտուրաների, խաղողի բերքատվությունը։ Ընդհանուր առմամբ գյուղատնտեսական արտադրության եկամուտն աճել է 45—50 տոկոսով։*

*Այսուհանդերձ, երբ առկա հաջողությունները համադրում ենք կուսակցության արդի պահանջների հետ, ապա պարզ է դառնում, որ մենք դեռևս շատ անելիքներ ունենք։ Երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման նոր հնգամյակի հիմնական ուղղությունների նախագծում դրվում է ոռոգելի ու ցամաքեցված հողերի օգտագործման արդյունավետության ըստ ամենայնի բարձրացման, ջրատնտեսական շինարարության տեխնիկական մակարդակի և որակի բարելավման, հողերի մելիորացման և դրանց գյուղատնտեսական յուրացման աշխատանքների կոմպլեքսային կատարման խնդիրը։*



*Գործնականորեն վերլուծելով կատարված աշխատանքը, մենք տեսնում ենք, որ բերքատվության աճը հիմնականում ձեռք է բերվել քիմիացման բարձր տեմպերի և ոռոգելի հողատարածությունների ընդարձակման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատու սորտերի ներդրման, ինչպես և կազմակերպական և տնտեսական գործունեության մակարդակի բարձրացման շնորհիվ։*

*Սակայն ուսումնասիրությունները վկայում են, որ հանրապետության հողային ղանգվածների առավել արժեքավոր մասի՝ սևահողերի մի շարք ֆիզիկական հատկություններ վատթարացել են, մասնավորապես առանձին տարածություններում էռոզիայի հետևանքով նվազել է հումուսի պարունակությունը։ Մինչդեռ հայտնի է, որ բնական բերրիության կորստի դեպքում հողը վերոհիշյալ միջոցառումների շնորհիվ իր այդ հատկությունը կարող է վերականգնել միայն մասնակիորեն։ Խիստ էռոզիայի ենթարկված հողը, նույնիսկ մեծ դոզայով պարարտացվելու և բարձր բերքատու սորտերի օգտագործման պայմաններում էլ չի կարող տալ հնարավոր բերքի անգամ կեսը, իսկ աղակալվելու դեպքում առհասարակ ամլանում է։ Ուստի հողային և ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցը շարունակում է մնալ հրատապ։*

*Ինչպես հայտնի է, հանրապետության բնակչության աճի շնորհիվ հետզհետե նվազում է մեկ շնչին ընկնող վարելահողը։ Այն կրճատվում է նաև ոչ գյուղատնտեսական նպատակներով մեծ հողատարածությունների առանձնացման հետևանքով։ Եթե 1953 թ. հանրապետության բնակչության մեկ շնչին ընկնում էր 0,43 հեկտար վարելահող, իսկ 1963 թ.՝ 0,21, ապա 1979 թ. այն կազմել է 0,16 հեկտար՝ միջին միութենական 0,9-ի փոխարեն։ Դժվար չէ պատկերացնել, թե ինչի կհանգեցնեն մոտ ապագայում հողատարածությունների կրճատման նման տեմպերը։*

*Պետք է միշտ հիշել, որ մեր պայմաններում խիստ սահմանափակ են մշակվող հողատարածությունների ընդարձակման հնարավորությունները։ Հանրապետության 2.974,3 հազար հեկտար ընդհանուր տարածությունից գյուղատնտեսության մեջ օգտագործվում է 1.389 հազար հեկտարը, կամ 46,6 տոկոսը, որից 16 տոկոսը վարելահողեր են, 27,8-ը՝ մարգագետիններ ու արոտավայրեր, 2,8-ը՝ պտղատու-խաղողի այգիներ։ Սակայն այս տվյալները դեռևս լրիվ չեն արտացոլում հանրապետության հողային ռեսուրսների իրական վիճակն ու օգտագործման ռեալ հնարավորությունները։ Վարելահողերի ֆոնդը (շուրջ 481 հազար հեկտար) կտրտված ռելիեֆի պատճառով, բաղկացած է 155 հազար առանձին հողակտորներից։ Վարելահողի մեկ կտորի միջին մակերեսը չի անցնում 3 հեկտարից։ Ընդ որում, 50 հազար տեղամասեր կես հեկտարից փոքր են, 33 հազարը 0,6—1 հեկտար է, իսկ 26 հազարը՝ 1—2։ Եվ եթե հաշվի առնենք, որ վարելահողերի երկու երրորդը գտնվում է 5 աստիճանից ավելի թեքության քարքարոտ լանջերին ու որոշակիորեն ենթակա է էռոզիայի վնասակար ազդեցությանը, ապա ակնհայտ կլինի հանրապետության հողային ռեսուրսների օգտագործման պրոբլեմի ամբողջ բարդությունը։*

*Հայաստանում, ըստ էության, օգտագործվում են վարուցանքի համար պիտանի բոլոր հողերը և առանց խոշոր կապիտալ ներդրումների՝ շրջանառության մեջ նոր հողեր մտցնելու իրական ռեզերվներ չկան։ Դրա հետ մեկտեղ, թունաքիմիկատներն ու պարարտանյութերը հարաճուն դոզաներով օգտագործելու, միջավայրի տեխնոգեն աղտոտվածությունն ուժեղացնելու, հողերի մեքենայացված մշակումը շաբլոն կերպով կատարելու, ինչպես նաև լանդշաֆտի տարբեր տեսակների չհիմնավորված ձևափոխումների հետևանքով վատանում են հողերի ագրոնոմիական կարևոր առանձնահատկությունները։*

*Հողային ռեսուրսների պահպանումը և ռացիոնալ օգտագործումը, դրանց պլանաչափ վերարտադրությունը և բերրիության հետևողական բարձրացումը, շրջակա միջավայրի բարելավման խնդիրները և էկոլոգիական սիստեմների փոխհարաբերության կարգավորումը հրատապ նշանակություն ունեն և պետք է իրագործվեն ոչ թե անջատ միջոցառումներով, այլ կոմպլեքսայնորեն։*

*Մեր առաջնահերթ խնդիրներից մեկը Արարատյան հարթավայրի 30 հազար հեկտար լքված, սոդային աղուտ-ալկալի հողերի իրացումն է։ Միաժամանակ*

հասունացել է հարթավայրի 35 հազար հեկտար գերխոնավ հողերի մելիորացման հարցը։ Այլապես մենք կկանգնենք երկրորդային աղակալման պոտենցիալ վտանգի առջև։ Այդ հողերի իրացման անհրաժեշտության տնտեսական նպատակահարմարության մասին է վկայում այն փաստը, որ Արարատյան հարթավայրի կոլտնտեսությունների ու սովխոզները 80 հազար հեկտար մշակվող հողատարածություններից տալիս են հանրապետության գյուղատնտեսական համախառն եկամտի 40 տոկոսը։ Իսկ վերոհիշյալ 75 հազար հեկտար հողատարածության մելիորացումը և իրացումը հավասարազոր են տվյալ գոտում գյուղատնտեսության համախառն արտադրանքի 70—75 տոկոսի ավելացման։

Հենց դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ աղակալած հողերի իրացման արդյունավետ եղանակների մշակման պրոբլեմը դարձել է հանրապետության կուսակցական մարմինների, կառավարության և գիտական հիմնարկությունների առանձնահատուկ հոգածության առարկան։

Մեր ինստիտուտը լուրջ արդյունքի է հասել քիմիական արդյունաբերության թափոնների՝ օգտագործված ծծմբական թթվի և երկաթարջասպի կիրառման միջոցով սոդային աղակալած հողերի իրացման ասպարեզում։ Մշակված մեթոդի արտադրական լայն փորձարկումները և արմատավորումը էապես նպաստեցին հանրապետությունում մելիորացիոն աշխատանքների ընդլայնմանը։ Այդ միջոցառումներն իրենց արտացոլումը գտան «Հայկական ՍՍՀ ոռոգելի հողատարածության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1977 թ. հոկտեմբերի 13-ի որոշման մեջ։ Այդ կարևորագույն փաստաթղթով խոշոր կապիտալ ներդրումներ են նախատեսվում Արարատյան հարթավայրի գերխոնավ և աղակալած հողերի մելիորացման նպատակով։

Քանի որ Արարատյան հարթավայրի ստորգետնյա ջրերը հոսք չունեն և ինքն էլ աղերի կուտակման գոտի է, ուստի հողի աղազերծման և աղերի հեռացման խնդիրը ծայրահեղորեն դժվարանում է։ Հայտնի է, որ հարթավայրի սոդային աղակալման ակունքը հանքայնացված գրունտային ջրերի բարձր մակարդակն է։ Հետևաբար, ապարդյուն կանցնեն սոդային աղուտ-ալկալի հողերի յուրացման բոլոր փորձերը, եթե նախապես մինչև 3 մետր չիջեցվի գրունտային ջրերի մակարդակը։ Առանց դրենաժի բացառվում է մելիորացվող տարածության սահմաններից աղերի հեռացման հնարավորությունը։ Սակայն այդ միջոցառումների ծավալը դեռևս անբավարար է։ Այսօրվա դրությամբ ցամաքեցնող սիստեմների ընդհանուր երկարությունը կազմում է 1068 կմ, որից միայն 60 կիլոմետրն է փակ տիպի։ Դրենաժի տեսակարար երկարությունը ծայրահեղ փոքր է և առանձին շրջանների սահմաններում տատանվում է 12—29 գծամետրի միջև, իսկ հարթավայրի միջինը՝ 27 է։ Մինչդեռ, ըստ հողերի լիտոլոգիական և ստորգետնյա ջրերի քիմիական կազմի տվյալների, նրա երկարությունը պետք է լինի 45—50 գծամետրից ոչ պակաս։ Եվ եթե հաշվի առնենք, որ դրենաժային ցանցի զգալի մասը, որն ունի 1—2 մետր խորություն, տղմապատվել է, ծածկվել մոլախոտերով, կոլեկտորային հոսքի բացակայության հետևանքով խցանվել է, ապա դժվար չէ պատկերացնել հարթավայրի մելիորատիվ վիճակի անբարենպաստ լինելը։

Ցամաքեցնող ցանցի կատարյալ չլինելու հետևանքով բաց դրենաժի գոտում 2000 հեկտար հող հանված է գյուղատնտեսական օգտագործումից։ Բաց դրենաժի կառուցման պրակտիկան շարունակելու դեպքում, ոչ հեռու ապագայում շրջանառությունից դուրս կմնա ևս 3—4 հազար հեկտար հողատարածություն։

Շուրջ 35 հազար հեկտար գերխոնավ մշակվող հողերի օգտագործումը դժվարացել է, վատացել են հողի ջրաֆիզիկական հատկությունները, օդային և ջերմային ռեժիմները, իջել է հանքային պարարտանյութերի օգտագործման արդյունավետությունը։ Հաշվարկները ցույց են տալիս, որ գերխոնավության հետևանքով կորստյան է մատնվում սպասվելիք արտադրանքի 30—40 տոկոսը։

Առկա ուղղահայաց դրենաժը հիմնականում կառուցված է դաշտերը ոռո-



գելի ջրով ապահովելու, այլ ոչ թե հողերը ցամաքեցնելու նպատակով։ Ընդ որում, հորատանցքերի մի մասը սիստեմատիկորեն պարապուրդ է տալիս շահագործման հուսալի ծառայության բացակայության պատճառով։ Նման պայմաններում քիմիական մելիորացիայի միջոցառումները չեն ապահովում հողերի աղազրկման անհրաժեշտ մակարդակը։ Մինչդեռ ջրատնտեսական մարմինները քիմիական մելիորացիան հաճախ իրականացնում են, նախապես չիջեցնելով ստորգետնյա ջրերը մինչև հաշվարկային սահմանը։ Այդպիսի դեպքերում առաջին իսկ լվացման ժամանակ ստորգետնյա ջրերի մակարդակը կտրուկ բարձրանում է, և բացառվում է աշխատանքները շարունակելու հնարավորությունը։ Այդպիսով, մելիորատիվ ժամանակամիջոցը ձգձգվում է երկար տարիներ, իջնում է քիմիական մելիորացման արդյունավետությունը, իսկ երբեմն էլ մելիորացված հողերը կրկին աղակալվում են։

Մելիորացիայի անբավարար վիճակը հետևանք է նաև միջտնտեսային և ներտնտեսային ոռոգման ցանցերի տեխնիկական պարզունակ մակարդակի։ Մագիստրալային ջրանցքները (Արտաշատի, Հոկտեմբերյանի և Ներքին Հրազդանի) որոշ հատվածներում անսարք են։ Առանձնապես անբարենպաստ վիճակում են Արևշատի և Մխչյանի ջրհան կայանների վերջնամասերը և միացվող ջրանցքները։ 4778,6 կմ երկարությամբ ներտնտեսական ոռոգիչ սիստեմներից երեսպատված է միայն 20,7 տոկոսը։ Դրա հետևանքով արդյունավետ է օգտագործվում ամբողջ ջրի միայն 50—55 տոկոսը։ Իսկ ջրանցքների ամենամյա մաքրումը, ինչ խոսք, մեծացնում է շահագործման ծախսերը։

Ոռոգիչ առանձին ցանցեր չունեն, մի մասում էլ չեն գործում ջրաչափիչ սարքավորումները, ջրաբաշխումը, ոռոգման աշխատանքները շատ տեղերում կատարվում են ձեռքով։ Այս ամենի հետևանքով հարթավայրի ոռոգվող հողատարածություններում ջրի կորուստները տարեկան կազմում են հարյուր միլիոնավոր խորանարդ մետր։

Եթե մոտակա տարիներին ոռոգման ամբողջ ցանցը չվերակառուցվի և չբարելավվի, ապա մենք առաջվա պես ջրի կեսը կկորցնենք, իսկ դա կհանգեցնի ստորգետնյա ջրերի մակարդակի հետագա բարձրացման, հողերի աղակալման և ճահճապատման։ Առանց ոռոգման սիստեմի վերակառուցման՝ նպատակահարմար չէ ցամաքեցման ցանցի կառուցումը և աղակալված հողերի քիմիական մելիորացումը։ Խոսքն այն մասին է, որ մելիորացիոն ծրագրերը կազմելիս նախատեսվեն ոռոգող-ցամաքեցնող այնպիսի սիստեմների կոմպլեքսային շինարարություն, որոնք առանց վերակառուցման գործեն մի քանի տասնամյակ։

Այս հարցերի անտեսումը ժամանակի ընթացքում կարող է խիստ ծանր հետևանքներ ունենալ, և առաջին հայացքից աննշան թվացող փոփոխությունները ի վերջո կհանգեցնեն Արարատյան հարթավայրի ջրաերկրաբանական, ջրաքիմիական, լիտոլոգիական, բիոքիմիական և հողամելիորատիվ բացասական խոշոր փոփոխությունների։ Պրոբլեմն առավել հրատապ է դառնում այն կապակցությամբ, որ միութենական կառավարությունը խոշոր կապիտալ ներդրումներ է հատկացրել 65 հազար հեկտար գերխոնավ հողերի չորացման և ցամաքեցման համար, ներառյալ 30 հազար հեկտար սոդային աղուտ-ալկալի հողերի իրացումը։

Նախատեսվող արմատական մելիորատիվ միջոցառումներն ընդգրկում են մեր հանրապետության գյուղատնտեսության հիմնական բազայի՝ Արարատյան հարթավայրի ամբողջ տարածքի ավելի քան 60 տոկոսը։ Եթե նկատի ունենանք, որ մելիորացիայի ենթակա հողատարածությունները մեկուսացված զանգվածներ չեն, այլ գտնվում են բարձր արտադրողական գյուղատնտեսական հողահանդակների գոտում, իսկ ջրատնտեսական աշխատանքները չեն կարող սահմանափակվել ոչ մեծ տարածություններում, ապա ակնհայտ է, որ մելիորատիվ միջոցառումների մեջ կընդգրկվեն հարթավայրի ամբողջ տարածքի 70—75 տոկոսը։ Մնացած հողատարածությունների վրա նույնպես պետք է իրականացվի ոչ ինժեներական բնույթի ցամաքեցնող-ոռոգող ցանցի արմատական վերակառուցում։ Այս ամենը կհանգեցնի հարթավայրի ողջ տարածքի բուն

կազմակերպման, ոռոգվող դաշտերի չափերի, ցանքադաշտերի կառուցվածքի փոփոխությունների անհրաժեշտությանը։ Ըստ էության, Հայաստանի գյուղատնտեսության մարգարիտը՝ Արարատյան ամբողջ հարթավայրը, մելիորատիվ առումով պետք է նորացվի։

Այսպիսով, հարթավայրի ողջ տարածքը պետք է դիտել իբրև մի փոխկապակցված ամբողջություն, հակառակ դեպքում, նրա որոշակի հատվածներում կամ առանձին զանգվածներում իրականացվող մելիորատիվ միջոցառումները էապես կվատացնեն ամբողջ հարթավայրի ջրաաղային հաշվեկշիռը։ Առանձնապես պետք է հաշվի առնել, որ քիմիական մելիորացիայի ծավալի ընդլայնման և աղերով հարստացած դրենաժային ջրերի ավելացման հետևանքով անխուսափելիորեն կխախտվի հարթավայրի ջրային աղբյուրների հանքային բաղադրությունը։

Փաստերը վկայում են, որ դրենաժի դերը թերագնահատելու հետևանքով էական վնաս է հասցվում համաշխարհային հողագործությանը։ ՄԱԿ-ի գյուղատնտեսական և պարենային կազմակերպության տվյալներով, երկրագնդի ոռոգվող հողերի մոտ կեսը աղակալված է։ ԱՄՆ-ում աղակալված է այդպիսի հողերի մեկ քառորդը, Բրազիլիայում՝ 50 տոկոսը, Չինաստանում՝ 20 տոկոսը, Հնդկաստանում՝ 7 միլիոն հեկտար, Պակիստանում՝ 2 միլիոն հեկտար։ Զգալի հողատարածություններ աղակալված են նաև ՍՍՀՄ-ում։

Ինչ վերաբերում է Արարատյան հարթավայրին, ապա միայն գրունտային ջրերի մակարդակի իջեցման պրոբլեմի լուծումը հնարավոր կդարձնի աղուտալկալի հողերի քիմիական մելիորացիայի իրականացման հաջողությունը։ Աշխատանքների որակին զգալի վնաս է հասցվում մելիորացվող օբյեկտների անապահովվածությունը հողալվացման ջրով։ Հոկտեմբերյանի ոռոգման սիստեմի վարչությունը, օրինակ, ամեն տարի այդ նպատակով հատկացնում է ընդամենը 5—7 մլն խմ ջուր, այսինքն՝ պահանջվող քանակության մոտ մեկ երրորդը։ Բնական է, որ նման պայմաններում աղուտները, առանց ջրի քիմիապես մելիորացվելով, չեն աղազերծվում։ Կատարվում են նաև այլ կոպիտ խախտումներ։ Վարելահողերի հարթագծման ցածր որակը, առանց դողավորող և չափիչ միջոցների, ուղղակի «աչքաչափով», թթուների և լվացող ջրերի օգտագործումը, մելիորացիոն աշխատանքի սահմանված ժամկետների չհիմնավորված ձգձգումները, վերջին հաշվով, հանգեցնում են աշխատանքի որակի իջեցման։ Հենց դրանով պետք է բացատրել, որ իրացված 2500 հեկտարի կեսից ավելին լրիվ մելիորացված չէ, իսկ զգալի տարածություններ առհասարակ չեն օգտագործվում կրկին աղակալվելու հետևանքով։ Բայց չէ՞ որ այդ հողերի յուրաքանչյուր հեկտարի համար պետությունը ծախսել է 10 հազար ռուբլի…

Չպետք է մոռանալ, որ մելիորացիայի կոմպլեքսային պրոբլեմը չի սահմանափակվում ցամաքեցնող և ոռոգիչ սիստեմների կառուցմամբ ու քիմիական մելիորացիայի աշխատանքների կատարմամբ։ Դա աղուտ-ալկալի հողերի յուրացման միայն առաջին փուլն է։ Գործի հետագա հաջողությունը պայմանավորված է հողամելիորատիվ, ագրոնոմիական, կենսաբանական և կուլտուրտեխնիկական միջոցառումների իրականացմամբ, որը կոչված է ապահովելու հողերի բերրիության ու արտադրողականության անշեղ աճը։

Նշված միջոցառումների կիրառման շնորհիվ մեր ինստիտուտի փորձակայանի 200 հեկտար մելիորացված հողերում բարձր բերք է աճեցվում։ Աշնանացան ցորենի բերքատվությունը հասնում է 50—55 ցենտների, վարդագույն խորդենունը և ճմերուկինը՝ 200—250 ց, վաղահաս կարտոֆիլինը՝ 160—190 ց։ Խաղողի բերքը ըստ սորտատեսակների կազմում է 80—120 ցենտներ, իսկ խնձորի և տանձի այգիները, որոնք աճեցվում են պալմետային եղանակով, հեկտարից տալիս են 300 ցենտներ բերք։

Մոտ ապագայում մելիորացված հողերը հանրապետության հողագործության հաշվեկշռում նշանակալի տեսակարար կշիռ կունենան, և դրանց ճիշտ օգտագործումը կապահովի գյուղատնտեսական համախառն արտադրանքի էական աճ։ Ուստի և մելիորացիան կարիք ունի լուրջ ուշադրության։ Թերևս հարկ լինի վերանայել այդ բնագավառի կազմակերպական ձևերը։ Ավելի ու



ավելի անհետաձգելի է դառնում մասնագիտացված մելիորատիվ կազմակերպության ստեղծման անհրաժեշտությունը։ Նույն կազմակերպությունը չի կարող և՛ իրացնել աղուտներ Հոկտեմբերյանում, և՛ կառուցել օբյեկտներ Երևանում, և՛ ջրամբար՝ Ջողազում։

Մելիորատիվ աշխատանքների ներկայիս կառուցվածքը չի համապատասխանում դրանց կոմպլեքսային իրականացման պահանջներին։ Դրենաժային-կոլեկտորային և ոռոգիչ ցանցերի կառուցումը, խոր հորատանցքերի հորատումը, ջրամղիչների մոնտաժումը, քիմիական մելիորատիվ նյութերի փոխադրումը, հողերի հիմնական հարթագծումը, ինչպես նաև քիմիական մելիորատիվ նյութերի և լվացող ջրերի օգտագործումը իրականացնում են «Հայգլխջըրշին»-ի տարացիր կազմակերպությունները, որոնց քիչ են մտահոգում մելիորատիվ աշխատանքների վերջնական արդյունքները։

Հանրապետության ջրատնտեսական մարմինները, որոնք կոչված են ապահովելու բոլոր տեսակի դրենաժային, կոլեկտորային սիստեմների համաչափ աշխատանքը, իրականում պատասխանատվություն չեն կրում, վերջին հաշվով, հողերի կրկին աղակալման հետևանքով առաջացած կորուստների համար։

Քննադատության չի դիմանում նաև նույն գերատեսչությունում պարտականությունների և իրավունքների կենտրոնացման ներկա սիստեմը, որի համաձայն համատեղվում են նախագծերը պատվիրողի և ֆինանսավորողի, շինարարական աշխատանքների պատվիրատուի ու կապալառուի և, վերջապես, կատարված աշխատանքներն ընդունողի ֆունկցիաները։ Այսպիսի կարգն անխուսափելիորեն հանգեցնում է վերահսկողության բացակայության ու անպատասխանատվության։ Հարկ է, որ ջրատնտեսական մարմինները, հանրապետության շինարարական կազմակերպությունների օրինակով, ունենան միայն կապալառուի ֆունկցիաներ։

Անհետաձգելի խնդիր է ոռոգվող և մելիորացված հողերի, ինչպես նաև ջրի բոլոր տեսակի աղբյուրների ջրաաղային ռեժիմի հսկողության մելիորատիվ ծառայության աշխատանքների կարգավորումը, ծառայություն, որը կոչված է մշակելու և շահագրգռված կազմակերպություններին տրամադրելու օպերատիվ ու կանխատեսվող նյութեր Արարատյան հարթավայրի հողային և ջրային ռեսուրսների վիճակի վերաբերյալ, միաժամանակ տալով կոնկրետ հանձնարարականներ։

Առանց մելիորատիվ աշխատանքների արմատական բարելավման, օրերից մի օր մենք կարող ենք բերրի հողերի աղակալման տխուր իրողության ականատեսը լինել։ Ի դեպ, արդեն այսօր նման հետևության համար մենք ավելի քան բավարար հիմքեր ունենք։ Ընթացիկ տարում տնտեսությունների ընտրովի հետազոտությամբ ի հայտ բերվեցին շուրջ երկու հազար հեկտար երկրորդային աղակալված ոռոգելի վարելահողեր։ Ի՞նչ է ստացվում. 15 տարում մելիորացված է 2500 հեկտար հող, որի կեսը ցածր արդյունավետություն ունի կամ էլ բոլորովին չի օգտագործվում աղերի մեծ պարունակության պատճառով։ Այդ նույն ժամանակահատվածում աղակալվել են գեռ երեկ բարձր բերրիություն ունեցող երկու հազար հեկտար հողեր։

Վիճակը բարվոք չէ նաև կոլտնտեսություններին ու սովխոզներին հանձնված մելիորացված հողերի գյուղատնտեսական օգտագործման հարցում։ Սահմանված ագրոտեխնիկայի և ոռոգման ռեժիմի խախտումները, արդյունավետության հաշվառման բացակայությունը և մելիորացված հողերի էքստենսիվ օգտագործման փաստերը բացասաբար են ազդում մշակվող կուլտուրաների բերքատվության և հողերի բերրիության վրա։

Հանրապետությունում ոռոգելի հողերի ճիշտ օգտագործման հարցը տվյալ դեպքում մեզ հետաքրքրում է ոչ միայն մթերքների արտադրության բարձր մակարդակի ապահովման, այլև հողային ֆոնդի բերրիության պահպանման և բազմապատկման տեսանկյունից։

Բանն այն է, որ ջուրը, սխալ օգտագործելիս, դառնում է հողի իրական թշնամին՝ առաջացնելով իռիգացիոն էռոզիա։

Եթե մենք չափանիշ ընդունենք միայն համախառն արտադրության ցուցանիշները, ապա կարծես թե անհանգստանալու առիթ չկա։ Ոռոգվող հեկտարի համախառն արտադրանքի ծավալը 1978 թվականին, 1975-ի համեմատությամբ, մեծացել է 11 տոկոսով, իսկ ոռոգելի հողերը, որոնք կազմում են գյուղատնտեսական ամբողջ հողատարածության 22 տոկոսը, ապահովում են երկրագործության համախառն եկամտի 80 տոկոսը։ Բայց և այնպես այդ հողերի արդյունավետությունն ընդհանուր առմամբ շարունակում է մնալ ցածր։ Այսպես, 45—50 ցենտների փոխարեն յուրաքանչյուր հեկտարից (այդ թվում նաև պայմանական ջրովի տարածություններից) ստացվում է միայն 22—24 ցենտներ հացահատիկ։ Խիստ ցածր է նաև բազմամյա խոտաբույսերի բերքը՝ հեկտարից 50—60 ցենտներ։

Անբավարար է նաև ոռոգելի հողատարածությունների ընդլայնման և դրանք գյուղատնտեսական շրջանառության մեջ դնելու գործը։ Ջրատնտեսական մարմինները սիստեմատիկաբար թերակատարում են կապիտալ ներդրումների և շինմոնտաժային աշխատանքների, ոռոգելի նոր հողերի իրացման, այդպիսի հողերում մելիորացիոն աշխատանքների կատարման պլանները։ Իններորդ հնգամյակում հանրապետության մելիորատիվ շինարարությունում չիրացվեց 54 միլիոն, իսկ 1976—1977 թթ՝ 10 միլիոն ռուբլի։ Նոր ոռոգվող հողերում կուլտուրտեխնիկական միջոցառումների իրականացման 1978—1979 թթ պլանը կատարվեց միայն 40,3 տոկոսով։

Տասներորդ հնգամյակում շահագործման են հանձնվել 12,1 հազար հեկտար ոռոգելի նոր հողեր, մինչդեռ այդ նույն ժամանակահատվածում մնացել են չոռոգված 20—22 հազար հեկտար ոռոգելի տարածություններ։ Հարց է ծագում՝ ինչո՞ւ չեն ոռոգվում ոռոգելի հողերը։ Մեղքի մի մասը, իհարկե, կոլտնտեսությունների ու սովխոզների վրա է ընկնում, սակայն հիմնական պատճառն այն է, որ շատ հողամասերում պարզապես հնարավոր չէ ջուրը դաշտ հասցնել կամ էլ աննպատակահարմար է ոռոգումը՝ հողերի կրկնաղակալման հետևանքով։ Միայն Գորիսի շրջանում 1979 թ. չի ջրվել 2,5 հազար հեկտար, իսկ 1980 թ. 0,3 հազար հեկտար, Ամասիայի շրջանում՝ 2,3 և 0,46 հազար հեկտար և այլն։ Ինչն է պատճառը։ Այն, որ սարալանջում կառուցված ցանցը չի ապահովում հողի հավասարաչափ խոնավացումը, ուժեղանում է իռիգացիոն էռոզիան, չի ստեղծված շահագործման հուսալի ծառայություն։ Ցավալի է, որ մինչև օրս հանրապետությունում չկա մի ոռոգման ցանց, որը սարքավորված լինի ջրման աշխատանքների կարգավորման ավտոմատ համակարգով։

Պլանավորող մարմինների համար «սովորույթ» է դարձել ամեն տարի «գյուղատնտեսական շրջանառության մեջ ոռոգման ցանցով հողեր ներգրավելու համար» միջոցներ և ժամկետներ նախատեսելը։ Իսկ ինչպե՞ս է հնարավոր դառնում նախ վիթխարի միջոցներ ծախսել ոռոգիչ սիստեմների կառուցման վրա, ապա նոր մտածել այդ ջրերով ոռոգելու համար հող նախապատրաստելու կամ էլ այդ ժամանակամիջոցում շարքից դուրս եկած սիստեմները վերանորոգելու մասին։ Մի՞թե Արզնի—Շամիրամի ոռոգման ցանցի առաջին հերթի արատավոր փորձը դառը դաս չհանդիսացավ։ Որքան էլ զարմանալի է, ըստ երևույթին նույն կարգի «էքսպերիմենտ» է նախատեսվում իրականացնել նաև այժմ կառուցվող Ախուրյանի ջրամբարի հետ, որը ոռոգելու է 17 հազար հեկտար հող։ Վիճակն առայժմ այնպիսին է, որ կլինի ջուրը, բայց դեռ չեն լինի այն ընդունելու պատրաստ հողը, ներտնտեսային ոռոգիչ ցանցը, բնակելի ավանները, արտադրական օբյեկտները։ Այնուհետև կսկսվեն հապճեպորեն շահագործման հանձնել անպատրաստ հողերը, իսկ մի քանի տարի հետո էլ ժողովրդատնտեսական պլաններում կնախատեսվի՝ «Հոկտեմբերյանի և Թալինի շրջաններում յուրացնել նոր ոռոգելի հողեր»։ Վնաս կհասցվի ոչ միայն էկոնոմիկային, այլև, որ առավել ցավալի է, կտուժի հողը։ Վատ նախապատրաստված դաշտերում ջուրը կլվանա հողը, բազմամյա տնկարկներով զբաղեցված տարածությունները դատապարտված կլինեն ցածր արդյունավետության։



Հանրապետությունում հողը փչանում է նաև ոռոգման ոչ կատարյալ մեթոդների կիրառման հետևանքով։ Երկար տարիներ հարց է դրվում կազմակերպել գիշերային ջրումը։ Եվ դա միանգամայն տեղին է։ Ջրի սուր պակասի պայմաններում այն պետք է օգտագործել գիշեր-ցերեկ։ Բայց արդյո՞ք դա հնարավոր է լիովին իրականացնել ոռոգման ներկա «տեխնիկայով»՝ պապենական բահով։ Հանրապետության 282 հազար հեկտար ոռոգելի հողատարածություններից միայն փոքր մասն է ջրվում անձրևացման սիստեմներով։ Հիշեցնենք, որ Ուկրաինայում և Մոլդավիայում այդ եղանակով ջրվում է ոռոգելի հողատարածությունների 80—90 տոկոսը։ Այդ հանրապետություններում ջուրը լիովին, այդ թվում և գիշերն օգտագործելը ոչ մի դժվարություն չի հարուցում, որովհետև այնտեղ լայնորեն կիրառվում են ջրման ավտոմատ միջոցները։

Մենք մտադիր չենք իսպառ բացառել գիշերը բահով ջրելու հնարավորությունը, սակայն, հողի պահպանության և արտադրողականության բարձրացման շահերից ելնելով, անհրաժեշտ է նախապատվությունը տալ ջրման տեխնիկայի առաջավոր մեթոդների ներդրմանը, այլապես կշարունակենք ամեն մի հեկտարի վրա ծախսել 12—14 հազար խմ ջուր՝ ագրոտեխնիկայով նախատեսված 8—9 հազարի փոխարեն։

Ջրատնտեսական աշխատանքները սահմանված ժամկետներում չկատարելը հաճախ պատճառաբանվում է նախագծերի ուշացմամբ, որը, իբր, համապատասխան լիմիտ չունենալու հետևանք է։ Այսօր էլ գյուղատնտեսության համար կենսականորեն կարևոր շատ օբյեկտների՝ Հոկտեմբերյանի, Եղվարդի, Գյառգյառի, Մյասնիկյանի ջրամբարների, ոռոգման մի շարք սիստեմների շինարարությունը սկսելը ձգձգվում է նախագծերի բացակայության պատճառով։

Մեր կարծիքով, պատճառը ոչ թե լիմիտների սահմանափակ լինելն է, այլ դրանց ոչ խելացի օգտագործումը։ Մելիորացիայի և ջրային տնտեսության, ինչպես նաև գյուղատնտեսության մինիստրություններում մնում են չօգտագործված միլիոնավոր ռուբլու պատրաստի նախագծեր։ «Հայպետհողշիննախագիծ» ինստիտուտը հակաէռոզիոն կոմպլեքսային միջոցառումների սխեմաներ է կազմել 270 հազար հեկտար տարածություն ընդգրկող 15 խոշոր ջրհավաք ավազանների համար, բազմաթիվ նախագծեր են կազմվել 69 հազար հեկտար կերահանդակների, ինչպես նաև անտառամելիորատիվ և հիդրոտեխնիկական միջոցառումների համար։ Դրանց մեծ մասը նույնպես մնում է չօգտագործված։ Մինչդեռ հայտնի է, որ լեռնային պայմաններում, որտեղ մշտապես զարգանում են էռոզիոն պրոցեսները, այդպիսի նախագծերը արագորեն հնանում են, և նոր միջոցներ են պահանջվում դրանք կրկին ճշգրտելու համար։ Թվում է, թե ստեղծված դրությունից դուրս գալու ամենապարզ միջոցը մելիորատիվ աշխատանքների իրականացման համար հատկացված միջոցների սահմաններում օբյեկտների նախագծումն է 1—2, այլ ոչ թե 10—15 տարվա առաջանցիկ հաշվարկներով։

Իսկ որքան միջոցներ և լիմիտներ են ծախսվում հողային կադաստրը կազմելու նախագծերի վրա։ Այդ նյութերի խելացի օգտագործումը հնարավորություն կընձեռի յուրաքանչյուր տնտեսության և շրջանի համար գիտականորեն հիմնավորված պլաններ կազմելու մելիորատիվ միջոցառումների, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության և մթերումների ծավալի վերաբերյալ, ճիշտ գնահատելու ձեռնարկությունների տնտեսական գործունեությունը՝ ըստ հողահանդակների որակի։ Ցավոք, այդ օգտակար նյութերը նույնպես շատ դեպքերում դառնում են «ավելորդ բեռ»։

Դրությունը բարվոք չէ նաև քարքարոտ հողերի իրացման հարցում։ Այդ հողերի մելիորացման ասպարեզում մեծ ծավալի աշխատանքներ են իրականացված Թալինի և Աշտարակի շրջաններում։ Սակայն շատ տեղամասերում մելիորացիան անորակ է կատարված։ Անհրաժեշտ չափով չեն ջարդված ներհողային ցեմենտացված հորիզոնները, արմատները սնող հողաշերտերը լրիվ չեն ազատված քարերից, իսկ դաշտերում դրանց կուտակումը իջեցնում է հողի օգտագործման գործակիցը և բարդացնում մեքենայական մշակման պայմանները։

Հայտնի է, որ քարհավաքի ընթացքում, բազմակի փխրեցման և հարթա-

գծման հետևանքով փոշիանում է հողը, որի հետևանքով վատանում են նրա ջրաֆիզիկական հատկությունները: Այդպիսի պայմաններում պտղատու և խաղողի այգիների հիմնումը անթույլատրելի է: Հարկավոր է նախապես 3—5 տարվա ընթացքում այդ հողատարածություններում բազմամյա խոտաբույսեր աճեցնել, որը մասնակիորեն կվերականգնի հողի կառուցվածքը և կհավասարեցնի հողային պայմանները: Այդ հանձնարարականների անտեսումը, քարերը հավաքելուց հետո անմիջապես այգիների հիմնումը հանգեցնում են ցածր բերքատվության և այդ տարածությունների ոչ շահութաբերության:

Հողային ռեսուրսների պահպանման համար անհրաժեշտ է կարգավորել նաև ոչ գյուղատնտեսական նպատակներով հողեր տրամադրելը: Վերջին տարիներին այդ գործն ավելի խնամքով է կատարվում, սակայն չլուծված հարցերը դեռևս շատ են: Բազմիցս խոսվել է, օրինակ, ձկնաբուծության համար լճակներ կառուցելու նպատակով հողերը ռացիոնալ օգտագործելու մասին: Տարօրինակ չէ՞, որ ավազի արդյունահանումից հետո գոյացած բնական ջրամբարների ըդալի տարածությունները այդ նպատակով չեն օգտագործվում և, ժամանակի ընթացքում տղմոտվելով ու եղեգնապատվելով, վերածվում են ճահճուտների: Մինչդեռ հարևան տեղամասերում հսկայական միջոցներ են ծախսվում արհեստական լճակներ կառուցելու համար: Այսպիսի շռայլությունը պատճառաբանում են ձուկը հավաքելու համար ջուրը բաց թողնելու անհրաժեշտությամբ: Բայց չէ որ լճերում, ծովերում, օվկիանոսներում ձուկը որսում են առանց ջուրը նախապես դատարկելու: Ձկնաբույծներն ունեն լճակների ցանցի ընդլայնման ավելի մեծ պլաններ, բայց չի կարելի հանդուրժել, որ դա իրականացվի Արարատյան հարթավայրի հողային սուղ ռեսուրսների հաշվին:

Այն հողը, որը վաղը կարող է բերք տալ, չպետք է հատկացվի այլ նպատակների, առանց դրա ծայրահեղ անհրաժեշտության: Ոչ գյուղատնտեսական նպատակներով հողերի հատկացումը պետք է կատարվի գիտականորեն հիմնավորված ձևով միայն: Օտարացման համար հողատարածություններ հարկ է փնտրել ոչ թե այն ժամանակ, երբ զգացվում է դրա պահանջը, այլ վաղօրոք, տասնամյակներ առաջ:

Հայտնի է, որ հանրապետության բոլոր տնտեսություններն ապահովված են խոշոր մասշտաբային հողագիտական քարտեզներով: Հենց այդ քարտեզների վրա էլ հարկ է գծանշել գյուղատնտեսության համար ոչ պիտանի այնպիսի տեղամասերը, որոնք նույնիսկ հեռավոր ապագայում չի նախատեսվում մելիորացնել: Միայն այդ միջոցով հնարավոր կլինի առանց պիտանի հողաֆոնդին վնաս հասցնելու հողամասեր առանձնացնել ժողովրդական տնտեսության բազմապիսի նպատակների համար: Այդպիսի աշխատանք մեր ինստիտուտը ժամանակին կատարել է Աշտարակի շրջանի տնտեսությունների համար: Նույն բանն անհրաժեշտ է անել նաև հանրապետության մյուս շրջանների համար և խստիվ հետևել հողերի օգտագործման սահմանված կարգին:

Մենք չենք կարող մոռանալ Կարլ Մարքսի մարգարեական խոսքերն այն մասին, որ ամեն մի սերունդ պարտավոր է իր հետնորդներին թողնել ավելի հարուստ բնություն և հող, ջուր և անտառներ, քան ինքն է ստացել իր նախնիներից:

---

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆ-ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԱՐԴԻ ՁԵՎԵՐԸ

ՅՈՒ. Ս. ՈՒԴՈՒՄՅԱՆ

ԳԻՏՈՒԹՅՈՒՆ-ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ արդի փոխհարաբերությունը գիտության ինդուստրացման և արտադրության գիտականացման փուլի սկիզբն է դրել: Այսօր գիտական բազմաթիվ հաստատություններ հագեցվում են նորագույն տեխնիկայով և շատ ցուցանիշներով չեն զիջում արդյունաբերական ձեռնարկություններին: Արդյունաբերության մեջ և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում այժմ ներդրվում են այնպիսի ճշգրիտ սարքավորումներ, որոնք նախկինում միայն գիտահետազոտական հաստատությունները կարող էին ունենալ:

Գիտության և նյութական արտադրության ինտենսիվ մերձեցումը ապագայում կհանգեցնի այն բանին, որ դրանք օրգանապես կմիաձուլվեն, արտադրությունն ամբողջովին կդառնա «...փորձարարական գիտություն, նյութականորեն ստեղծագործական և առարկայորեն մարմնավորվող գիտություն» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 46, ч. 2, стр. 221):

Մինչև վերջերս մեր երկրում ավանդաբար ձևավորված գիտական կազմակերպություններն այնպիսի կառուցվածք ունեին, որն ինքնին պայմանավորում էր գիտական հաստատությունների թույլ կապը ինչպես միմյանց, այնպես էլ արտադրական ձեռնարկությունների հետ: Գիտահետազոտական ինստիտուտները, կոնստրուկտորական բյուրոներն ու արդյունաբերական ձեռնարկությունները գրեթե հարաբերականորեն անջատված կառուցվածքային օղակներ էին, որոնցից ամեն մեկն ուներ իր իրավասության շրջանակները, խնդիրներն ու ֆունկցիաները: Գիտական կազմակերպությունները մասնագիտացված էին «հետազոտություն-արտադրություն» ցիկլի տարբեր փուլերում:

Գիտահետազոտական, նախագծակոնստրուկտորական հաստատությունների և գիտության արդյունքների փորձարկմամբ ու յուրացմամբ զբաղված ձեռնարկությունների մեկուսացումը, ավելի ճիշտ՝ գիտական հաստատությունների ֆունկցիոնալ մասնագիտացումը արդեն կատարել է իր որոշակի դրական դերը: Այն ժամանակին համապատասխանել է արտադրության զարգացման պահանջներին և նպաստել կարճ ժամանակում գիտատեխնիկական առաջընթացի գլխավոր ուղղությունների և գիտական գործունեության առանձին ձևերի համար սեփական բարձր որակավորում ունեցող կադրերի ստեղծմանը: Սակայն նման մեկուսացումը այլևս չի համապատասխանում գիտատեխնիկական առաջընթացի արդի պահանջներին:

Բազմաթիվ գիտական կազմակերպություններ դեռևս անհրաժեշտ չափով չեն ներգործում արտադրական պրակտիկայի վրա, նրանց ջանքերի փոխհատուցման աստիճանը ցածր է: Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՀ-ում գործում են կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտ և էլեկտրամեխանիկայի, կաբելի արդյունաբերության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտների բաժանմունքներ: Մինչդեռ այնպիսի հզոր արտադրական միավորումներ, ինչպիսիք են «Հայէլեկտրալույսը» և «Հայէլեկտրասարքը», մնում են էլեկտրատեխնիկական ինստիտուտների տեսադաշտից դուրս, որը, իհարկե, բացասաբար է անդրա-

դառնում արտադրանքի որակի վրա: Մի այլ օրինակ. Հանրապետությունում ՍՍՀՄ քիմիական արդյունաբերության մինիստրությանը ենթակա յոթ գիտական հիմնարկություններում ու կազմակերպություններում աշխատում են մեծ թվով մարդիկ: Միաժամանակ Հայաստանի գիտությունների ակադեմիայի հինգ ինստիտուտներում և լաբորատորիաներում զբաղված է միևնույն թեքման ևս 1450 աշխատող: Սակայն այնպիսի ձեռնարկությունների, ինչպիսիք են ավտոդողերի, ռետինատեխնիկական և այլ գործարանները, հանրապետությունում ոչ մի գիտական հաստատություն չի սպասարկում: Էլեկտրատեխնիկական և քիմիական արդյունաբերության գիտական ստորաբաժանումների թեմատիկ մշակումների կեսը նախատեսված է ներդնելու հանրապետության սահմաններից դուրս: Իսկ այդ ճյուղերի նյութերի և արտադրատեսակների կեսը մշակվում է տնտեսական այլ շրջանների ինստիտուտներում:

ՀԿԿ Կենտկոմի 1979 թ. դեկտեմբերյան պլենումում նշվեց, որ հանրապետության որոշ մինիստրություններ ու գերատեսչություններ առանձնապես մեծ ջանքեր չեն թափում գիտական արդյունքները յուրացնելու համար, իսկ երբեմն էլ դրանց նկատմամբ ցուցաբերում են անտարբերություն: «Գիտություն-արտադրություն» գործող համակարգի գլխավոր թերությունն այն է, որ այն անհրաժեշտ չափով չի ապահովում տեխնիկական գաղափարի «մշակում-կիրառում» պրոցեսի անընդհատությունը: Ամենաթույլ տեղերից մեկը մնում է գիտության դեռևս անբավարար կապն արտադրության հետ: Նման հանգամանքը բնականաբար պահանջում է, որ նյութական արտադրության պահանջներին համապատասխան կատարելագործվեն գիտությունը արտադրության հետ կապող կազմակերպական ձևերը:

Արդի պայմաններում, երբ խիստ մեծացել է գիտատեխնիկական առաջընթացը ուղենշող հիմնարար հետազոտությունների դերը, կարևոր է կիրառական հետազոտությունների, մշակումների և գիտական գործունեության արդյունքների յուրացման առավել արդյունավետ ձևերի որոնումը: Այդ պրոբլեմին էր նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած «Գիտական կազմակերպությունների աշխատանքների արդյունավետության բարձրացման և ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործումն արագացնելու միջոցառումների մասին» 1968 թ. սեպտեմբերի որոշումը:

Էական է նաև ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. ընդունած «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» որոշումը: Այս վերջին որոշման մեջ հատուկ նշված է, որ նյութական արտադրության պահանջներին համապատասխան՝ գիտության հետագա զարգացման նպատակով ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն և ՍՍՀՄ պետպլանը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հետ համատեղ, պետք է մշակեն գիտատեխնիկական կարևորագույն պրոբլեմների և բնական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման պրոբլեմների լուծման ծրագրեր, հաշվի առնելով հիմնարար և կիրառական հետազոտությունների արդյունքների գործադրումը, և դրանցով որոշել աշխատանքների վերջնական նպատակները, տեխնիկատնտեսական արդյունքները, իրականացման ժամկետներն ու փուլերը:

Վերջին ժամանակաշրջանում ձևավորվել են գիտական և արտադրական գործունեության մերձեցման ու միավորման մի շարք նոր ձևեր: Դրանցից են այն խոշոր արդյունաբերական ձեռնարկություններն ու արտադրական միավորումները, որոնց կազմում կան գիտահետազոտական կազմակերպություններ, և այն կոմպլեքս գիտական հաստատությունները, որոնցում կենտրոնանում են գիտահետազոտական, նախագծակոնստրուկտորական և տեխնոլոգիական աշխատանքները: Կազմակերպվել են նաև գիտաարտադրական միավորումներ, որոնք ընդգրկում են գիտահետազոտական, նախագծակոնստրուկտորական, տեխնոլոգիական կազմակերպություններ, արդյունաբերական ձեռնարկություններ և այլն:

Գիտությունն արտադրության հետ կապող արդյունավետ ձև են վերջին



ժամանակներս կազմակերպված երկակի ենթակայությամբ աշխատող գիտահետազոտական ինստիտուտները, կոնստրուկտորական բյուրոները և փորձնական արտադրությունները, որոնք գործում են որոշակի մինիստրության կամ գերատեսչության շրջանակներում և ղեկավարվում ակադեմիական ինստիտուտների կողմից:

Շատ հեռանկարային է նաև խոշոր կոմպլեքս պրոբլեմներ լուծելու նպատակով մի քանի մինիստրությունների և գերատեսչությունների պատկանող ինստիտուտների և գործարանների համատեղ աշխատանքի կազմակերպման մեթոդը: Նման միավորումը գործում է վերջնական նպատակի սկզբունքով, ուր, որպես կանոն, առաջադրված պրոբլեմով միաժամանակ զբաղվում են մի քանի կոլեկտիվներ: Այդ կոլեկտիվների միջև մրցությունն օգնում է ավելի գործարար կերպով գտնելու լավագույն տեխնիկական լուծումները: Նման միավորումներ նպատակահարմար է ստեղծել միայն այս կամ այն բարդ կոմպլեքս պրոբլեմի լուծման համար:

Այժմ կոմպլեքս գիտական կազմակերպությունների ստեղծման ժամանակ մեկուսացված, համեմատաբար ինքնուրույն միավորումների փոխարեն առաջանում է միասնական, ավելի բարդ ինքնակարգավորող համակարգ, որն ընդգրկում է գիտահետազոտական ինստիտուտներ, նախագծային և կոնստրուկտորատեխնոլոգիական կազմակերպություններ:

ՍՄԿԿ XXV համագումարում հատկապես շեշտվեց, որ «գիտական նոր գաղափարների գործնական արմատավորումն այսօր պակաս կարևոր խնդիր չէ, քան դրանց մշակումը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 71): Անհրաժեշտ է պլանավորումն ու տնտեսական խթանումը կատարելագործել այնպես, որպեսզի պայմաններ ստեղծվեն լիովին նպաստելու նոր գաղափարների շուտափույթ իրականացմանը, արմատական փոփոխությունների ենթարկել տնտեսական գործունեության ոճն ու մեթոդները, վճռական պայքար մղել քարացածության և հնամոլության դեմ, արմատավորել իսկական հարգանք գիտության հանդեպ:

Գիտությունն արտադրությանը միացնող ամենաարդյունավետ կազմակերպությունն այժմ գիտաարտադրական միավորումն է (ԳԱՄ): Այն վերացնում է հետազոտություն-արտադրություն պրոցեսի տարբեր փուլերի կազմակերպական մեկուսացածությունը՝ հնարավորություն ընձեռելով հասնելու գիտատեխնիկական առաջընթացի անընդհատությանը և արագացմանը:

ԳԱՄ-երը, որպես արտադրական և գիտատեխնիկական առաջընթացի կազմակերպման որակապես նոր ձևեր, ժողովրդական տնտեսության մեջ ձևավորվել են ոչ վաղուց: 60-ական թվականների վերջերին ստեղծված առաջին միավորումներն արդեն դրսևորել են իրենց ակնհայտ առավելությունները, նվաճել առաջավոր բնագծեր:

Գիտաարտադրական միավորումներն ունեն բարդ կառուցվածք. այնտեղ ընդգրկված են գիտահետազոտական ինստիտուտները, նախագծային-կոնստրուկտորական-տեխնոլոգիական, փորձաարտադրական կազմակերպությունները, գիտական ծառայությունը, սերիական արտադրության ձեռնարկությունները, կադրերի պատրաստման ու վերապատրաստման կենտրոնները: Մի քանի առանձնացված սիստեմների փոխարեն այստեղ ստեղծվում է մի այնպիսի կազմակերպություն, որն ընդգրկում է գիտական հետազոտություններն ու մշակումները մինչև վերջնական արտադրական փուլին հասցնելու և տվյալ ճյուղի ձեռնարկություններում նոր տեխնիկան յուրացնելու համար անհրաժեշտ բոլոր օղակները:

Գիտաարտադրական միավորումների և գիտական բաժիններ ունեցող արտադրական միավորումների տարբերությունն այն է, որ ԳԱՄ-երը գլխավորում են ոչ թե արդյունաբերական ձեռնարկությունները, այլ գիտահետազոտական ինստիտուտները: Իսկ արտադրական միավորումը տնօրինում է արդյունաբերական ձեռնարկությունը: Կոմպլեքս գիտական հաստատություններից ԳԱՄ-երը տարբերվում են նրանով, որ փորձնական արտադրության հետ միասին իրենց կազմում ունեն սերիական արտադրություն իրականացնող ձեռնարկություն: Հետազոտություն-արտադրություն ցիկլից միասնական ճյուղային կազ-

մակերպության անցումը նշանակում է ոչ թե համեմատաբար ինքնուրույն սիստեմների պարզապես կազմակերպական միաձուլում, այլ անցում օրգանական միասնության կազմող որակական նոր վիճակի: Այստեղ արդեն նախադրյալներ են ստեղծվում լիովին իրագործելու Կ. Մարքսի այն դրույթը, ըստ որի գիտական գիտելիքները վերածվում են հասարակական հարստության ստեղծման միջոցի: Եթե արտադրության պրոցեսը դառնում է գիտության կիրառման ոլորտ, ապա գիտությունն էլ դառնում է արտադրության պրոցեսի գործոնը, այսպես ասած, ֆունկցիան (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 47, стр. 553):

ԳԱՄ-երի, ինչպես նաև գիտության և արտադրության կապի մյուս առաջավոր ձևերի ստեղծման առաջին նախադրյալը արտադրաուժերի զարգացման բարձր մակարդակի ու նյութական արտադրության օբյեկտիվ պահանջների աճն է, որը և հանգեցնում է գիտական գիտելիքների կիրառման շրջանակի ընդարձակման: Արտադրության զարգացումն անընդհատ առաջադրում է նորանոր գործնական խնդիրներ, որոնց լուծումը հնարավոր է միայն գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների կիրառմամբ:

Գիտաարտադրական միավորումների ծագման օբյեկտիվ նախադրյալներից են նաև արտադրության համրայնացումն ու մասնագիտացումը: Ի տարբերություն մանր ձեռնարկությունների, միայն խոշոր արտադրությունն է հնարավորություն ընձեռում հաջողությամբ և լայն մասշտաբներով կիրառելու գիտության ու տեխնիկայի նորագույն հասումները:

ԳԱՄ-երի առաջացման նախադրյալներից է գիտության դերի աճը, որն արտահայտվում է, մի կողմից, գիտական աշխատանքի կիրառման ոլորտի ընդարձակմամբ և գիտական կազմակերպությունների ու գիտության մեջ զբաղվածների թվի մեծացմամբ, մյուս կողմից, գիտության՝ ժամանակակից արտադրության, նյութական ու հոգևոր մշակույթի ակտիվ գործոնը դառնալով: Գիտությունը արտադրության հետ միացնող այս նոր ձևի արմատավորումը պայմանավորված է նաև աշխատավորության կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումով և բարձր որակավորում ունեցող մասնագետ կադրերի առկայությամբ:

Գիտական գիտելիքների ծավալի հարաճուն մեծացման և նրանց աճի էքստենսիվ գործոնների սահմանափակության միջև հակասության լուծման ամենակարևոր եղանակներից մեկը արտադրության մեջ գիտական գաղափարների ներդրման ժամանակամիջոցի կրճատումն է: Պրակտիկան ցույց է տալիս, որ դա լավագույն ձևով իրագործվում է գիտաարտադրական միավորումների պայմաններում: Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Օդեսայի, Երևանի և երկրի մյուս քաղաքների գիտաարտադրական միավորումների փորձը համոզիչ կերպով վկայում է, որ այդ միավորումները հնարավորություն են ընձեռում նոր տեխնիկայի ստեղծման ժամանակը 2—2,5 անգամ կրճատելու և գիտական գաղափարի արտադրական կիրառման ժամկետը հինգ տարուց չգերազանցելու: Հատկանշական է, որ Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում Նաիրիտ—18 լատեքսը, որը լավ հումք է արհեստական կաշի ստանալու համար, կյանքի ուղեգիր ստացավ ընդամենը մեկ ամսում: Եվ դա այն դեպքում, երբ գիտական հետազոտությունների արդյունքների լայն արտադրական կիրառումը սովորական պայմաններում տևում է 7—10 տարի:

Գիտական գաղափարների արտադրական կիրառման վրա ծախսվող ժամանակի տնտեսումը գործնականում իրականանում է միջոցառումների կոմպլեքս սիստեմով, որը ենթադրում է միավորման ինչպես գիտահետազոտական աշխատանքների, այնպես էլ փորձնական արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կազմակերպումն ու կառավարումը, մշակումների արդյունքների ներդրումը մյուս ձեռնարկություններում: Պրակտիկան ցույց է տալիս, որ գիտական կազմակերպությունների ինչպես միմյանցից, այնպես էլ արտադրությունից կտրված լինելը պատճառ են դառնում ժամանակի կորուստների և երկարացնում նոր տեխնիկայի յուրացման ժամկետը:

Ժամանակի կորուստը հիմնականում տեղի է ունենում մշակումները կազ-



մակերպության թեմատիկ պլան մտցնելիս, բազմաքանակ տեխնիկական փաստաթղթերը համաձայնեցնելիս, փորձարկման ակտերն ու հաշվետվությունները հաստատելիս և այլ կազմակերպություններից ստացված ինֆորմացիան ստուգելիս ու ճշգրտելիս: Քիչ չեն դեպքերը, երբ համաձայնեցումների վրա ծախսվող ժամանակը գրեթե երկու անգամ գերազանցում է «զուտ» հետազոտության վրա օգտագործվող ժամանակը (տե՛ս Пути повышения эффективности научного труда, ч. 1, Новосибирск, 1966, стр. 11): Ունենալով հետազոտություն-արտադրություն պրոցեսն իրականացնող բոլոր անհրաժեշտ բաժինները, միավորումները հնարավորություն են ընձեռում ոչ միայն բացառել կամ նվազագույնի հասցնել «համաձայնեցումների» հետ կապված ժամանակի կորուստը, այլև նշանակալիորեն կրճատել բուն հետազոտական պրոցեսի ու մշակումների ներդրման տևողությունը: Դա կատարվում է ի հաշիվ ժամանակի մեջ ցիկլի առանձին փուլերի (հետազոտություն, մշակում, կոնստրուկտորական և նախագծային աշխատանքներ, արտադրատեսակի պատրաստում) համատեղման: Գործնականում նորարարությանը մասնակցում են գիտնականները, կոնստրուկտորները, նախագծողները, տեխնոլոգները և արտադրողները:

Գիտաարտադրական միավորումներում ընդհանրապես բացառվում կամ նվազագույնի են հասցվում փաստաթղթերի կարգավորման աշխատանքները, որոնք գիտական կազմակերպությունների ու արտադրության բաժանվածության պայմաններում դառնում են անխուսափելի:

ԳԱՄ-երը մեծ հնարավորություններ ունեն ո՛չ միայն նոր արտադրանքի ստեղծումն արագացնելու, այլև թողարկվող արտադրատեսակների որակի անընդհատ բարելավման գործում: Արտադրանքի որակը բարդ ու կոմպլեքս ցուցանիշ է և բնորոշվում է ո՛չ միայն հուսալիությամբ, երկարակեցությամբ ու արտաքին տեսքով, այլև՝ կոնստրուկցիաների, տեխնոլոգիական պրոցեսների տեխնիկական կատարելության և աշխատանքի արտադրողականության ու արտադրության կազմակերպման մակարդակով: Այդ ցուցանիշով է որոշվում աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի աստիճանը, արտադրության յուրաքանչյուր աշխատողի և ամբողջ կոլեկտիվի պատասխանատվության չափը: Վերջապես, արտադրանքի որակը մի չափանիշ է, որը ցույց է տալիս վերջնական արդյունքի մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների մարմնավորման աստիճանը: Դա նաև գիտության և արտադրության աշխատողների՝ իրենց աշխատանքից գոհ լինելու ցուցանիշ է:

Հատկանշական է, որ գիտաարտադրական միավորումներում, չնայած արտադրանքի ստեղծման վրա ծախսվող ժամանակի կրճատմանը, թողարկվող արտադրանքի որակը որոշակիորեն բարձրանում է: Այդ արտադրանքը հաճախ ո՛չ միայն չի զիջում արտասահմանյան լավագույն նմուշներին, այլև գերազանցում է հայտնի ֆիրմաների արտադրանքի մակարդակը: Նոր նմուշների սերիական արտադրությունը տնտեսական մեծ օգուտ է տալիս: Այսպես, օրինակ, 1977 թվականի սկզբներին Երևանում նախկին պոլիմերների համամիութենական գիտահետազոտական և նախագծային ինստիտուտի, Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի և ինստիտուտի փորձնական գործարանի բազայի վրա հիմնված «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումը տարեվերջին արդեն տարվա պլանը կատարել էր տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով: Որակի պետական նշանով թողարկվող արտադրատեսակները 1977 թ. կազմում էին համախառն արտադրանքի 23,7 տոկոսը, 1978 թ. 28,2, իսկ 1979 թ. հասան 34,3 տոկոսի: «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումն իր բարձրորակ արտադրատեսակներն է ուղարկում ՍՍՀՄ 2500-ից ավելի ձեռնարկությունների:

Անհրաժեշտ գիտահետազոտական և արտադրական բազա ունեցող ԳԱՄ-երը կարող են ո՛չ միայն կարճ ժամանակում ստեղծել և յուրացնել նոր արտադրանք, այլև թողարկվող արտադրանքի որակի բարելավման ու հեռանկարային արտադրատեսակների ստեղծման համար ծավալել գիտահետազոտական աշխատանքներ:

*ԳԱՄ-երի կազմակերպումը նպաստավոր պայմաններ է ապահովում նաև գիտատեխնիկական և արտադրական գործունեության միասնական կառավարման համար: Գիտաարտադրական միավորումները մեծ հնարավորություններ ունեն անկաշկանդ ու հմտորեն օգտագործելու նյութական ու տեխնիկական միջոցները: Դրանք կարող են ստեղծել ստեղծագործական այնպիսի բրիգադներ, որոնցում ընդգրկվեն հետազոտողներ, մշակողներ, կոնստրուկտորներ, նախագծողներ, տեխնոլոգներ ու արդյունաբերական ձեռնարկությունների մասնագետներ: Միաժամանակ գիտաարտադրական միավորումները հնարավորություն ունեն օգտագործելու լաբորատորիաների ավելի ճկուն ու դինամիկ կառուցվածքներ: ԳԱՄ-ը պայմաններ է ստեղծում ըստ փուլերի հսկելու հետազոտության տեխնիկական մակարդակը, արդյունավետությունն ու նպատակահարմարությունը: Մեծ նշանակություն ունի էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգնությամբ միավորման գիտական մշակումների կոմպլեքս պլանավորումը:*

*ԳԱՄ-երի այժմյան կառուցվածքը դեռևս հեռու է ամբողջական ու կատարյալ լինելուց և տևական ժամանակ կպահանջվի, որ գիտություն-արտադրություն կապի կազմակերպման այդ ձևը կիրառվի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում:*

*Գիտություն-արտադրություն կապի կազմակերպման նոր ձևերի և հատկապես գիտաարտադրական միավորումների կուտակած փորձը հնարավորություն է ընձեռում եզրակացնելու, որ դրանք ընդհանուր առմամբ իրենց ամբողջ առկա վիճակով և հատկապես պոտենցիալ հնարավորություններով համապատասխանում են զարգացած սոցիալիստական հասարակության և հատկապես նրա նյութական արտադրության արդի մակարդակին, ինչպես նաև վերջիններիս հետագա կատարելագործման և աստիճանաբար կոմունիստականի վերաճման պահանջներին: Կուսակցությունը պահանջում է հետագայում ևս, հատկապես կապված տասնմեկերորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական պլանների մշակման հետ, անընդհատ կատարելագործել գիտություն-արտադրություն կապի կազմակերպական առկա ձևերը և ստեղծել նորերը: Այստեղ չպետք է անտեսել այն հանգամանքը, որ ճիշտ է, գիտություն-արտադրություն համակարգի կազմակերպական ձևերի փոփոխությունները օբյեկտիվ երևույթ են, պայմանավորված են հասարակության և հատկապես նյութական արտադրության պահանջներով, գիտության ներքին տրամաբանությամբ, սակայն լավագույն կառուցվածքն ինքնին, մեխանիկորեն չի ստեղծվում, անհրաժեշտ է գիտականորեն հիմնավորված քաղաքականություն այս ասպարեզում: Անհրաժեշտ է, ելնելով կոնկրետ պահանջներից, ճիշտ տեղաբաշխել գիտական ուժերը, ստեղծել գիտություն-արտադրություն կապի այնպիսի կազմակերպական ձևեր, որոնք համապատասխանեն և խթանեն հասարակական առաջընթացը, գիտություն-արտադրություն կապը:*

---

# ՍԱՐԱԼԱՆՋԻ ՃԵՐՄԱԿ ԳՅՈՒՂԸ

## ԵՐԲ ԱՅԳՆ Է ԲԱՑՎՈՒՄ

Գյուղը նպա՛րտ-նպա՛րտ բազմել է Լոռվա սարահարթը արևմուտքից շրջափակող Ջավախքի գեղանիստ ու երկնամերձ լեռների աբևանձայաց լանջերին, ծավալվել լանջերն ի վեր ու լանջերն ի վար: Թվում է՝ վաղորդյան արևը նախ այս գյուղին է ժպտում և նոր միայն կենարար շողերը սփռում սարահարթով մեկ: Բնակավայրից, ինչպես ժապավեն, ճամփաներ են ձգվում չորս դին, ձուլվում սարալանջերի թավիշ կանաչին ու սարահարթի դաշտերին: Փողոցները՝ հին, թե նոր, երիզված են վարդագույն տուֆաքարից կերտված առանձնատներով, որոնք օղակված են պտղատու ծառերի գողտրիկ պարտեզներով: Միհարկանիները սակավ են: Իշխում են երկհարկանի տները: Հասարակական խոշոր շինությունները լրացնում, ամբողջացնում են բնապատկերի գեղեցկությունը:

Այգը բացվելուն պես արևի հրաշեկ շողերի ներքո փայլփլում են ճերմակ տանիքները: Համատարած, առինքնող ճերմակությունը տեղ-տեղ խաթարում է կարմիրը: Թվում է՝ ձյունաթույր աղավնիների մի ստվար երամ իջել է սարալանջին և, ուր որ է, պիտի թևաբախի ու թռչի...

## ՄԻ ՔԻՉ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Մեծավան է կոչվում նախկին Ցախնազարը: Նոր անունը կրելու իրավունքը նվաճել է երեք տարի առաջ: Ոչ միայն Կալինինոյի շրջանի, այլև հանրապետության գյուղական ամենամեծ բնակավայրն է Մեծավանը: Դեկտեմբերի 15-ին այստեղ գրանցվեց 1980-ի 164-րդ ծնունդը, ու Կոմիտաս և Անժելա Խոռյանների Արթուր նորամանուկը գյուղի բնակիչների թիվը հասցրեց 6884-ի:

Մեծավանի պատմության ակունքները հասնում են անցած դարի խորքերը: Նրա այսօրվա սերունդը ժառանգորդն է պարսից հրոսակներից մազապուրծ ալաշկերտցի տարագիր ու տարաբախտ հայերի մի բեկորի: Լսեր առնելով հայերի նկատմամբ ռուսաց պետության բարյացակամ վերաբերմունքի մասին, գաղթել են նրանք Շիրակ, ապա՝ 1821-ին հանգրվանել Լոռվա սարահարթի տարբեր վայրերում: Վաթսուն ընտանիք «խարիսխ» է ձգել Ղոշաքիլիսայում, շինել գետնափոր, հողածածկ խրճիթներ, շարունակել գոյատևել, հաստատել ու պահպանել ինքնությունը:

Կաթոլիկ վերաբնակները գյուղը կոչել են Ցախնազար՝ մեծահարուստ Մելիք Ցախնազարի անունով, որի ամառանոցն է եղել նրա տարածքը ինչ-որ ժամանակ— այսպես է վկայել տարեգիրը՝ հայտնի ազգագրագետ ու բանահավաք Երվանդ Լալայանը «Ազգագրական հանդես»-ում:

Մերձակա հողերն այն ժամանակ պատկանել են վրաց Օրբելյանների փեսա Լեւչուկի կըրտսեր դստերը՝ Նադեժդա Ֆիրսովային: Կալվածատիրուհին ապրել է Վորոնեժի նահանգում ու հեռու հեռվից վայելել ալաշկերտցի տարագիրների քրտինքով շաղախված բերքն ու բարիքը: Իսկ հող սիրող ու մշակող մարդիկ մնացել են հողին կարոտ, քարոտ այդ երկրում բնակվել հողաշեն հյուղակներում ու հազիվհազ հայթայթել հացը հանապազօրյա: Երեխաների բերանից կտրել, փող են ետ գցել ու տասնամյակներ անց միայն կարողացել գնել կալվածատիրական հողերը, սկսել քիչ թե շատ տանելի կյանք վարել:

Եվ տարիներ շարունակ գյուղը խեղճ-խեղճ, գետնածավալ իր խրճիթներով, շարունակել է ծվարել սարի վերջին լանջին, վանք ու մատուռին ապավինած չքավոր գյուղացին սոսկ երազել է երջանիկ գալիքի մասին: Նրա խոհերն ու ձգտումներն է արտացոլել, իր ժողովրդի լուսավոր ապագան է երգել ժամանակի ուսյալ և առաջադեմ մտավորական, տեղացի վաղամեռիկ բանաստեղծ Հակոբ Այվազյանը.

*Ու դուն պիտ կանգնես հպարտ, հաղթական,*
*Վայրագ թշնամու լուծը խորտակած,*
*Օ՜հ, պիտի թնդա երգ մը դյութական՝*
*Փառք քեզ, Հայրենիք, փառք քեզ անսասան...*

...Եվ դյութական երգը թնդացել, բանաստեղծի ու շինականի բաղձանքը իրողություն է դարձել Հոկտեմբերյան աշխարհաշեն հեղափոխությամբ ու Նոյեմբերյան հրաբորբ այգաբացով...

## ՈՒ ՇԵՆԱՑԱՎ ԳՅՈՒՂԸ

«Բոլշևիկները գան, ճակատները նամբուրենք»— փափագել են գյուղի չքավորները, որ հույս ու հավատով լսում էին բանակից տուն դարձած զինվորներին, Վորոնցովկայից (այժմ՝ Կալինինո) և Ալավերդուց եկած բոլշևիկներին: Եվ 1921-ի փետրվարյան մի ցուրտ օր գալիս են բոլշևիկները ու ջերմացնում մարդկանց սրտերը: Աշխատավորությունը սրտանց ողջունում է կարմիր մարտիկների մուտքը, ցնծությամբ ընդունում սովետական կարգերի հաստատման լուրը:

Նոր հեռանկարներ են բացվում գյուղի վերելքի և գյուղացու բարգավաճ կյանքի համար...

Մեծավանը թշվառությունից զատ այլ բան չէր ժառանգել հնից: Ութամյա դպրոցի դիրեկտոր Պողոս Հարությունյանը ետ է տալիս անահիշողության կծիկը. «Քասանական թվականների կեսերին էր. գյուղից վերև, Քոի դոշ սարի լանջին երեխաներով հորթեր ու գառներ էինք արածեցնում ու ամեն օր հաշվում կղմինդրածածկ տները. ընդամենը յոթն էին: Հաշվում էինք նաև ծառերը. հինգը՝ վանքի բակում, մի քանիսը՝ Նահապետանց Մարգարի, երկուսը՝ Ջանունցանց Ստեփանի, բոլորն էլ՝ ոչ պտղատու»:

Իսկ 1922-ից ՍՄԿԿ անդամ, անհատական կենսաթոշակառու Սուրեն Սարգսյանը, որ 1930-ին կուսակցության կոչով մեկնել էր Ծաղնաղար, հիշում է. «Գետինը փորել էին, տուն շինել. պատերը՝ հող, հատակը՝ հող, ծածկը՝ հող, տավարը մի կողմում էր, իրենք՝ մյուս, քնում էին խսիրների վրա»:

...Գլորվում են տարիները, երկիրը շտկում է մեջքը, կարգի բերում քայքայված տնտեսությունը, առաջընթացի հաստատուն քայլեր անում: Ընդհանուր վերելքին համընթաց՝ տարի առ տարի ոտքի է կանգնում նաև Ծաղնաղարը, հառնում են քարակերտ առանձնատները: Տարիների հետ, ինչպես երազ, չքանում են հողաշեն խղճուկ խրճիթները, դառնում վաղնջական օրերի մոռացվող հուշ: Մեծ հայրենականից հետո շենացման նոր շարժում է ծավալվում և, որպես նորույթ, երևան են գալիս տուֆակերտ երկհարկանիները:

Հինը տեղի է տալիս: Հիմա հին է համարվում ավելի վաղ կառուցված միհարկանին: Մեծավանցին քանդում է այն, կառուցում նորը՝ ավելի ժամանակակից ու գեղեցիկ: Պետությունը վարկ է տրամադրում, պետտնտեսությունը՝ փոխադրամիջոցներ, խնայված գումարներ էլ քիչ չունեն:

Եվ հիմա գյուղսովետի գործկոմի նախագահ Խաչիկ Վարդանյանը, գյուղի շենացմանը հետամուտ մի մարդ, ասում է. «Ամեն տարի առնվազն քսան նոր առանձնատուն է կառուցվում, մի այդքան էլ՝ վերակառուցվում. գյուղը նորանում է, փոխում իր դեմքը»: Նայում ես, հիանում անասնապահ Ստեփան Մարկոսյանի, բրիգադավար Վոլոդյա Ղանդիլյանի, մեխանիզատոր Ծալիկո Քոչարյանի և ուրիշների տուֆակերտ երկհարկանի, արդի բոլոր հարմարություններով օժտված առանձնատներով: Սենյակներում՝ ժամանակակից կահկարասի, բակերում՝ անձնական օգտագործման ավտոմեքենա... Նրանց պապերը երազել անգամ չէին կարող այս ամենի մասին:

Նորը նաև մենատներն օղակած պարտեզայգիներն են: Ոչ հեռու անցյալում մարդիկ տակավին այն համոզմունքն ունեին, թե Լոռվա այս բարձրադիր ու ցրտաշունչ վայրում պտղատու ծառ չի անի, և ոչ ոք չի խիզախել այդպիսին տնկել: Այդ մտավախությունը հաղթահարվում է երեսնականի վերջերին, երբ չորս ընտանիք խախտում է հնավանդ կարգը և մի քանի պտղատու ծառ տնկում: Ինչպես տուն կառուցելը, ծառ տնկելը ևս դառնում է սովորույթ, սրտամոտ, հարարազատ գործ: Արդեն ավանդույթ է. մեծավանցին կառուցե՞ց իր մենատունը, ուրեմն տնամերձը պիտի պատի պտղատու ծառերով: Եվ գյուղը գարնանը ու ամռանը առինքնում է իր կանաչ հանդերձով, աշնանը՝ խնձորի ու տանձի անուշ բուրմունքով: Աչք են շոյում և մերձակա բլուրներին փռված սոճու, եղևնու անտառահատվածները... Կաղնին, վայրի խնձորենին, տանձենին ու այլ ծառատեսակներ ևս մշտական բնակություն են հաստատել ծառի համար անմատչելի թվացող լեռնաբլուրների ուսերին ու լանջերին: Երբեմնի ծառազուրկ լեռնային գյուղի շրջակայքում այսօր 1500 հեկտարանոց անտառն է խշշում...

Եվ ժամանակի հետ նորանում, շենանում է հին անցյալ ունեցող ու իր նոր կենսագրությունը հյուսող գյուղը, մեծ ու լավ գործերով արժանի դառնում Մեծավան անվանը: Այնպե՞ս անկեղծ է գյուղսովետի գործկոմի նախագահի անսքող հպարտությունը սոցիալ-կուլտուրական նվաճումների համար: Պարզ թվարկումն իսկ մեծ խորհուրդ ունի. կրթության ու մշակույթի օջախների լայն ցանց, բնակչության սպասարկման մեկ տասնյակից ավելի օբյեկտներ, 50 մահճակալանոց հիվանդանոց, պոլիկլինիկա և դեղատուն, հինգ բժիշկ ու 40 միջին բուժաշխատող, 500 համարանոց ավտոմատ հեռախոսակայան ու կապի բաժանմունք, մի քանի միլիոն ռուբլու ավանդ ունեցող խնայդրամարկղ, ավտոբուսային մշտական կապ շրջկենտրոնի ու մայրաքաղաքի հետ...



Նախագահն ավարտում է, ու ես համոզված եմ, որ նա էլի շատ բաներ ունի հայտնելու, քանզի թվարկածը չի սպառում սոցիալ-կուլտուրական նվաճումների լրիվ ցանկը...

Այո՛, գյուղն այնպես է վերափոխվել ու շենացել, որ հայրենի ոստանից տևական ժամանակով բացակայած մարդը չի հավատում աչքերին: Սովխոզի կուսկոմիտեի քարտուղար Հակոբ Մելքոնյանը պատմում է. «Մեկը երեսուն տարի առաջ դուրս էր եկել գյուղից այլևս այստեղ չէր եղել: Մի քանի տարի առաջ, եկավ, տեսավ ու բացականչեց՝ սա հո հրաշք է: Այնքան անմիջական ու անկեղծ ասաց, որ ամենքս ծիծաղեցինք: Դե՛, մենք զարմանալու հարկ չունենք, հրաշքը կատարվել է մեր աչքի առաջ, օր-օրի, աննկատելի...»:

### ԱՄԵՆԱՄԵԾ ՀՐԱՇՔԸ

Իրավ, գյուղի կերպափոխումը հպարտությամբ է համակում նրա բնակիչներին, զարմացնում ու հիացնում հյուրերին: Իսկական հրաշքը, սակայն, կատարվել է մարդկանց հոգևոր աշխարհում, կենցաղում, կենսամակարդակի, ապրելակերպի ու հոգեբանության մեջ:

Վերափոխված ու վերափոխող այդ մարդը երբեմնի զարկված ու զրկված, ճնշված ու նըվաստացված ալաշկերտցիների ներկա, նոր կյանք կառուցող երջանիկ ու հպարտ սերունդն է, իր բախտի տերը դարձած այսօրվա մեծավանցին:

Փորձիր հանրագումարի բերել հասումները, ծանոթանալ բանվորի ու մտավորականի հայրենանվեր գործերին, պեղել գյուղի պատմության էջերը, և հրաշք-նվաճումները առավել ակնհայտ կլինեն: Եվ այդ համակարգում առաջին հերթին՝ կրթությունը, որն ամեն լավի ու առաջադիմականի ակունքն է, մշտաբուխ աղբյուրը:

Ալաշկերտցի վերաբնակները, անտարակույս, միշտ էլ մտածել են իրենց մանկանց կրթության մասին: Բայց ի՞նչ կարող էին անել այն տարիներին: Գյուղի հիմնադրումից կես դար անց միայն Զոբանանց տեր Պողոսն իր խրճիթում վարժարան է բացում և 20—30 աշակերտների հետ պարապում ձմռան ամիսներին: Անցնում է ևս մի քանի տասնամյակ և, ինչպես վկայում է Սարգիս Տեր-Յազիչյան տարեգիրը, տարեկան մեկի տուն էին վարձում դպրոցի համար: Բայց, ահա, ավելի ուշ ժամանակի «ուսումնական» Գրիգոր Սոլոյանը վկայում է. «Աշնանը, երբ տավարը սարից բերում ու գոմերում կապում էինք, դպրոցը բացվում էր, իսկ երբ գարունը բացվում ու տավարը արոտի էինք հանում, դպրոցը փակվում էր»: Հիշում է նաև, որ գյուղացիները 1914-ին փող հավաքեցին, հույն որմնադիրներ հրավիրեցին ու դպրոցի շենքի պատերը շարել տվեցին, սակայն շինարարությունն ավարտվեց միայն... քսան տարի հետո:

Հիմա չորս դպրոց ունի Մեծավանը: Եկող տարի գյուղը կունենա 1130 աշակերտական տեղով երրորդ միջնակարգը, որի շենքը կառուցվում է: Դա կլինի դպրոց-համալիր՝ բազմապիսի ու լավ հարմարություններով: Երկու ութամյա դպրոցները մի տեսակ ռեզերվ են ցերեկային ու երեկոյան բաներիտ միջնակարգերի համար: Երեսունյոթ տարվա պատմություն ունի բաներիտը: Օրը հալվում է, ու ավելի քան 130 վաստակած երիտասարդներ դառնում են գործից, շտապում դասի, լրացնում ուսման պակասը: Բեղմնավոր է դպրոցի մանկավարժական կոլեկտիվի գործունեությունը, որի գնահատականն է ՍՍՀՄ լուսավորության մինիստրության, ՀամԼԿԵՄ Կենտկոմի և ՀԱՄԿԽ-ի դիպլոմը:

Հիմնական կրթօջախը, իհարկե, ցերեկային միջնակարգն է՝ 1968-ին կառուցված իր ընդարձակ լայնածավալ շենքով, օժանդակ կառույցներով, մարզադահլիճով ու մարզադաշտով, ուսումնական կաբինետներով ու լաբորատորիաներով, ուսումնափորձնական հողամասով ու գյուղատնտեսական տեխնիկայի «հավաքակայանով»: Տրակտոր ու կոմբայն վարել են սովորում բարձրդասարանցիներն իրենց իսկ դպրոցում, ծանոթանում ցանքի, մշակության ու բերքահավաքի մեքենաներին: Եվ մասնագիտական կողմնորոշման լավ դրվածքի շնորհիվ նրանցից շատերը հասունության վկայականով անդամագրվում են մեխանիզատորների կոլեկտիվին, աշխատանքային կենսագրությունը հյուսում դաշտում ու ֆերմայում: Պետտնտեսության մասնագետները, գյուղի ղեկավարները ևս դպրոցի նախկին սաներն են, որ բուհ են ավարտել ու դարձել իրենց ծննդավայրը, լծվել նրա ծաղկման հայրենաշեն գործին:

Անցած դարի վերջերին Սարգիս Յազիչյան տարեգիրը դառնացած տողեր է հանձնել թըղթին. «Կանոնավոր ուսուցիչ չէինք կարող վարձել, վասն որոյ կաղ ի կաղ և անկանոն առաջ կերթար մեր ուսումնարանը»: Մինչդեռ հիմա նույն գյուղում մոտ 100 ուսուցիչ սիրով ու նվիրվածությամբ կրթում է նոր սերնդի միտքը, նրան նախապատրաստում մեծ կյանքի համար:

Զրուցում եմ նրանցից մեկի՝ Քրիստինե Մելքոնյանի հետ: Տակավին տասնյոթամյա աղջնակ էր, որ 1940-ին ավարտական վկայական ստացավ ու երկու ամիս անց սկսեց նույն դպրոցում մեսրոպյան տառերն ուսուցանել մանուկներին: Վեց տարի անց միայն ոտք դրեց բարձրագույնի շեմին: Ժպտում է. «Իմ աշա-

Կուսակցական շինարարության
տեսություն և պրակտիկա

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀՈՒՍԱԼԻ ՀԵՆԱՐԱՆԸ

**Մ. Ռ. ԿՆՅԱԶՅԱՆ**
ՀԿԿ Երևանի քաղկոմի կազմբաժնի վարիչ

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ հաջողության վճռական պայմանը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, աշխատանքի լենինյան ոճն է, որը մարմնավորում է այդ աշխատանքի՝ մեր կուսակցության ողջ հեղափոխական փորձով ստուգված ու հաստատված սկզբունքներն ու մեթոդները։

Աշխատանքի լենինյան ոճը լայն և բազմանշանակ հասկացություն է, որը ներառում է մի ամբողջ շարք որակական բնութագրեր ու պահանջներ։ Դրանց մեջ ամենակարևորներն են՝ ղեկավարման կոլեկտիվությունը, մասսաների հետ օրգանական կապը, կուսակցական ու պետական քաղաքականության մշակման և իրականացման գործում նրանց ակտիվության բարձրացումը։

Կենսագործելով կուսակցության որոշումները, կուսակցական շինարարության հարցերի վերաբերյալ ընկ. Լ. Ի. Բրեժնևի ցուցումները՝ ՀԿԿ Երևանի քաղկոմն ու շրջկոմները զարգացնում են ներկուսակցական դեմոկրատիան և այդ աշխատանքում մեծ ուշադրություն հատկացնում կուսակցական ակտիվի ձևավորմանն ու աճին, նրա որակական կազմի բարելավմանը։ Կուսակցական ակտիվը, որը ներառում է քաղաքական և կազմակերպչական աշխատանք ծավալող կոմունիստներին, կուսակցության քաղաքականության ու նրա որոշումների իրականացման վճռական ուժն է և հսկայական դեր է խաղում կուսակցական գործունեության բոլոր ոլորտներում, կոմունիստական շինարարության պրոցեսի ղեկավարման ասպարեզում։

Կուսակցական ակտիվը քաղկոմի և շրջկոմների հուսալի հենարանն է։ Իրենց առջև ծառացած խնդիրները լուծելիս՝ կուսակցական մարմինները առաջին հերթին դիմում են ակտիվին, նրա օգնությամբ մոբիլիզացնում կոմունիստներին և անկուսակցականների լայն մասսաներին՝ տնտեսական և կուլտուրական շինարարության պլանները կատարելու համար։ Առանց կուսակցական ակտիվիստներին ներգրավելու իր ամենօրյա աշխատանքում, առանց նրանց գիտելիքներն ու փորձն օգտագործելու կուսակցական ոչ մի մարմին չի կարող անհրաժեշտ ձևով ղեկավարել էկոնոմիկայի և կուլտուրայի տարբեր ճյուղերը, մեր հասարակության բազմաթևակ արտադրական, հասարակական ու հոգևոր կյանքը։ Ելնելով դրանից՝ քաղաքային կուսկազմակերպությունը կուսակցական ակտիվի հետ տարվող աշխատանքը դարձրել է իր առաջնահերթ խնդիրներից ու հիմնական անելիքներից մեկը։

Կուսակցական ակտիվի գլխավոր օղակը ընտրովի ակտիվն է։ Այդ կատեգորիային են պատկանում այն կոմունիստները, որոնք ընտրված են բոլոր աստիճանների կուսակցական մարմիններում։ Քաղաքի ընտրովի ակտիվը ներառում է 15,5 հազար կոմունիստների։ Ընդ որում, դրանցից 3140-ը սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարներ են, 1932-ը՝



կուսխմբերի կազմակերպիչներ, 906-ը ընտրված են քաղաքային ու շրջանային կոմիտեների և համապատասխան վերստուգիչ հանձնաժողովների կազմում։

Քաղաքի կուսակցական մարմիններում ընտրված կոմունիստների վերաբերյալ տեղեկությունների օբյեկտիվ վերլուծությունը ցույց է տալիս, որ յուրաքանչյուր հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում բարելավվում է ընտրովի ակտիվի որակական կազմը։ Քաղաքային և շրջանային կոմիտեների կազմում լայնորեն ներկայացված են կուսակցական ապարատի աշխատողները, կուսբյուրոների ու կոմիտեների ազատված քարտուղարները։ Մեծ տոկոս է կազմում նաև կուսակցական ընտրովի ակտիվի մի այլ կարևոր կատեգորիան՝ սովետական և տնտեսական ղեկավար կադրերը։ Ակտիվի զգալի մասը, հատկապես սկզբնական կուսկազմակերպություններում, կազմում են ինժեներատեխնիկական աշխատողները և ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի մասնագետները։ Կուսակցական գործնական աշխատանքում նրանց ներգրավումը հնարավորություն է ընձեռում կուսկոմիտեին կամ բյուրոյին, օգտագործելով նրանց փորձն ու գիտելիքները, ավելի որակյալ ձևով լուծել տնտեսական գործունեության հարցերը։

Քաղաքային կուսկազմակերպությունում գիտնական կոմունիստների թվի ավելացումն անդրադարձել է նաև ընտրովի կուսակցական ակտիվի կազմի վրա։ Կուսակցական ակտիվիստների թվում կան բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտահետազոտական և նախագծային ինստիտուտների շատ կոմունիստներ։ Միայն քաղկոմի կազմում ընտրված են երկու ակադեմիկոս, գիտությունների 6 դոկտորներ և 16 թեկնածուներ, ընտրովի կուսակցական ակտիվի կազմում գիտնականների թիվն աճում է հատկապես սկզբնական կուսկազմակերպություններում։ Դա մասնավորապես վերաբերում է գիտահետազոտական ինստիտուտների և բուհերի կազմակերպություններին։ Նրանց կոմիտեների ու բյուրոների անդամների ավելի քան 50 տոկոսն ունի գիտական աստիճան,. շատերը գիտական շրջաններում մեծ հեղինակություն վայելող գիտնականներ են։

Կուսակցական ակտիվի գործունեության մեջ հատուկ և հարաճուն դեր են խաղում բանվոր ու կոլտնտեսական կոմունիստները։ Կուսակցությունը կարևոր նշանակություն է տալիս ղեկավար աշխատանքում նրանց ներգրավմանը։ «Բանվորներին կոմիտեների մեջ մտցնելը,— ասել է Վ. Ի. Լենինը,— ոչ միայն մանկավարժական, այլև քաղաքական խնդիր է։ Բանվորները դասակարգային բնազդ ունեն, և քաղաքական մի փոքր հմտություն ունենալով, բանվորները բավական շուտ են դառնում տոկուն սոցիալ-դեմոկրատներ» (ԵԺ, հ. 10, էջ 195)։ Այդ դրույթն այժմեական է նաև մեր օրերում։ Բնութագրելով կուսակցության աճը, նրա որակական կազմը բարելավելու նպատակով տարվող աշխատանքը՝ ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում ասաց. «Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ կոմունիստական կուսակցությունը դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցություն, նա բնավ չի կորցնում իր դասակարգային բնույթը։ Իր էությամբ ՍՄԿԿ-ն եղել է և մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 93)։

Հասարակության կյանքում բանվոր դասակարգի առաջատար դերը օրինաչափորեն արտացոլվում է այն բանում, որ կուսակցության շարքերն ընդունվողների մեջ նրա ներկայացուցիչները կազմում են ճնշող մեծամասնություն։ Բանվորների կուսակցական խավը էապես աճել է Երևանի քաղաքային կուսկազմակերպությունում և, հասկանալի է, այդ հանգամանքը պետք է իր արտացոլումը գտներ նաև քաղաքի ընտրովի կուսակցական ակտիվի կազմում։ Այժմ շրջկոմների ու շրջանային վերստուգիչ հանձնաժողովների կազմում բանվորների ու կոլտնտեսականների թիվը հասել է 35,9, իսկ քաղկոմի կազմում՝ 37,9 տոկոսի։ Սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպությունների կոմիտեների ու բյուրոների անդամների մեջ նրանք համապատասխանաբար կազմում են 25,3 և 40 տոկոսը։ Առանձին շրջկոմներում նրանց տոկոսն ավելի բարձր է։ Այսպես, Օրջոնիկիձեի շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարությունում և տրանսպորտում կուսբյուրոների և կոմիտեների անդամների 68,1 տոկոսը, 26 կոմիսարների անվան շրջանում՝ 65,3, Շահում-

յանի շրջանում՝ 54,6 տոկոսը բանվորներ են: Միջոցներ են ձեռնարկվում սկզբ-
նական կուսկազմակերպություններում բանվոր-քարտուղարների թիվը մշտա-
պես ավելացնելու համար: Այսպես, մինչև ՍՄԿԿ XXV համագումարը նրանցից
97-ն էր բանվոր, իսկ այժմ՝ 129-ը:

Ներկայումս քաղաքի կուսակցական ակտիվը բաղկացած է կրթված, տե-
սականորեն պատրաստված կոմունիստներից: Ընտրովի ակտիվի մեջ իրենց
կրթության բարձր մակարդակով առանձնանում են սկզբնական կազմակեր-
պությունների քարտուղարները: Նրանցից 75 տոկոսն ունի բարձրագույն և թերի
բարձրագույն, 24 տոկոսը՝ միջնակարգ և միջնակարգ-մասնագիտական կրթու-
թյուն: Կրթական այսպիսի բարձր մակարդակն արդյունք է քաղկոմի ու շրջկոմ-
ների կազմակերպական գործունեության որոշակի գծի՝ կազմակերպությունների
ղեկավարներ առաջադրել պատրաստված կոմունիստների:

Դեռևս 1975 թվականի օգոստոսին քաղկոմի պլենումում նշվեց, որ կուս-
կազմակերպությունների քարտուղարների կազմում կան ոչ քիչ թվով թերի միջ-
նակարգ կամ տարրական կրթությամբ մարդիկ: Նրանց թիվը հատկապես շատ
էր 26 կոմիսարների անվան, Օրջոնիկիձեի և Շահումյանի շրջաններում: Ելնելով
դրանից՝ քաղկոմի պլենումը, ապա և բյուրոն կուսշրջկոմների առջև խնդիր
դրեցին՝ հասնել այն բանին, որ յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակեր-
պություն գլխավորի քաղաքականապես հասուն, կրթված կոմունիստ, մասսա-
ների լավ կազմակերպիչ ու դաստիարակ:

Ինքը՝ կյանքը բարձր պահանջներ է առաջադրում քարտուղարին: Նա պար-
տավոր է ամենայն խորությամբ հասկանալ կուսակցական շինարարության
տեսության ու պրակտիկայի հարցերը, զինվել կուսակցական աշխատանքի
փորձով: Բացի այդ, քարտուղարը պետք է արդի արտադրության, էկոնոմիկայի
վերաբերյալ ունենա կայուն գիտելիքներ, որպեսզի կարողանա նրբորեն որսալ
նոր երևույթները:

Քաղկոմի և շրջկոմների կազմի վերլուծությունը ցույց է տալիս, որ հե-
տևողականորեն իրականացվում է կուսակցական ղեկավար կադրերի նորաց-
ման հետ ղեկավարման հաջորդականության զուգակցման վերաբերյալ կու-
սակցության պահանջը: 1978 թվականին քաղաքի կուսակցական կոմիտեների
անդամների կեսն ընտրվել է առաջին անգամ: Դրա հետ միասին աճում է վեր-
ստուգիչ հանձնաժողովների և կուսակցական կոմիտեների անդամության թեկ-
նածուների ինստիտուտի դերը՝ որպես կուսակցական ակտիվի ձևավորման
աղբյուրի և նրանց պատրաստման դպրոցի: Նրանց կազմն ավելի շատ է նո-
րացվում: Այսպես, 1979 թ. հունվարին քաղաքային կուսկազմակերպության
XXXVI կոնֆերանսում ընտրված քաղկոմի անդամների կազմը նորացվել
է 56 տոկոսով, մինչդեռ վերստուգիչ հանձնաժողովինը՝ 80, անդամության թեկ-
նածուներինը՝ 76 տոկոսով:

Ձեռնարկության, հիմնարկության, շրջկոմի կամ քաղկոմի կուսակցական
բյուրոյում կամ կոմիտեում ընտրվելը պատվավոր, բայց միաժամանակ շատ
պատասխանատու գործ է: Ընտրովի ակտիվիստը, լինելով կուսակցական մարմ-
նում իր կազմակերպության ներկայացուցիչը, միաժամանակ վերադաս կու-
սակցական մարմնի լիազորված ներկայացուցիչն է իր կազմակերպությունում:
Դա բարձրացնում է նրա պատասխանատվությունը, հատուկ պահանջներ ներ-
կայացնում նրա գործին ու վարմունքին: Այդ պատճառով էլ քաղկոմն ու շրջ-
կոմները, իրենց կազմը, ընտրովի կուսակցական ակտիվը ձևավորելիս, բացի
յուրաքանչյուր կոմունիստին ներկայացվող սովորական պահանջներից, հաշ-
վի են առնում նաև այնպիսի հատկանիշներ, ինչպես քաղաքական բարձր գի-
տակցականությունը, լավ զարգացած նորի զգացումը, պրոֆեսիոնալ գերազանց
պատրաստականությունը, գործիմացությունը, իր կուսակցական պարտակա-
նությունները ստեղծագործաբար կատարելու ունակությունը, մարդկանց հետ
աշխատելու հմտությունը և այլն: Քաղաքի ընտրովի ակտիվիստների մեջ այդ-
պիսի կոմունիստները շատ են: Ահա, օրինակ, քաղկոմի անդամ Պ. Անանիկ-
յանը: Նա բժշկական գիտությունների դոկտոր է, բժշկական ինստիտուտի ամ-
բիոնի վարիչ: Հասկանալի է, այդպիսի մարդու ժամանակը սահմանափակ է:
Բայց իր կազմակերպության, քաղկոմի ցանկացած հանձնարարություն նա կա-



տարում է մեծ պատրաստակամությամբ, ինչպես ասում են՝ գործի մեջ դնելով
իր հոգին: Նա միշտ ապրում է լիարյուն կյանքով, չի ընդունում, որ կլինեն բո-
պեներ, ժամեր, երբ անելիք չի լինի: Չի ընդունում, որ կարելի է հրաժարվել
որևէ մեկին օգնելուց՝ հանուն այն բանի, որպեսզի ժամանակ խնայվի հանգըս-
տի համար: Նա կուսակցական սկզբունքայնությամբ, խոր համոզվածությամբ
է մոտենում ցանկացած հարցի լուծմանը: Այս տարի ընկ. Անանիկյանը գլխա-
վորեց «Մալաթիա» կլինիկական հիվանդանոցի գործունեությունն ստուգող
հանձնաժողովը: Փորձն ու գիտելիքներն օգնեցին ճիշտ հասկանալու գործը,
ձեռնարկելու անհրաժեշտ միջոցներ:

Այսպիսին է ակտիվիստներից մեկի կարճառոտ բնութագիրը: Բայց այդ
հատկանիշները, ըստ էության, տիպական են կուսակցական շատ ակտիվիստ-
ների, ինչպիսիք են Էդգար Հովհաննիսյանը, Էլմիր Հարությունյանը, Շավարշ
Մարգարյանը, Ռուբեն Զարյանը, Սվետլանա Սարգսյանը, Ազգուշ Եղիազարյա-
նը, Էժենի Թությանը, Լեոնիդ Գուստինը, Թերեզա Ներսիսյանը և ուրիշներ:
Նրանց բոլորին միավորում է այն, որ մինչև քաղաքային կամ շրջանային կո-
միտեի կազմում ընտրվելը եղել են կուսակցական ակտիվիստներ՝ կուսխմբի
ղեկավար, կուսկազմակերպության քարտուղար, կուսկոմիտեի կամ բյուրոյի
անդամ: Ակտիվորեն մասնակցելով կուսակցական աշխատանքին, իրենց կո-
լեկտիվի, շրջանի, քաղաքի հասարակական-քաղաքական կյանքին, հաջողու-
թյամբ կատարելով իրենց աշխատանքային պարտականությունները, նրանք,
ինչպես և ուրիշ շատ կոմունիստներ, մեծ հեղինակություն են վայելում կուսակ-
ցական ընկերների շրջանում, նվաճել են նրանց համակրանքը և կուսակցական
ընտրովի մարմնի ներկայացուցիչ լինելու վստահությունը:

Ուշագրավ է, որ քաղկոմի և շրջկոմների բյուրոների կազմում ընտրված
կոմունիստ-բանվորները մեծ ակտիվություն են դրսևորում ինչպես արտադրա-
կան, այնպես էլ հասարակական-քաղաքական գործունեության մեջ: Քաղկոմի
բյուրոյի անդամ Ռաֆայել Ղալումյանը 1947 թվականից աշխատում է «Նաի-
րիտ» գիտաարտադրական միավորումում: Նա ավագ ապարատավար է: Իր
գործունեության ընթացքում պատրաստել ու դաստիարակել է 20 երիտասարդ
բանվոր և մշտապես հետևում է նրանց աշխատանքին, օգնում, որպեսզի նրանք
շղիջեն նվաճած բնագծերը: Անվանի ապարատավարը նաև հասարակական ակ-
տիվ գործունեություն է ծավալում: Կաուչուկի արտադրության ժողովրդական
վերահսկողության խմբի նախագահն է, արտադրամասային կուսկազմակեր-
պության քարտուղարի տեղակալը, ստանձնել է հերթափոխի ագիտատորի
պարտականությունը:

Հասարակական ակտիվ աշխատանքով աչքի են ընկնում նաև կուսշրջկոմ-
ների բյուրոների անդամները: Այսպես, Ձերժինսկու անվան հաստոցաշինական
գործարանի խառատ-ներտաշող Ա. Ղազարյանը (Լենինյան շրջկոմ) գործարանի
կուսբյուրոյի քարտուղարի տեղակալն է, ՀԱՄԽ-ի նախագահության անդամ:
Ալյումինի գործարանի էլեկտրալիզի արտադրամասի բրիգադավար Ն. Հակոբ-
յանը (ՀԿԿ 26 կոմիսարների անվան շրջկոմ) անընդմեջ ընտրվել է արտադրա-
մասի կուսկազմակերպության քարտուղար, եղել է Հայաստանի կոմկուսի վեր-
ջին երեք համագումարների պատգամավոր: ՀԿԿ Սովետականի շրջկոմի բյու-
րոյի անդամ է «Արդկապ» արտադրամիավորման բրիգադավար Նատալյա Ղա-
լումյանը: Ձեռնարկության հիմնադրման օրվանից նա մոնտաժող էր: Քսանմեկ
տարվա ընթացքում պատրաստել է 120 բանվոր, որոնք գրեթե բոլորն էլ ար-
տադրության առաջավորներ են: Նրանցից երկուսը դարձել են արտադրամասի
պետ, 4-ը՝ վարպետ: Նրա ղեկավարած բրիգադը սիստեմատիկաբար գերակա-
տարում է արտադրական առաջադրանքները, իսկ ընթացիկ տարվա մարտին
զեկուցեց տասներորդ հնգամյակը փակելու մասին: Բրիգադի բոլոր 40 անդամ-
ները պարգևատրվեցին լենինյան պատվոգրերով: Ն. Ղալումյանը միավորման
կուսբյուրոյի անդամ է, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում ընտրվել
է Կենտկոմի անդամ:

Քաղկոմի և շրջկոմների կազմում ընտրված կոմունիստ բանվորների հար-
վածային, ստեղծագործական աշխատանքի օրինակները շատ են: Բանվոր կու-

սակցական ակտիվիստների 83 տոկոսը կոմունիստական աշխատանքի հարվածային է, նրանցից 150-ը հայրենասիրական շարժումների սկզբնավորողներ են, 75-ը՝ վարպետ-դաստիարակներ, 217-ը պարգևատրվել են շքանշաններով, մեդալներով, պատվոգրերով ու սոցմրցության հաղթողի կրծքանշանով: Այս ամենը վկայում է, որ նրանք այնպիսի մարդիկ են, որոնք կարող են իրենց ետևից տանել կոլեկտիվը, ապահովել նույնիսկ ամենալարված պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարումը:

Կուսքաղկոմը միշտ էլ անհրաժեշտ ուշադրություն է նվիրել ընտրովի ակտիվի հետ տարվող աշխատանքին: Այս առումով բնորոշ էր հատկապես 1977 թվականը: Քաղկոմն Սպանդարյանի շրջկոմում ուսումնասիրեց ընտրովի ակտիվի հետ տարվող աշխատանքի վիճակը: Դրական շատ փաստերի հետ միաժամանակ բացահայտվեցին մի շարք թերություններ. անբավարար էին օգտագործվում կուսակցական ակտիվիստների ուժերը, նրանք, ինչպես հարկն է, չէին ներգրավվում շրջկոմի պրակտիկ գործունեության մեջ, սահմանափակ էին տարբեր կատեգորիայի ակտիվի հետ տարվող աշխատանքի ձևերը:

Ուսումնասիրության նյութերը քննարկվեցին քաղկոմի բյուրոյում: Կազմբաժնի կազմած տեղեկանքը և բյուրոյի որոշումն ուղարկվեցին շրջկոմներին՝ ընտրովի ակտիվի հետ տարվող աշխատանքի բարելավման գործնական միջոցառումներ մշակելու համար:

Քաղկոմի բյուրոյի որոշման կատարման ստուգումը և նույն 1977 թվականի դեկտեմբերին կազմակերպական բաժնում դրա արդյունքների քննարկումը ցույց տվեցին, որ վիճակը նկատելիորեն բարելավվել է ոչ միայն Սպանդարյանի, այլև բոլոր շրջկոմներում: Ամենուրեք ներդրվել է ընտրովի կուսակցական ակտիվին տրված հանձնարարությունների և դրանց կատարման հաշվառման որոշակի համակարգ: Առանձին շրջկոմներ սահմանել են քարտարան յուրաքանչյուր ակտիվիստի համար, մյուսներն օգտագործում են մատյաններ: Անհամեմատ ընդլայնվել էր կուսշրջկոմների ամենօրյա գործունեության մեջ ներգրավված ակտիվիստների շրջանակը, բազմազան էին դարձել նրանց հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները:

Քաղկոմում ու շրջկոմներում լայն տարածում է գտել մշտական և ժամանակավոր հանձնաժողովների ստեղծումը: Դրանցում ընդգրկվում են նաև կուսակցական կոմիտեների կազմում և ստորին օղակների ընտրովի մարմիններում ներկայացված կոմունիստները: Յուրաքանչյուր շրջկոմում գործում են 15—20 մշտական հանձնաժողով ու խորհուրդ, որոնց աշխատանքում ներգրավվում են շրջկոմի անդամներն ու անդամության թեկնածուները, սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարները: Այսպես, Սովետականի շրջկոմի կազմից 48 կոմունիստներ ներգրավվել են սոցմրցությունը, գաղափարախոսական աշխատանքը ղեկավարող, ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործերն ստուգող հանձնաժողովներում, կուսակցական-կազմակերպական աշխատանքի մեթոդխորհրդում և այլն:

Քաղկոմում գործում են 15 մշտական հանձնաժողով ու խորհուրդ: Զգալի աշխատանք են ծավալում ձեռնարկությունների ղեկավարների խորհուրդը և գաղափարախոսական հանձնաժողովը: Խորհրդի նախագահության անդամների ճնշող մասը քաղկոմի կազմից են, իսկ նրա սեկցիաների անդամների կեսը՝ ընտրովի ակտիվիստներ: Բոլոր հանձնաժողովներում կան ընտրովի մարմիններում ներգրավված մեծ թվով կոմունիստներ:

Ընտրովի մարմիններում կոմունիստները ներգրավվում են ոչ միայն առօրյա հանձնարարություններ կատարելու, այլև այդ մարմինների բազմաբովանդակ գործունեությանն օգնելու, գործերի վիճակի բարելավմանը նպաստելու համար: Քաղաքի կուսակցական կոմիտեներում ընտրված՝ ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերի շատ մասնագետներ ակտիվորեն մասնակցում են պլենումներում, ակտիվի ժողովներում, բյուրոյի նիստերում քննարկվելիք հարցերի նախապատրաստմանը: Աշխատանքի կազմակերպման այս ձևը լայնորեն արմատավորվել է պրակտիկայում: Այժմ քաղկոմի բաժիններում,



շրջկոմներում քննարկման համար պլանավորված ոչ մի հարց չի նախապատրաստվում առանց ընտրովի ակտիվի մասնակցության:

Ընտրովի ակտիվը ներգրավվում է նաև կուսկազմակերպության աշխատանքի տարբեր տեղամասերի գործերի վիճակի ուսումնասիրությանն ու ստուգմանը: Դա նախ՝ բարձրացնում է նրանց ակտիվությունը, զարգացնում նախաձեռնությունը, հնարավորություն ընձեռում մոտիկից ծանոթանալու կուսակցական աշխատանքին: Վերջին երկուսուկես տարում ՀԿԿ Շահումյանի շրջկոմի բյուրոյում քննարկված հարցերի նախապատրաստմանը մասնակցել է շրջկոմի կազմում ընտրված 31 ակտիվիստ, նրանցից շատերը նման հանձնարարություն կատարել են մի քանի անգամ: 63 ակտիվիստներ ընդգրկվել են պլենումների նյութերի, շրջկոմի բաժիններում, խորհուրդներում և հանձնաժողովներում քննարկվող հարցերի նախապատրաստմանը: ՀԿԿ 26 կոմիսարների անվան շրջկոմի պլենումում քննարկելու համար լայն ակտիվի ուժերով նախապատրաստվել են փոքրաթիվ կուսկազմակերպություններում գաղափարադաստիարակչական աշխատանքի, արդյունաբերական և շինարարական-մոնտաժային կազմակերպություններում աշխատանքի նորմավորման և այլ հարցեր: Ընտրովի ակտիվիստներից ավելի քան 180 մարդ մասնակցել է կուսշրջկոմի պլենումում՝ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1979 թ.) պլենումի արդյունքների, աշխատավորների ընդունելության և նամակների առնչությամբ տարվող աշխատանքի վիճակի քննարկումների նախապատրաստմանը: ՀԿԿ Լենինյան շրջկոմում պրակտիկա է դարձել պլենումներում և բյուրոյի նիստերում կազմակերպել այն ակտիվիստների ելույթը, որոնք մասնակցել են քննարկվող հարցերի ուսումնասիրմանն ու նախապատրաստմանը: Ընտրովի ակտիվիստները հաճախ են ներկա լինում պլենումի ու բյուրոյի նյութերի և որոշումների նախագծերի մշակմանը հատկապես այն հարցերի առնչությամբ, որոնց ուսումնասիրությանը մասնակից են եղել իրենք:

Կոմիտեների անդամները ինչպես քաղկոմի, այնպես էլ շրջկոմների պլենումների նյութերի և որոշումների նախագծերին ծանոթանում են վաղօրոք: Այդ նպատակով Լենինյան, Սպանդարյան և 26 կոմիսարների անվան շրջկոմներում առանձին դեպքերում նախապատրաստվել են քննարկվելիք հարցի վերաբերյալ զեկուցումների թեզիսները: Երբեմն մինչև պլենումի հրավիրումը որոշման նախագիծը ուղարկվում է բյուրոյի անդամներին, կուսկազմակերպությունների քարտուղարներին: Այսպես, ՍՄԿԿ շարքերի ընդունելության և երիտասարդ կոմունիստների դաստիարակության վերաբերյալ հարցը քաղկոմի պլենումում քննարկելուց առաջ որոշման նախագիծը նախապես բաժանվեց քաղկոմի բյուրոյի անդամներին, բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին: Նրանց դիտողությունները հաշվի առնվեցին նախագծում և տեղ գտան որոշման մեջ:

Կուսքաղկոմի պլենումներում նրա կազմին իրազեկ է պահվում հաջորդ պլենումում քննարկվելիք հարցի մասին: Դա հնարավորություն է ընձեռում հաշվի առնել ակտիվի կարծիքը, նախապատրաստվելիք հարցի վերաբերյալ նրանց առաջարկություններն ու դիտողությունները: Սակայն աշխատանքի այդ ձևը, չնայած իր դրական կողմին, դեռևս չի արմատավորվել շրջանային կոմիտեների աշխատանքի պրակտիկայում:

Կուսակցական շատ ակտիվիստներ քաղկոմ-շրջկոմների կողմից ներգրավվում են նախկինում ընդունված որոշումների կատարման ընթացքի ստուգմանը, ակտիվ մասնակցություն են ցույց տալիս կատարման հսկողության կազմակերպմանը: Այսպես, Լենինյան շրջանի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների արհմիութենական կազմակերպությունների աշխատանքի մասին հարցը նախապատրաստող հանձնաժողովի անդամները, հրահանգիչների հետ միասին, եղել են ձեռնարկությունների կուսժողովներում և բյուրոների ու կոմիտեների նիստերում, որտեղ քննարկվել են քաղկոմի որոշումները, և տեղերում օգնել միջոցառումների մշակմանը, թերությունների վերացմանը:

Ակտիվը ներգրավվում է նաև կուսակցական կոմիտեում ստացված բողոքների ու դիմումների ստուգմանը: Քաղկոմում, պատասխանատու աշխատողների

հետ միասին, բողոքների և դիմումների ուսումնասիրությանը ակտիվիստները
ներգրավվում են այն հաշվով, որ նրանք հետագայում կարողանան ինքնուրույն
կերպով ստուգել գործերի վիճակը և պատրաստել համապատասխան տեղե-
կանք: Սկզբնական շրջանում քաղկոմի կազմում ընտրված բանվորները, պա-
տասխանատու աշխատողների հետ միասին, մասնակցում են կուսակցական
ժողովներին, սովորում են վերլուծել կուսկազմակերպության գործունեությունը,
ելույթ ունենալ քննարկվող հարցերի շուրջ:

Քաղկոմի, շրջկոմների ակտիվի ուժերը հատկապես արդյունավետ են օգ-
տագործվում հաշվետու-ընտրական ժողովների կամպանիայի ընթացքում:

Վերջին երկու տարում ընտրովի ակտիվի ակտիվության բարձրացման և
նախաձեռնության զարգացման նպատակով, այլ ձևերի հետ միասին, լայնորեն
կիրառվում է կուսակցական կոմիտեի կազմում ընտրված կոմունիստների և
սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հաշվետվություն-
ների քննարկումը պլենումներում ու բյուրոյի նիստերում: Անցած տարվա սեպ-
տեմբերին, օրինակ, պլենումում քննարկվել է քաղկոմի անդամության թեկ-
նածու, քաղժողկրթբաժնի վարիչ Ա. Բեյբությանի հաշվետվությունը՝ որպես ակ-
տիվիստի: ՀԿԿ Օրջոնիկիձեի շրջկոմը պլենումում քննարկել է շրջկոմի բյուրոյի
անդամ, լոկոմոտիվային դեպոյի մեքենավար Ա. Պետրոսյանի, № 3 պոլիկլի-
նիկայի գլխավոր բժիշկ Է. Մկրտչյանի, Սպանդարյանի շրջկոմը՝ շրջկոմի ան-
դամ, կոմպոզիտորների միության կուսբյուրոյի քարտուղար Յու. Ղազարյանի,
Սովետականինը՝ շրջկոմի անդամ, «Շինմեքենասարքավորում» վարչության
փականագործ-մոնտաժող Բ. Կարապետյանի հաշվետվությունը: Հաշվետվու-
թյամբ հանդես են եկել ուրիշ շատ ակտիվիստներ:

Այս ամենը, իհարկե, լավ է: Սակայն այդ աշխատանքում թերությունն այն
է, որ քաղկոմն ու շրջկոմները դեռևս քիչ են կիրառում հաշվետվությունների
քննարկման եղանակը, այդ գործում դեռևս հարկ եղած ակտիվություն չի
նկատվում: Հաշվետվությունների ընթացքում հազվադեպ են արվում հարակից
զեկուցումներ, ընդունվում են դեկլարատիվ որոշումներ, հաճախ սահմանա-
փակվում են մեկ կետով՝ «Հավանություն տալ գործունեությանը»:

Մեր երկրում իրականացվող խոր վերափոխումները կուսակցական ակտի-
վին ներկայացնում են գաղափարական, տեսական պատրաստականության
բարձր պահանջներ: Կուսակցական ակտիվի գաղափարատեսական և քաղաքա-
կան դաստիարակության պրոբլեմները մշտապես գտնվում են քաղաքային կու-
սակցական կազմակերպության ուշադրության կենտրոնում:

Կուսակցական ակտիվիստ, ինչպես հայտնի է, չեն ծնվում: Այդ հատկա-
նիշը ձեռք է բերվում որևէ տեղամասում կատարած կուսակցական սիստեմատիկ
աշխատանքի, առանձին կուսակցական կազմակերպության կազմակերպչական,
քաղաքական և գաղափարական գործունեության հարուստ փորձի ամենօրյա
ուսումնասիրության ընթացքում:

Եվ որքան բարձր է կուսակցական ակտիվի գաղափարական ու տեսական
պատրաստականության մակարդակը, այնքան բարձր է լինում բուն ղեկավար-
ման որակը: Այդ պատճառով կուսակցության քաղկոմի, շրջկոմների առաջնա-
հերթ խնդիրներից մեկը համարվում է այն, որ ընտրովի ակտիվը տիրապետի
կուսակցական շինարարության սկզբունքներին: Հարկ է դաստիարակել նրան
հանձնարարված տեղամասի գործերի վիճակի համար պատասխանատվության
ոգով, ուսումնասիրել և ստուգել ինչպես կազմակերպիչների, այնպես էլ ղեկա-
վարների քաղաքական և գործնական հատկանիշները: Այդ գործում մեծ նշա-
նակություն ունեն Հայաստանի կոմկուսի Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի հա-
մալսարանի կուսակցական և սովետական շինարարության, գաղափարական
ակտիվի ֆակուլտետները: Կոմպլեկտավորման ժամանակ կուսշրջկոմները
առաջին հերթին սովորելու են գործուղում կուսակցական ակտիվիստներին:
Քաղկոմին առընթեր գործում են կուսակցական-սովետական ակտիվի և սկզբ-
նական կուսկազմակերպությունների քարտուղարների, գաղափարախոսական
աշխատանքի գծով նրանց տեղակալների դպրոցներ: Քաղաքի ընտրովի ակտիվի
համար քաղկոմում կազմակերպվում են դասախոսություններ արդի հրատապ
հարցերի շուրջ:



Ակտիվի ուսուցման կանոնավոր համակարգ գոյություն ունի կուսշրջկոմ-
ներում: Օրինակ, Սպանդարյանի շրջկոմում գործում են դասընթացներ՝ պետա-
կան հիմնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների քարտու-
ղարների, ստեղծագործական միությունների ղեկավար կազմի, ընտրովի գա-
ղափարական ակտիվի համար: Ընտրովի ակտիվի համար կազմակերպվում են
դասախոսություններ և զեկուցումներ, գիտապրակտիկ և գիտատեսական կոն-
ֆերանսներ:

Հաշվետու-ընտրական ժողովներից անմիջապես հետո կուսշրջկոմները
կազմակերպում են կուսակցական աշխատանքում առաջին անգամ ընտրված
քարտուղարների ուսուցումը: Նրանց համար անցկացվում են մեկօրյա կամ
բազմօրյա դասընթացներ: Շրջանային կոմիտեները հաճախ այդպիսի դասըն-
թացներ են հրավիրում հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում: Այն-
տեղ նոր ընտրված քարտուղարներին ուսուցանում են կուսակցական աշխա-
տանքի պլանավորման և կազմակերպման գործը, կուսժողովների անցկացման
կարգը, ընդունված որոշումների կատարման հսկողության իրականացման,
կուսշարքերի ընդունելության համար մարդկանց ընտրության ու նախապատ-
րաստման և երիտասարդ կոմունիստների դաստիարակության աշխատանքի
ձևերը:

Այսպիսով, ընտրովի ակտիվի նոր համալրումը անմիջապես ստանում է
անհրաժեշտ գիտելիքների այն մինիմումը, որ հարկավոր է աշխատանքն սկսե-
լու համար: Այդպիսի նախապատրաստությունից հետո քարտուղարները ընդ-
գրկվում են մշտական գործող դասընթացներում:

Ակտիվի ուսուցման գործում մեծ դեր են խաղում Հայաստանի կոմկուսի
Կենտկոմի կուսակցական և սովետական կադրերի վերապատրաստման դասըն-
թացները: Դասընթացներին մասնակցել են գրեթե բոլոր հիմնարկությունների
ու ձեռնարկությունների կուսկոմիտեների, կուսբյուրոների քարտուղարներն ու
նրանց տեղակալները, կուսշրջկոմների աշխատողները, ինչպես նաև ընտրովի
ակտիվի և կուսակցական աշխատողների մյուս կատեգորիաները:

Հանրագումարի բերելով ասածը՝ հարկ է հիշատակել, որ կուսակցական
ակտիվի ձևավորումը և գործունեությունը մշտապես գտնվում են քաղաքային
կուսկազմակերպության ուշադրության կենտրոնում: Քաղկոմը, շրջկոմները ել-
նում են այն իրողությունից, որ կոմունիստական շինարարության ասպարեզում
կուսակցության դերի հետագա բարձրացման գլխավոր պայմաններից մեկը
սկզբնական կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների ակտիվության
ու ինքնագործունեության աճն է, նրանց ակտիվ մասնակցությունը կուսակցու-
թյան քաղաքականության մշակմանը և իրականացմանը: Այդ խնդրի լուծման
գործում մեծ դեր է հատկացվում կուսակցական ակտիվին: Նա կանգնած է
կուսակցության գործի համար պայքարի առաջին բնագծերում, կենդանի օրի-
նակ է համարվում կոմունիստների և անկուսակցականների համար:

ՍՄԿԿ առաջիկա XXVI համագումարի որոշումները էապես կխթանեն, կաշ-
խուժացնեն ընտրովի ակտիվի հետ տարվող աշխատանքը: Կուսկազմակերպու-
թյունները կորոնեն և կկիրառեն այդ աշխատանքի նոր ձևեր ու եղանակներ,
ակտիվի ուժերը լիովին գործի կդնեն կուսակցության առաջադրած նոր խնդիր-
ները հաջողությամբ լուծելու համար:

# ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԵՐԿՐՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՈՒՄԸ

**Մ. Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿՅԱՆՔԸ, մարքս-լենինյան տեսությունը հաստատել են, որ արդի դարաշրջանում կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը ոչ բոլոր երկրներում է իրականացվում որպես սոցիալ-տնտեսական ֆորմացիաների հաջորդական փոփոխում: Տարբեր երկրների ու ժողովուրդների պատմական զարգացման տարբեր տեմպերն անհրաժեշտ ու հնարավոր են դարձնում ֆորմացիաների փոփոխման ընդհանուր օրինաչափության ձևափոխումը: Որոշ ժողովուրդներ կարող են սոցիալիզմին անցնել՝ շրջանցելով զարգացման կապիտալիստական փուլը: Այդ է վկայում Սովետական Արևելքի և Մոնղոլիայի ժողովուրդների փորձը, ժողովուրդներ, որոնք սոցիալիզմին են անցել՝ շրջանցելով կապիտալիզմը: Սովետական Արևելքի ժողովուրդների ոչ կապիտալիստական զարգացումը դեպի սոցիալիզմ իրականացվել է միասնական բազմազգ պետության, պրոլետարական դիկտատուրայի, կոմունիստական կուսակցության ղեկավար դերի պայմաններում: Այնուամենայնիվ, այդ պրոցեսներն իրենց զարգացման ընդհանուր ուղղությամբ միատիպ են և պատմականորեն փոխկապակցված:

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու արդի փուլում ստեղծվել է այնպիսի իրադրություն, որ գործնականում ամեն մի երկիր, զարգացման ինչպիսի մակարդակի վրա էլ որ լինի, կարող է կանգնել սոցիալիզմ տանող ուղու վրա: Դա վերաբերում է նաև այն երկրներին, որտեղ այսօրվա դրությամբ նոր է գոյավորվում բանվոր դասակարգը, չկա կոմունիստական կուսակցություն, պայմաններ չեն ստեղծվել պրոլետարիատի դիկտատուրայի համար: Դրա որոշակի «փոխհատուցումն» է այն փաստը, որ գոյություն ունի համաշխարհային սոցիալիստական համագործակցությունը՝ ՍՍՀՄ-ի գլխավորությամբ, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժումը, որոնց հետ հակաիմպերիալիստական, միասնական հեղափոխական հոսանք կազմած ընթանում է Աֆրիկայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը:

Սոցիալիստական կողմնորոշումը ոչ կապիտալիստական զարգացման կոնկրետ պատմական ձևերից է: «Սոցիալիստական կողմնորոշում» բուն հասկացությունը չի փոխարինում «ոչ կապիտալիստական ուղի» հասկացությանը, այլ կոնկրետացնում է այն ոչ կապիտալիստական զարգացման ազգային-դեմոկրատական ձևի ներկա փուլի համեմատ: Առաջին հերթին հենց դրանով է բացատրվում ժողովուրդների ոչ կապիտալիստական զարգացման գործում եղած ընդհանուրի և առանձնահատուկի պրոբլեմի տեսական ու մեթոդաբանական կարևորությունն ու այժմեականությունը: Զարգացման ոչ կապիտալիստական ուղին իր մեջ սինթեզում է ներկա և անցյալ պատմական փորձը, արտահայտում տարբեր երկրների՝ կապիտալիզմը շրջանցելով սոցիալիզմին անցնելու գլխավոր օրինաչափությունները: Ոչ կապիտալիստական զարգացման կոնկրետ ձևերն արտացոլում են այդպիսի անցման կոնկրետ պատմական առանձնահատկություններն այս կամ այն երկրում, այս կամ այն պատմական ժամանակաշրջանում եղած հասարակական հարաբերությունների վերափոխման ընդհանուր օրինաչափությունների, ձևերի ու մեթոդների դրսևորումները:

Սոցիալիստական կողմնորոշման երկրների զարգացմանը բնորոշ են ընդհանուր օրինաչափություններ, որոնք գործում են քաղաքական, սոցիալ-տնտեսական և կուլտուրական-գաղափարախոսական ոլորտներում:

**Քաղաքական օրինաչափություններից են.** ա) քաղաքական իշխանության նվաճումը հեղափոխական-դեմոկրատական ուժերի կողմից, հեղափոխական-դեմոկրատական պետությունների ստեղծումն ու զարգացումը, պետություններ, որոնք իրենց դասակարգային էությամբ բանվոր դասակարգի և գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրա են կամ ժողովրդի հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրա. բ) ավանգարդային հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների ձևավորումը, նրանց աստիճանական անցումը գիտական սոցիալիզմի քաղաքական գաղափարախոսությանը. գ) աշխատավորական զանգվածների, առաջին հերթին բանվոր դասակարգի դերի բարձրացումը ոչ կապիտալիստական զարգացման բոլոր պրոցեսներում, նոր հասարակության ստեղծման գործում. դ) հասարակական կյանքում զարգացման երկու միտումների հակամարտությունը, սոցիալ-դասակարգային և քաղաքական ուժերի վերախմբավորումը, կապիտալիստական դասակարգային ուժերի աստիճանական դուրսմղումը. ե) հեղափոխական դեմոկրատական պետության վերաճումը սոցիալիստական պետության որևէ ձևի և անմիջական անցումը սոցիալիստական շինարարության:

**Սոցիալ-տնտեսական օրինաչափություններից են.** ա) իմպերիալիստական մոնոպոլիաներից, համաշխարհային կապիտալիստական տնտեսությունից ունեցած կախման վերացումը. բ) արդյունաբերության, առևտրի, գյուղատնտեսության մեջ կապիտալիստական տարրերի սահմանափակումը, իսկ այնուհետև դրանց աստիճանական դուրսմղումը. գ) հասարակական կյանքում արխայիկ կառուցվածքների, ձևերի վերացումը, ավատական-կալվածատիրական հողատիրության ոչնչացումը, ագրարային արմատական վերափոխումների իրականացումը հօգուտ գյուղացիության, գյուղի կոոպերացման տարբեր ձևերի ըստ ամենայնի զարգացումը. դ) արդյունաբերության մեջ պետական սեկտորի ստեղծումը՝ որպես սոցիալիստական հիմունքներով ամբողջ ժողովրդական տնտեսության արմատական վերակառուցման հիմք. ե) լիակատար և վերջնական ազգային ազատագրումն իմպերիալիզմից՝ տնտեսական ազատագրման պրոբլեմի լուծմամբ. զ) ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աստիճանական փոխադրումը պլանային զարգացման ուղու վրա. է) աշխատավորական զանգվածների դրությունը բարելավելու անշեղ կուրսը, ը) բանվոր դասակարգի ձևավորումը, նրա՝ որպես հասարակությանը դեպի սոցիալիզմ տանող առաջատար ուժի դերի բարձրացումը:

**Կուլտուրական ու գաղափարախոսական ոլորտներում գործող օրինաչափություններից են.** ա) անգրագիտության վերացումը և հոգևոր ու կուլտուրական առաջընթացը. բ) մասսաների քաղաքական-գաղափարախոսական դաստիարակությունը. գ) հեղափոխական-դեմոկրատական և սոցիալիստական գաղափարախոսության անշեղ հաստատումը:

Այս օրինաչափությունները պայմաններ են նախապատրաստում ազգերի, նրանց տնտեսական, սոցիալ-քաղաքական, հոգևոր-գաղափարախոսական հիմքերի, ինքնագիտակցության ձևավորման համար: Ազգերի համախմբումն ու զարգացումը ձեռք են բերում սոցիալիստական բովանդակություն, հուսալի հիմք ստեղծում ազատագրված երկրներում ազգային հարցը լուծելու համար:

Ոչ կապիտալիստական զարգացման փորձով բացահայտվել է նաև միջազգային բնույթի **ընդհանուր օրինաչափություններ**, որոնք միաժամանակ կարևոր պայման են հետամնաց երկրների առաջընթացի համար: Այդ օրինաչափու-

Տվյալ պետության սոցիալ-դասակարգային հիմքը քաղաքի և գյուղի աշխատավորական լայն խավերն են, ամենից առաջ՝ բանվորները և գյուղացիները։ Պատմական այս փաստը արձանագրված էր 70-ական թվականներին սոցիալիստական կողմնորոշման երկրներում ընդունված բոլոր հիմնարար փաստաթղթերում։ Մոզամբիկի Ժողովրդական Հանրապետության սահմանադրության 2-րդ հոդվածում ասված է, որ «իշխանությունը պատկանում է բանվորներին ու գյուղացիներին, և իրականացվում է ժողովրդական իշխանության մարմինների կողմից»։ Անգոլայի Ժողովրդական Հանրապետությունում 1976 թվականի փետրվարի 5-ին ժողովրդական իշխանության վերաբերյալ ընդունված օրենքում ասվում է, որ ժողովրդական իշխանության մարմիններ են համարվում այն մարմինները, որոնց միջոցով ժողովրդական զանգվածներն իրականացնում են քաղաքական իշխանությունը։ 2-րդ հոդվածում ասված է. «Ժողովրդական իշխանության մարմինները ղեկավարում են ժողովրդական մասսաների, առաջին հերթին՝ բանվորների և գյուղացիների հեղափոխական նվաճումների պաշտպանությունը, ամրապնդումն ու զարգացումը»։ Բիրմայի սահմանադրության 12-րդ հոդվածը ազդարարում է. «Օրենսդիր, գործադիր և դատական սովերեն իշխանությունը պատկանում է ժողովրդին, ներառյալ ազգային բոլոր խմբերը, որոնց հիմքը կազմում են գյուղացիներն ու բանվորները»։ Գվինեայի Ժողովրդական Հեղափոխական Հանրապետության սահմանադրությունը ժողովրդին ճանաչում է որպես իշխանության միակ աղբյուր, իսկ ժողովուրդը, սահմանադրության համաձայն, ժողովրդական զանգվածներն են, բացառությամբ «հակազգային տարրերի», որոնց շարքն են դասվում կաշառակեր և թշնամական բոլոր տարրերը, ինչպես նաև այն անձինք, ովքեր շահագործում են վարձու աշխատանքը և ապրում անաշխատ եկամուտներով։ Այս վերջիններս չեն կարող մտնել պետական մարմինների կազմի մեջ կամ կուսակցության շարքերը։ Իշխանության սոցիալ-դասակարգային հիմքերի նման մեկնաբանություն է պարունակում նաև Ալժիրի Ազգային Խարտիայի սահմանադրությունը։

Դեռևս 70-ական թվականների սկզբին Կոնգոյի աշխատանքի կուսակցությունը խնդիր առաջադրեց քաղաքում և գյուղում ստեղծել ժողովրդական խորհուրդներ, «բանվորների, գյուղացիների, զինծառայողների, հեղափոխական մտավորականության և այլ հայրենասերների ներկայացուցիչներից, որոնք կպաշտպանեն ժողովրդի շահերը»։ Բենինի սահմանադրության 2-րդ հոդվածում ասված է, որ «հեղափոխական իշխանությունը հենվում է բոլոր հայրենասիրական, հեղափոխական դասակարգերի և սոցիալական խմբերի ազգային լայն դաշինքի վրա, իշխանություն, որի բազան բանվորների և գյուղացիների դաշինքն է»։ Ինչպես տեսնում ենք, այս փաստաթղթերի համաձայն պետության սոցիալ-դասակարգային հիմքը հակաշահագործողական նկրտումներով միավորված հեղափոխական ուժերի լայն դաշինքն է, իսկ այդ դաշինքի միջուկը բանվորների և գյուղացիների դաշինքն է։ Իսկ եթե հաշվի առնենք այն օբյեկտիվ խնդիրները, որոնք լուծելու է կոչված այդ իշխանությունը, ապա կարելի է ասել, որ դա հեղափոխական, դեմոկրատական պետություն է, ժողովրդի, բանվորների, գյուղացիների և մանրբուրժուական խավերի ծոցից ելած նրանց դաշնակիցների դիկտատուրա։ Ելույթ ունենալով ՄՊԼԱ —Աշխատանքի կուսակցության I համագումարում, այդ կուսակցության նախագահը՝ հեղափոխական Անգոլայի պրեզիդենտ Ա. Նետոն ասում էր. «ծրագիրը սահմանելու է այն խնդիրները, որ կուսակցությունը պետք է լուծի ժողովրդադեմոկրատական հեղափոխության փուլում... Բանվոր դասակարգը, դաշնակցելով գյուղացիության և հեղափոխական մտավորականության հետ, պետք է այդ փուլում իրականացնի հեղափոխություն՝ հաստատի դեմոկրատական դիկտատուրա»։

Սոցիալիստական կողմնորոշման պետության սոցիալ-դասակարգային էության նման բնորոշումն ակնհայտ կդառնա նաև նրա տնտեսական հիմքերի քննարկման ժամանակ։ Այդպիսի հիմք կարող են լինել ոչ բոլոր տնտեսական ձևերն ու կացութաձևերը, արտադրահարաբերությունների առկա ձևերը, այլ միայն նրանք, որոնք առաջանում են կամ պետության տնտեսական քաղաքա-



կանության հետևանքով, կամ աստիճանաբար զարգանում են կոլեկտիվիստական այնպիսի ձևերի ուղղությամբ, որոնք նպաստում են պետական սեկտորի, կոլեկտիվ տնտեսությունների հաստատմանը։ Պետական սեփականություն և կոոպերատիվ տնտեսությունների սեփականություն՝ հենց դրանք են արտահայտում զարգացման ոչ կապիտալիստական ուղու առանձնահատկությունները, դրանք են նախապատրաստում օբյեկտիվ նյութական կարևոր նախադրյալներ սոցիալիզմին անցնելու համար, դրանցում է արտահայտվում առաջընթացի սոցիալ-տնտեսական գլխավոր միտումը։

Այդպիսի տնտեսական հիմքերի նպատակամղված ստեղծումը պետության կարևորագույն ֆունկցիան է։ Անգոլայի սահմանադրության 9-րդ հոդվածի համաձայն պետական սեկտորի և կոոպերատիվ ձևերի ստեղծումն այն պայմանն է, որն ապահովում է «սոցիալական արդարացի հարաբերությունների հաստատումը արտադրության բոլոր ոլորտներում»։ Մոզամբիկի Ժողովրդական Հանրապետության սահմանադրության 11-րդ հոդվածը ազդարարում է կոոպերատիվ տնտեսությունների ըստ ամենայնի խրախուսման մասին։ Գյուղացիների կոոպերացմանը տրվում է բացառիկ կարևոր նշանակություն, հատկապես սոցիալական առումով։ Ալժիրում 1976 թվականի սահմանադրությունն ընդունելու պահին ստեղծվել էր ավելի քան 6 հազար գյուղատնտեսական կոոպերատիվ։ Սահմանադրության մեջ որոշված են ագրարային հեղափոխության նպատակներն ու սոցիալական նշանակությունը՝ մարդու կողմից մարդու շահագործման նյութական ու գաղափարախոսական հիմքերի վերացումը, գյուղում սոցիալական նոր հարաբերությունների ստեղծումը, քաղաքի և գյուղի զարգացման անհավասարության վերացումը՝ հատկապես գյուղում սոցիալիստական շինարարության միջոցով։

Սոցիալիստական կողմնորոշման բոլոր երկրներում այս կամ այն ձևով ու չափով թույլատրվում է մասնավոր սեփականությունը։ Անգոլայի սահմանադրության մեջ, օրինակ, ասվում է, որ էկոնոմիկան ունենալու է պլանային բնույթ և հենվելու է սեփականության երեք տեսակների վրա. պետական, կոոպերատիվ և մասնավոր։ Բայց մասնավոր սեփականությունն ընդունվում է որոշակի շրջանակներում ու սահմաններում։ Մոզամբիկի սահմանադրությունը ևս թույլատրելի է համարում մասնավոր սեփականությունը, որը «չի կարող օգտագործվել ի վնաս սահմանադրությամբ հաստատված շահերի, այն կապված է պարտավորությունների հետ»։ Օտարերկրյա կապիտալը նույնպես կարող է ներգրավվել՝ պետության տնտեսական քաղաքականության շրջանակներում։ Ինչպես տեղական, այնպես էլ օտարերկրյա մասնավոր սեփականությունը էկոնոմիկայի կառուցվածքի մաս է կազմում, երբեմն նույնիսկ աճում է դրա դերը տնտեսական կյանքում, այս կամ այն կոնկրետ խնդրի լուծման գործում։ Սակայն սեփականության այդ ձևը չի կարող դառնալ հեղափոխական քաղաքական վերնաշենքի, «սոցիալական նոր կազմակերպության» տնտեսական հիմք, որովհետև սոցիալիստական կողմնորոշման սոցիալ-տնտեսական երկարատև քաղաքականությունը ուղղված է այն նպատակին, որ անշեղորեն, աստիճանաբար այն դուրս մղի տնտեսական հարաբերություններից։ Երբ այդ սահմանադրություններում խոսք է գնում մասնավոր սեփականության պահպանման մասին, ապա նկատի է առնվում նրա նպատակահարմարությունը տվյալ փուլում. այն ոչ միայն օտար, օրգանապես խորթ է սոցիալիստական կողմնորոշման էությանը, այլև վտանգավոր գործոն է սոցիալիզմի ընտրության համար։

«Սոցիալիստական ընտրության անվտանգությունը,— նշված է Ալժիրի Ազգային Խարտիայում,— պահանջում է մասնավոր սեկտորը զրկել իշխանությունը զավթելու պլատֆորմ դառնալու հնարավորությունից։ Նրա գործունեությունը պետք է դրվի այնպիսի շրջանակների մեջ և այնպես սահմանափակվի, որ այն չհասնի տնտեսական հզորության և հնարավորություն չունենա ազդելու պետական որոշումներ ընդունող կենտրոնի վրա»։ Մասնավոր սեփականությունը թույլատրելի է, եթե այն ի վիճակի է ծառայելու հասարակությանը և «սոցիալապես օգտակար լինելու»։

տրուած գումար մը» (նույն տեղը, էջ 79)։ Այստեղից էլ այն հետևությունը, թե ով հարում է նյութապաշտությանը՝ մատերիալիզմին, նա չի կարող իրեն դրսևորել որպես բարոյական մարդ, ունենալ պատվի, խղճի, հասարակականն ըզգացմունքը։ Պերպերյանի կարծիքով, մատերիալիզմը այլ բարոյականություն չէր էլ կարող քարոզել, որովհետև իր համակարգում տեղ չէր թողնում ո՛չ միայն հոգեկանի, այլև դրանով պայմանավորված բարոյական սկզբունքների համար, որոնք իդեալական են և չունեն նյութական ծագում։ Ըմբոստանալով մատերիալիզմի այն դրույթի դեմ, ըստ որի ո՛չ միայն հոգին, այլև բարոյականության սկզբունքները ևս ունեն նյութական ծագում, նա բացականչել է. «Ի՞նչ, նիւթն է, որ գիտակցութիւն ունի ինքզինքին ու կը խորհէ, կը դատէ, կիմաստասիրէ. ա՞ն է որ գեղեցկին կը ցանկայ ու բարւոյն կը համակրի, որ կը սիրէ, կը զոհէ, կ'անձնուիրի, ա՞ն է որ ազատ կ'զգայ ինքզինք ու միանգամայն բարոյական օրենք մը կը հղանայ որուն հնազանդիլ պարտական կը դաւանի իւր անձ, ա՞ն է որ անհունին վրայ կը մտածէ, բացարձակը կը վճռէ, տեսլականին յղացումն ունի ու կատարյալին բնազդը։ Ա՞ն է որ բիւրեղին մէջ երկրաչափութիւն է, ծաղկին մեջ՝ գեղարուեստ, կենդանվոյն մէջ՝ բնազդ» (նույն տեղը, էջ 71—72)։

Նշելով այն, որ մատերիալիզմն իր գոյության բոլոր ժամանակներում միշտ գռեհկացրել, աղավաղել է բարոյականության էությունը, նա դատապարտել է ո՛չ միայն այդ ուսմունքը, այլև մեղադրել նրան մարդկային բարքերի այլասերման, խղճի ապականման մեջ. «Բայց դժբախտաբար,— գրում է Ռ. Պերպերյանը,— հակառակ իր հաւակնութեանց, անհեթեթութեան, XVIII դարէն ի վեր մանավանդ, Տ'Օլպախներէն ու Լամէդրիներէն ի վեր, որք Հին Հիւլէականաց ու Էպիկուրեանց գաղափարներուն ցաւալի թարմացում մ'ընծայեցին, նիւթապաշտ վարդապետութիւնը ինչ ավերիչ արշավանքներ ըրաւ իմացականութեանց և խղճերու մէջ, երկինք նայող ու հոն լոյս մը փնտրող աչքերը խոնարհեցուց, նկարագիրները ստորնացուց, գրագիտութիւնը ապականեց, բանաստեղծութեան Մուսայն երկրաքարշ նուաստացուց և Արուեստին մաքուր պսակը տիղմի մէջ քաշկռտեց» (նույն տեղը)։

Քննադատելով մատերիալիզմը, որը նա թյուրիմացաբար նույնացնում էր գռեհիկ մատերիալիզմի հետ, այսպիսով, Ռ. Պերպերյանն իր գաղափարական հոր՝ Կանտի պես բարոյականության սկզբունքներն ու օրենքները բխեցրել է ոչ թե մարդկանց հասարակական կեցությունից, այլ զուտ բանականությունից, դիտել դրանք որպես դրանով պայմանավորված ապրիորի ձևեր, որոնց մեջ նախանշված է «մարդկային կենաց ճիշտ նպատակը»։

Ելնելով բարոյականության ապրիորի սկզբունքների կանտյան ըմբռնումից՝ Կանտի հայ հետևորդները միաժամանակ պնդում էին, որ դրանց կրողը և շարժիչ ուժը կամքն է։ Խոսելով մարդու կամքի մասին՝ նրանք գտնում էին, որ բնության մեջ այն հետերոնոմ է (այլօրինի) և ազատ հասարակական կամ բարոյական կյանքում։ Նման հայացքը գալիս էր մարդու մասին կանտյան այն ըմբռնումից, համաձայն որի նա էմպիրիկ և բանական էակ է։ Որպես էմպիրիկ էակ, կազմելով բնության մի մասը, մարդը ենթարկվում է երևույթների աշխարհում տիրող անհրաժեշտությանը, իսկ որպես բնական էակ, պատկանելով բարոյական աշխարհին, նա ինքն է որոշում իր վարքի մոտիվները, դրսևորում որոշակի անկախություն բարոյական օրենքների նկատմամբ։ Հենց այդ հանգամանքը նկատի ունենալով է, որ բարոյական օրենքի էությունը Գարագաշյանը սահմանել է հետևյալ կերպ. «Բարոյական օրէնք կը կոչենք զայն, վասն զի ազատ ենք նրան հետեւելու կամ չհետեւելու. ասով կոչենք զայն մեր բնութեանը վերաբերեալ ուրիշ օրէնքներէն, որոնք հարկաւոր ըլլալու համար բնական կը կոչենք» (Ա. Գարագաշյան, Համառոտ փիլիսոփայություն, էջ 79)։ Այստեղից էլ այն թեզը, որ եթե բնության մեջ գործում է անհրաժեշտությունը, ապա բարոյական կյանքում՝ պիտոյությունը։

Սակայն, պաշտպանելով կամքի ազատության գաղափարը, նրանք արդարացրել են միայն այն գործողությունները, որոնք հետապնդում են համամարդկային նպատակներ, գերագույն իդեալներ, մի խոսքով՝ այն ամենը, ինչ նպաստում է բարի կամքի իրականացմանը։ Այս իմաստով ինչպես Կանտի, նույնպես և նրա հայ հետևորդների մոտ, կամքը դիտվել է որպես բարի կամք։ Դա երևում է կամքի՝ նրանց հետևյալ սահմանումից, համաձայն որի կամքն իր օրենքներով «կ'ուղղէ մարդու գործունէութիւնը բարւոյն ճամբուն մէջ» (Ն. Ռուսինյան, Դասագիրք փիլիսոփայության, էջ 122)։ Ըստ հայ կանտականների, «բարոյականն այն է կամքին, ինչ տրամաբանությունը՝ մտածողությանը (խորհրդին)»։ Եթե դրանցից մեկն ուղղում է իմացական կարողությունները, ճանաչողությանը տալով մեթոդներ, ապա մյուսն ուղղում է մարդու գործունեությունը, կամքին տալով կանոններ։

Բարոյականության սկզբունքների բնորոշ առանձնահատկությունը, ըստ հայ կանտականների, նրանց համընդհանրականության մեջ է։ Դա նշանակում է, որ մարդիկ իրենց ամենօրյա գործունեության մեջ պետք է դրսևորեն ոչ թե եզակի կամ պատահական, այլ ամբողջ հասարակության կամքն արտահայտող գործելակերպ։ Եթե ամեն անգամ մարդիկ իրենց գործողությունների ժամանակ ղեկավարվեին անհատական շարժառիթ-



ներով, ապա հասարակությունը կխորտակվեր նպատակների տարբերությունից։ Ճիշտ է, նրանք չեն ժխտել այն հանգամանքը, որ կամքն առանց նպատակի չի լինում, բայց, միաժամանակ, բարոյական են համարել մարդկանց այն գործողությունները, որոնք չեն բխում հաշվենկատությունից կամ սուբյեկտիվ մղումներից։ Բարոյական գործունեության հիմնական մոտիվը, ինչպես նշում է Գարագաշյանը, պետք է լինի «բարոյական գործողի ճշմարիտ շահը», այսինքն՝ «մարդուս բանաւոր և իրական օգուտը, որը տարբեր է մարդուս զգայական եւ սուտ օգուտէն» (Ա. Գարագաշյան, Համառոտ փիլիսոփայություն, էջ 81)։

Այսպիսով, Կանտի հայ հետևորդները բարոյականության սկզբունքները չեն դիտել որպես մարդկանց կոնկրետ նպատակների իրականացման միջոցներ, այլ օրենքներ իրենք իրենց համար, անկախ որևէ նպատակից, որը վկայում է նրանց էթիկական ուսմունքի ձևական-վերացական ուղղվածության մասին։

Հետաքրքրական են Ի. Հարությունյանի, Ռ. Պերպերյանի, Հ. Հինդլյանի դատողությունները. իրենց մանկավարժական, դաստիարակչական համակարգում նրանք ելել են Կանտի բարոյագիտական ուսմունքից։ Դաստիարակության խնդիրների ու նպատակների մասին Ի. Հարությունյանը գրել է, որ այն չպետք է ելնի մի այնպիսի համակարգից, որը չհենվի զուտ անհատի երջանկության գաղափարի վրա։ Այդ հանգամանքը նա բացատրել է նրանով, որ անհատի երջանկության սկզբունքի հետ կապվում է ուտիլիտարիզմի գաղափարը, որը մերժում է այն ամենը, ինչ անմիջականորեն գործադրելի և օգտակար չի երևում։ Ըստ Հարությունյանի՝ դրանից ծագում է այն վտանգը, որ աստիճանաբար մարդկային բոլոր իդեալական ձգտումները մղվում են ետ, տիրապետում է ընդհանուր բարոյական թուլությունը, և թե՛ անհատները, թե՛ հասարակությունը դառնում են անընդունակ՝ իդեալներով ոգևորվելու։ Ավելին, օգտակարության սկզբունքը, ըստ նրա, անհնար է դարձնում բարոյական բնավորության զարգացումը, նսեմացնում գեղեցկի ու բարու իդեալները։ Ուստի, որպեսզի նման բան չլինի, նա առաջարկում է դաստիարակության համար օգտվել բարոյագիտական մի այնպիսի համակարգից, որը բարոյական ձգտման արժեքը տեսնի ոչ թե ձգտած առարկայի, այլ նույնիսկ կամենալու մեջ։ Դպրոցներն այս առումով իրենց առաջնահերթ խնդիրը պետք է համարեն «Բարի կամքի դաստիարակութիւնը, դրա զարգացումը, մի այնպիսի կամքի, ուր անհատականը բխի բարոյական օրենքներից, կամ թէ բարոյական իդեալական պատկերի բացարձակ գեղեցկութիւնից» (Ի. Հարությունյան, Դաստիարակության նպատակը, 1911, «Նոր դպրոց», № 1—2, էջ 15)։

Կանտյան բարոյագիտության դիրքերից էր ելնում նաև Ռ. Պերպերյանը, դպրոցների և վարժարանների առաջնահերթ խնդիրներից մեկը համարելով աճող սերնդի բարոյական դաստիարակությունը, նրա մեջ այնպիսի սկզբունքների պատվաստումը, որոնք բարձր պահեն մարդու վեհ կոչումը։ Իր շրջանավարտներին կարդացած մի դասախոսության մեջ, պատասխանելով այն հարցին, թե ինչ պետք է լինի նրանց իդեալը, նա նշել է. «...դուք ամէն բանէ յառաջ ու վեր մարդ ըլլալ, կատարեալ մարդ ըլլալ պիտի ցանկաք, ամէն բանէ յառաջ ու վեր ձեզ սեփականել, ի ձեզ իրացնել պիտի ջանաք գերագոյն բարին, բուն բարին, յորմէ կը բղխին ի մարդիկ եւ յաշխարհի ամէն իրական ու ճշմարիտ բնութիւնք» (Ռ. Պերպերյան, Դաստիարակի մը խոսքերը, էջ 24)։ Նրա կարծիքով դպրոցներն ու վարժարանները դրան կհասնեն միայն այն ժամանակ, երբ իրենց սաների հոգում արթնացնեն «ազնիվ ու բարի բնազդներ», ոգեշնչեն այնպիսի գաղափարներով, ինչպես՝ «բարվոյն տենդն, գեղեցիկին զգացումը, ճշմարիտին ծարաւը»։ Նրա համոզմամբ, նման գաղափարների ոգով երիտասարդության դաստիարակությունն առավել անհրաժեշտ է, քանի որ նրանց հասակն այնպիսին է, որ հեշտությամբ ենթարկվում են հոգեկան հաճույքներին, զգայական հակումներին. «նիւթական շահը... զգայարանաց թանձր հաճոյքը, տափակ ու մարմնահաճ վայելումները, սնափառութեան ու ցուցամոլութեան գոհացումները, շուքի ու շռինդի զգլխումները, զարդի ու պերճանքի շլացումները անփորձ ու հրատենչ սրտերու համար մէն մի վիհեր են վտանգալի, ուր կրնան ընկղմիլ ու ընկղմել իրենց հետ իրենց անմեղութիւնը, իրենց առաքինութիւնը, բոլոր վեհ ու բարձրանկատ ձգտումները» (նույն տեղը)։

Ցույց տալով, որ նման «ախտաբոյր հրապոյրների» պատճառը երիտասարդների կամքի ոչ բավարար կոփվածությունն է, «անկամ բարոյականը», Պերպերյանը դպրոցների ու վարժարանների մյուս առաջնահերթ խնդիրը համարել է մատաղ սերնդի կամքի դաստիարակումը։ Նրա համոզմամբ, խնդիրը միայն այն չէ, որ երիտասարդները գիտակցեն բարոյական օրենքների էությունը, այլև այն, որ միաժամանակ գտնեն իրենց մեջ «զորավոր կամք» դրանք կյանքում կենսագործելու համար։ Կամքն այս առումով նա համարել է «մարդկային անձնաւորութեան և բարոյականութեան պայմանը», արժանապատվություն ձեռք բերելու հիմնական միջոցը։ Իսկ թե ինչ է կամքը և ինչ սկզբունքով է այն ղեկավարվում, այդ մասին նա գրել է. «Կամքով գործել կը նշանակէ որոշողութեամբ, գիտակցու-

թեամբ, բանիւ գործել, կշռելով վախճանն ու միջոցներն, ընտրելով աղէկամի հետեւելի այլ եւ այլ ճամբաներու մէջէ, առնելի այլ եւ այլ գործոց մէջէ» (նույն տեղը)։ Նկատի ունենալով այդ, մի հոդվածում, դիմելով իր սաներին, նա գրել է. «Այդ կամքը, բանականութէամբ լուսաւորուած և պարտականութենէն ուղղուած այդ բարի կամեցողութիւն ունենալ պիտի ջանաք դուք միշտ» (նույն տեղը, էջ 78)։ Պերպերյանի կարծիքով, մարդ միայն այն ժամանակ է իբրև մարդ գործում, երբ ղեկավարվում է որոշակի կամքով, այսինքն՝ երբ գործելու սկզբունքներ ու նկարագիր ունի։ Իսկ երբ գործում է հախուռն ու «անխորհուրդ» ձևով, ղեկավարվում անմիջական տպավորություններով կամ ուրիշների քմահաճույքներով, դադարում է անձնավորություն լինելուց, կորցնում է իր բարոյական արժանապատվությունը։ Այդ դեպքում նա գործում է որպես կենդանի, որը «կրքէն ընդքարշ տրուած ու մոլութենէն կնատած, ալ ինքզինքին տէրը չէ՝ այլ անասուն մը, ալ հոգի մը չէ, այլ նյութ մը» (նույն տեղը)։ Իսկ մարդ արարածի ամենամեծ արժանիքը, նրա հարստությունը, ըստ նրա, հետևյալն է. «առողջ մարմին մը, անխախտ հոգի մը, գոհ խղճմտանք մը, անձին յարգանքը, պարկեշտ ու պարտաճանաչ աշխատասիրութիւն մը, ընկերութեան մատուցուած ճշմարիտ ծառայութեան մը փոխարէն՝ իւր ճակտին քրտինքով անխարդախաբար ու աննուաստաբար շահուած քիչը, սոքա են մեծագոյն շահը, ճշմարիտ հարըստութիւնը» (նույն տեղը)։ Շարունակելով իր այդ միտքը՝ այնուհետև նա նկատել է, որ «ճշմարիտ, առողջ հաճոյքը... այն է, որ կենաց ոյժերը կաւելցնէ, որ չի քայքայեր մարդը, որ ոչինչ կը թողու դառն ու ախտային իւր ետեւ... Այդպիսի հաճոյքը պիտի խնդրեք դուք կամ մանաւանդ առանց ձեր խնդրելն, նա ինքն, իբրև հետեւութիւն ու վարձք ձեր զգօն ու ազնիվ գործունեութեան, պիտի գա, խնդրել ձեզ» (նույն տեղը)։

Բարոյականության օրենքների ու նպատակների վերաբերյալ Պերպերյանի այս մտքերը հետագայում զարգացրել է Հ. Հինդլյանը։ Լինելով ժամանակի ականավոր մանկավարժներից մեկը՝ նա իր ուսուցչի պես, հանդես է եկել դպրոցական այն համակարգերի դեմ, որոնք ուսուցման գլխավոր խնդիրը համարում էին ոչ այնքան մատաղ սերնդի բարոյական դաստիարակությունը, որքան նրանց գիտելիքներ հաղորդելը։ Ճիշտ է, ըստ նրա, գիտելիքները ևս կարևոր են մարդկանց կյանքում որոշակի տեղ գրավելու համար, սակայն էլ ավելի կարևոր է «նկարագրի ու կամքի տեր մարդէր պատրաստելը», որոնք կարողանան տոկալ աշխարհի հազար ու մեկ փորձություններին, հաղթահարել իրենց առջև ծառացած դժվարությունները. «Տղուն ուսեալ ըլլալ միշտ մեր ձեռքը չէ, բայց տղուն մարդ ըլլալ միշտ մեր ձեռքն է» (նույն տեղը),—գրել է նա (Հ. Հինդլյան, Անկեղծ էջեր, հատոր Ա, էջ 58)։ Եվ ապա՝ «Ըստ Քանդի երկու բան կայ, որոնց վեհութիւնը հիացմամբ և պատկառանքով կ'տարագրէ զմեզ, աստեղազարդ երկինքը մեր գլխուն վերեւ եւ պարտականութեան օրէնքը՝ մեր սրտին խորը» (նույն տեղը, էջ 179—180)։

Կանտի հայ հետևորդների բարոյագիտական համակարգում որոշակի տեղ է գրավում նաև պարտքի կատեգորիան։ Հետևելով Կանտին, պարտք ասելով նրանք հասկացել են մի օբյեկտիվ գործունեություն, որն իր դրդապատճառներն ունենալով բարոյական օրենքները, բացառում է այն ամենը, ինչ հակասում, կամ խոչընդոտում է դրանց իրականացմանը։ Պարտքն այս առումով, ըստ հայ մտածողների, սահմանափակում է մարդկանց ազատ գործողությունները և հարկադրում նրանց անել այն, ինչ բխում է բարոյական օրենքներից։ Այսպես, ըստ Ռուսինյանի, պարտքը «մի բնական օրէն մէ, որ կըսէ իւրաքանչիւր մարդու. ըրէ ինչ որ բարի, ինչ որ արդար է, խորշէ որ չար, որ անիրաւ է։ Օրէնը, որ այդպէս կը խոսի մեզ, զմեզ կը ստիպէ հնազանդիլ անոր, այդ ստիպումը պարտքն է» (Ն. Ռուսինյան, Դասագիրք փիլիսոփայության, էջ 132—133)։ Բարոյական օրենքների հանդեպ մարդիկ պարտավորված են զգում միայն այն ժամանակ, երբ նրանք արդարացի ու ճըշմարիտ են, գրել է Գարագաշյանը։ Հենց այդ հանգամանքն է, որ մարդկանց հոգում ծնում է որոշակի հարգանք բարոյական օրենքների նըկատմամբ և մղում նրանց արդար ու բարի գործողությունների։ Նա գրել է. «Պարտաւորութիւն կըսուի ան, որուն ստիպուած է մարդ հեղինակութենէ մը վավերացեալ օրենքով» (Ա. Գարագաշյան, Համառոտ փիլիսոփայություն, էջ 81)։ Այլ կերպ ասած, պարտք ասելով նա հասկացել է ապրել ու գործել բարոյական օրենքների համաձայն։ Իսկ դա նշանակում էր՝ ոչ միայն գիտակցել իր կատարած գործողությունների իմաստը, այլև պատասխանատվություն կրել դրանց համար։

Ըստ Ռ. Պերպերյանի, պարտքի կարևորագույն հատկանիշներից է նաև անձնազոհությունը կամ «զրկողութիւնը»։ Այդ հանգամանքը նա բացատրել է նրանով, որ պարտքի կատարումը ենթադրում է մարդու զգայական, էմպիրիկ պահանջմունքների անտեսումը, ինչպես նաև դրանց ենթարկումը բանականության պահանջներին։ Իսկ բանականության պահանջն այն է, որ մարդ իր սեփական ես-ը չհակադրի հասարակության ընդհանուր շահերին, իր առջև դնի այնպիսի նըպատակներ, որոնք նպաստեն ուրիշների բարօրությանը, արտահայտեն նրանց կամքը։ Հոբելյանական մի ղեկուցման մեջ խոսելով այդ մասին՝ ահա թե ինչ է ասել նա իր շրջանավարտներին. «Դուք յոժարակամ յանձն պիտի առնուք զրկողութիւնն, զոհողութիւնն ում կարող եք, երբ այն կը նպաստէ այլոց բարւոյն։ Այլասիրութիւնն լաւագոյնս պիտի իմանալ տալ ձեզ ձեր անձնական շահը, և պիտի հասկնաք թէ թերեւս, ըստ բանին Հանրի Ժօլիի, առ անձն պարտականութիւնքն կատարելու լավագույն եղանակն է կատարել իւր պարտականութիւնքն առ այլս։ Այդ պարտականութիւններէ չպիտի խուսափիք դուք, նույնիսկ անկարողութեան պատճառաւ. ձեր տեսլականը պիտի լինի կարող լինել, եւ երբ ուզեք՝ յաճախ պիտի կրնաք։ Չպիտի նմանիք էպիկուրեանց, որք իմաստութիւն կը համարէին մնալ ամուրի անընտանիք, ու ձեռնթափ հանրային իրերէ, վայելելու համար կյանք մը ըստ կարի անվիշտ անխռով, որպէս ոք որ ծովեզեր վրա, նստած դիպէ յապահովի ծովն ալէկոծ. ոչ, պէտք է մտնել փոթորկին մէջ, ձեռք առնուլ նաւին թի ու թեւճակ ոգորել, վայելել, կրել, բայց միշտ ջանալ իրագործել բարին զոր կրնաք, այս է կեանքը» (Ռ. Պերպերյան, Դաստիարակի մը խոսքերը, էջ 24—25)։ Խնդրին մոտենալով այս տեսանկյունից, նա մերժել է պարտքի այն ըմբռնումը, որի հիմքում ընկած է հաշիվը կամ որևէ բանի ակնկալությունը։ Պարտքը ըստ նրա, վարձատրություն չի պահանջում։ Երբ մարդ իր պարտքի կատարումը կապում է որևէ պայմանի հետ, պարզապես դադարում է բարոյական լինելուց։ Կատարել պարտքը, նշանակում է «գործել բարին բարւոյն համար», գրել է նա իր Մարդիկ և իրf աշխատության մեջ։ Ընդ որում նա նկատել է, որ բարություն գործելը պետք է լինի ոչ թե ժամանակավոր, այլ հարատև։ Նրա կարծիքով, երբ մարդը, հետևելով բարոյական օրենքներին, կատարում է իր պարտքը, դրանով իսկ հաղթահարում է իր կյանքի սահմանափակությունը, անմահացնում իրեն հավիտենապես։ Հենվելով այս հարցում Կանտի դատողությունների վրա, նա գրել է. «Գիտեք որ հոգւոյն անմահութեան համար Քանդի մէկ բարոյական փաստն էր պարտաւորութեան և բարոյական տեսլականի յղացումը՝ որոյ գործադրութիւնը անսահմանափակ կեանքի մը պայմանն ու իրաւունքը կենթադրէ, որչափ ևս առաւել անոր համար որոյ կեանքը յարատև նուիրում մ'ըլլա այդ յղացումն իրագործելու» (Ռ. Պերպերյան, Դաստիարակի մը խոսքերը, էջ 95)։

Հետևելով արևմտաեվրոպական դեոնտոլոգներին՝ նա մարդու համար տարբերել է երկու կարգի պարտավորություններ— անհատական և ընդհանուր։ Ըստ նրա, քանի որ մարդ գործում է իր նմանների հետ, ուստի իր անձի նկատմամբ ունեցած պարտավորություններից բացի պետք է ունենա նաև «ընկերական» պարտականություններ, որպիսիք են, ըստ նրա, մարդու՝ իր ընտանիքի, ազգի, հասարակության նկատմամբ ունեցած պարտավորությունները։ Ճշմարիտ հաջողություն հոդվածում, քննության առնելով այն հարցը, թե ինչով է թելադրված մարդու՝ իր նմանների նկատմամբ ունեցած պարտավորությունները, նա գրել է. «Մարդն անջատ, առանձին էակ մը չէ, նա ընկերական էակ մ'է, նա մասն է մի ամբողջի. այդ ամբողջն ընտանիքն է, ազգն է, մարդկութիւնն է. այդ ամբողջներն անհրաժեշտ են անհատին կենաց։ Առանց ընտանեաց ինչպես կ' ապրի և կը զարգանայ մանուկն, առանց ընտանեաց կապրի՞ եւ հասուն մարդը, երբ կը պակսին իրեն ամուսնոյն գորովն ու զավակաց ժպիտն, և երբ ընտանեկան յարկի մթնոլորտէն չի կրնար քաշել ապրելու ոյժն ու յույսն.—յուր ազգին մի անդամն է մարդ.— անորն է լեզուն, որով կը խորհի և կը յայտնէ իւր գաղափարներ, անորն է պատմութիւնն այն որ քան զամէն ազգաց պատմութիւնքն սիրելագոյն է իւր սրտին... անորն է դպրոցն, յորում ծնաւ իմացական ու բարոյական կենաց, անորն են այն հանրային հաստատութիւնք, որոնց ծոցն իբր տուն Հայրենի բաց է և պիտի լինի միշտ իրեն և իրեններուն համար, վերջապէս անորն են անունը, զոր կը կրէ եւ արիւնը, որ կը հոսի իւր երակաց մեջ. ...ինչե՞ր չի պարտիր անհատն, այդ մեծ ընտանիքին. իւր կերած հացին, իւր հագած զգեստուն, իւր բնակած տան, իւր ընթերցած մատենին մէջ քանի-քանի այլազան ու աշխարհաց մարդկանց ճակատու քիրտն կայ, եւ առաւել ևս քանի շիջեալ անհետացեալ սերունդներու. կըսես «կաշխատիմ, կըվայելեմ». «կաշխատիս... բովանդակ կենացդ մէջ, եթէ դար մ' իսկ ապրէիր, չպիտի կրնայիր մի և եթ նկանակ յառաջ բերել առանձինն, քո անհատական կարողութեան միայն ապաստան, զուրկ անցեալ և արդի մարդկութեան նպաստներէն» (նույն տեղը, էջ 39)։ Շեշտելով այն, որ մարդ իր ձեռք բերած հաջողությունների համար պարտավոր է հասարակությանը, Պերպերյանը միաժամանակ նըկատել է, որ անհատն էլ իր հերթին պետք է հոգա հասարակության հոգսերը, նպաստի նրա առաջադիմությանը, կատարելագործմանը, քանի որ բարոյական օրենքից բխող օբյեկտիվ պահանջը դա է։ Այս առումով ճշմարիտ հաջողություն ասելով նա հասկացել է մարդու՝ իր նըմանների նկատմամբ պարտականությունների կատարում, պարտականություն, որն անհատն իբրև երախտագիտական վարձ հատուցում է հասարակությանը։ Ճշմարիտ հաջողությունը և բարոյական լինելը, այսպիսով, ըստ Պերպերյանի,

պարզապես միանշանակ հասկացություններ են. «... ճշմարիտ մարդ եակին համար տարբեր չէին կրնար ըլլալ յաջողութիւն և բարոյական. այնքան աւելի յաջողած է մարդ իր կենաց մէջ, որքան աւելի կրցած է բարոյական ըլլալ»,— գրել է նա։

Ելնելով պարտքի նման ըմբռնումից՝ նա մերժել է մարդկային գործունեության այնպիսի ըմբռնումը, ըստ որի, հաջողություն ասելով հասկացել են «բախտի տիրանալը», «հարստանալը»։ Խոսելով նման մարդկանց մասին՝ Պերպերյանը նկատել է, որ նրանք պարզապես զուրկ են պարտքի զգացումից, որ իրենց նպատակների իրականացման ժամանակ նրանք ելնում են ոչ թե բարոյականության ներքին օրենքներից, որոնք պարտադիր են, այլ արտաքին մղումներից, որոնք չեն բնութագրում նրանց որպես բարոյական էակների։ Այդպիսիների համար բնորոշ է այն, որ մարդը հանդես չի գալիս որպես նպատակ, այլ միջոց, որն արդարացնում է ամեն տիպի ստոր արարք, այն է՝ նենգությունը, ստախոսությունը, խարդախությունը, անիրավությունը և այլն։ Ահա հենց այդ հանգամանքը նկատի ունենալով է նա իր սաներին խորհուրդ տվել հեռու մնալ նման մարդկանցից. «Օհ, հեռի գնացեք դուք այդպիսի հարուստներէ ու այդպիսի հարստութենէ, ի բաց ի ձենջ շահն անիրաւ... մի նայիք թե բազմաց ապականեալ կարծիքը կարդարացնէ յաջողեալ անիրաւութիւնը. դուք ձեր խղճին նայեցեք, որ կը դատապարտէ ստութիւնը, խարդախութիւնը, զրկողութիւնը, զայլոցկերութիւնը, որ հակառակ այլոց որ անհոտ կը գտնեն որ եւ է ոսկի՝ արեան հոտ կը գտնէ այն ոսկոյն մէջ, ուր զրկելոն քիրտն ու աղքատին արցունքն են տարրացած» (նույն տեղը, էջ 35)։

Ցույց տալով, որ «հաջողիլը անպատճառ հարըստանալ չէ», իսկ եթե մինչև անգամ «այդ ալ լինէր, դարձեալ դատապարտելի կը մնար այն սկզբունք, թէ նպատակն զմիջոցը կարդարացնէ», ի վերջո Պերպերյանն այն միտքն է հայտնել, որ «մարդ պարտական է պարկեշտ նպատակների դիմել պարկեշտ միջոցներով» (նույն տեղը, էջ 37)։ Ավելին, որ «պատիւը անձին արժանապատուութիւնը պարտի միշտ նուիրական լինել նմա» (նույն տեղը)։ Բարոյական էակն ըստ նրա նա է, ով չի ղեկավարվում զուտ անձնական հակումներով և հակադրում իր շահերը հասարակությանը. «բարոյական մարդը հարկ է պատկառ տալ յուր տիրոջն»։ Պատիւը,— գրել է նա, «գիտե՞ք այն առաւել կամ նուազ խաբեալ համարումը չէ զոր այլք ունին մեր վրայ, այլ նոյնիսկ այն յարգանքը զոր մենք կը տածեմք մեր վրայ, այն վկայութիւնը զոր մեք մեր խղճին մէջ կրնամք տալ մեր անձին համար թէ ոչ երբեք թերացանք մեր պարտուց, ոչ երբեք թերացանք մեր բնութեան ազնուական ու զգացմանց դրդմանց» (նույն տեղը, էջ 37)։ Բարոյական մարդն այս առումով պետք է բարձր պահի իր պատիվը։

Պերպերյանը, իհարկե, չի ժխտել այն, որ մարդ իր ազնիվ ու ժրաջան գործունեությամբ կարող է հասնել հաջողության, այսինքն՝ տիրանալ հարստության։ Բայց դա էլ, ըստ նրա, չպիտի լինի ինքնանպատակ։ Այն պետք է օգտագործվի ո՛չ միայն անհատական, այլև ամբողջ մարդկության պետքերի համար։ «Եթէ պարկեշտ և ժրաջան գործունէութեամբ ճոխութեան հանդիպեցաք ձեր ճամբուն վրայ,— գրել է նա,— քաջ է, պայմանաւ որ գիտնաք զայն գործածել ձեր և ձեր նմանեաց օգտին. բայց ձեր գործունէութեան բուն նպատակը պիտի լինի պահել և զարգացնել ձեր էութիւնը՝ պահել և զարգացնել ջանալով միանգամայն այլոց, ձեր շուրջ եղողներուն, ձեր ընտանեաց, ձեր ազգին, ձեր հայրենակցաց, ձեր նմանեաց էութիւնն» (նույն տեղը)։ Ըստ նրա, կա երկու բան, որ կարող է արժեքավորել կամ իմաստավորել կյանքը։ Մեկը ուրիշներին, այսինքն՝ իր նմաններին օգտակար լինելու պարտականությունն է, և մյուսը՝ նրանց սիրո վայելումը, ում որ ծառայում է։ Երբ մարդ կատարում է մեկը և վայելում՝ մյուսը, կարող է ասել, թե ապրում է։

Շարադրելով Պերպերյանի հայացքները պարտքի կատեգորիայի վերաբերյալ, հարկ է նշել, որ նա, Կանտի պես, իր անձնական և հասարակական կյանքում միշտ էլ հավատարիմ է մնացել այդ սկզբունքին։ Ավելին, ոգեշնչված Կանտի «պարտականութեան փիլիսոփայութեամբ», գործադրել է բոլոր միջոցները, որպեսզի այն արմատավորվի հայ իրականության մեջ, դառնա հայ ժողովրդի յուրաքանչյուր անդամի վարքագծի հիմնական հատկանիշը։ Խոսելով այդ մասին՝ Հինդլյանը նշել է, որ Պերպերյանը եղել է «իսկական գաղափարի և պարտականութեան մարդ», մի մտածող, որն իր և ընդհանրապես մարդու կյանքի գերագույն նպատակը տեսել է պարտքի կատարման մեջ։ Ազատ բարոյական պարտքի գիտակցություն. ահա թե ինչով են բնորոշվում նրա բարոյագիտական ըմբռնումները, գրել է նա։ Ելնելով նշվածից՝ նա պարտքի գիտակցության հարցում Պերպերյանին բարձր է դասել ո՛չ միայն իր ժամանակի մի շարք մտածողներից, այլև անգլիացի հայտնի բարոյագետ ու մանկավարժ Հ. Սպենսերից, որը, ինչպես հայտնի է, մարդու կյանքի հիմնական նպատակը համարում էր ապրելը, իսկ ուսումն ու աշխատանքը՝ սոսկ միջոցներ այդ խնդրին հասնելու համար։ Ցույց տալով, որ նման հայացքը գիտական չէ, նա միանգամայն համամիտ էր իր ուսուցչի այն հարցադրմանը, թե «բարոյական կյանքին վախճանը չէ բնաւ ապրելն ընդ երկար,— այլ ապրելու նպատակն է պարտքը ընել անդադար» (Հ. Հինդլյան, ՊարտականուԲյան մարդը, «Բյուզանդիոն», ապրիլ, 8—21)։

Շեշտելով, որ բարոյագիտության հարցերում Պերպերյանը համոզված կանտական էր, Հինդլյանն այնուհետև ավելացրել է. «Կարծական բոլոր հրամայականները չեն կրցած խախտել իր մէջը խարսխուած հատու հրամայականը, որ իր ես-ը կը կազմեր այլ եւս» (նույն տեղը)։ Եվ ապա. «Իրեն համար, կյանքին նպատակը երջանկութիւնը չէր, նոյն իսկ եթէ այդ երջանկութիւնը ըլլայ ոչ թե Էպիկուրի մը կամ Զենոնի մը լոկ եսասիրական երջանկութիւնը, այլ Սբենսերի մը այլասիրական զգացումներով տոգորուած երջանկութիւնը։ Իրեն համար կյանքին նպատակն է—պարտականութիւնը կատարել, պարտականութիւն, իր զանազան ձևերով, խտացուած իւր «Հարիւր բարոյական երկտողեակ»—ներուն մեջ, որոնց իւրաքանչիւրը մեկ մասնիկն է իր հոգւոյն»։ Շարադրելով Պերպերյանի սույն միտքերը՝ Հինդլյանն այնուհետև գրել է. «Խստաբէր վարդապետութիւն, բայց որքան վսեմ։ Երանի այն մարդուն, որ այս հոգեւոր պաշարն ունի իր մէջ» (նույն տեղը)։

Թե որքան խորն էր նրա հավատքը Կանտի «պարտականութեան փիլիսոփայութեան» նկատմամբ, Հինդլյանի կարծիքով, դա երևում է նաև նրա անցած ուղու նկարագրից, ուր պայքարելով մարդկանց ստոր ու անսկզբունք գործողությունների դեմ և այդ հողի վրա կրելով ծանր զրկանքներ ու տառապանքներ, այնուամենայնիվ, չհրաժարվեց «պարտականութեան և տեսլականի գաղափարներից», չընկավ բարոյական մելանխոլիայի մեջ։ Ավելին, նա որքան շատ էր տեսնում մարդկանց չար ու անարդար արարքները, այնքան ավելի ամուր էր կառչում բարոյականության սկզբունքներին, գտնելով, որ վաղ թե ուշ գիտակցելով իրենց արարքների անբարոյական լինելը, նրանք կհրաժարվեն դրանցից. «Նա անխռով կ' տաներ տքնութիւններն, տառապանքը տեսլականով իբնոդիզացիալ Քանդյանը։ Եվ ով պիտի ըսէ մեզ, թե Պերպերեան իր ամենէն դժնդակ նեղութեանց մէջ իսկ, շատ աւելի երջանիկ չէր, քան թե անոնք, որ երջանիկ կ'նկատուին ընդհանրապես։ Երջանկութեան ամենէն ամուր, ամենէն տեւական, միակ անկապտելի և իրական տարրը բարձր իտեալի մը հետապնդումը չէ՞։ Ինչ անհամ բան մը պետք է ըլլայ կյանքն՝ առանց իտեալի։ Որքան դժնդակ կերպով իր հետեւեն քաշկռտել հարկ պիտի ըլլար կյանքն՝ առանց իտեալի» (նույն տեղը)։

Այսպիսով, Կանտն իր բարոյագիտական ըմբռնումներով խոր ազդեցություն է թողել XIX դ. հայ փիլիսոփայության վրա։ Նրա անվան հետ է կապվում կանտականության երևան գալը բարոյագիտության բնագավառում, որով սկիզբ է դրվում էթիկական պրոբլեմների մի նոր ըմբռնման։ Թեև նրա էթիկական հայացքները իդեալիստական բնույթ էին կրում, այնուամենայնիվ, ժամանակի կրոնաաստվածաբանական բարոյագիտության համեմատությամբ, առաջադիմական էին։ Դրանով էլ հենց պետք է բացատրել այն հանգամանքը, որ ժամանակի հայ առաջավոր մտավորականները, յուրացնելով նրա գաղափարները և ստեղծագործաբար օգտագործելով դրանք իրենց աշխատություններում, մեծապես նպաստեցին հայ տեսական մտքի զարգացմանը, բարձրացնելով այն մի նոր աստիճանի։

Այսօր էլ Կանտի բարոյագիտական ուսմունքը գտնվում է դիտական մտքի ուշադրության կենտրոնում, և երախտագետ մարդկությունը մեծ հետաքրքրություն է ցուցաբերում նրա թողած հոգևոր ժառանգության նկատմամբ։

# ՌՈՒՍԱԿԱՆ ՊՈԵԶԻԱՅԻ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

ՆԱՏԱԼՅԱ ԳՈՆՉԱՐ-ԽԱՆՋՅԱՆ

Ամենքի համար, ում թանկ ու մոտ է ռուս դասական գրականության վեհ ու սքանչելի աշխարհը, այս տարին նշանակալից էր նրանով, որ մեր երկրի հասարակայնությունը լայնորեն անդրադարձավ Ալեքսանդր Բլոկի ազնիվ ու անմոռաց կերպարին, նրա կյանքին ու ստեղծագործությանը: Այսօր իրավամբ սիրով ու հպարտությամբ կարող ենք Ալեքսանդր Բլոկին անվանել իր պատմական դարաշրջանի, ողջ մարդկության ճակատագրի համար շրջադարձային, խռովահույզ ու փոթորկալի XX դարի ռուս ազգային հանճարեղ բանաստեղծը:



Ալեքսանդր Բլոկը ժառանգել և իր ստեղծագործության մեջ դրսևորել է ռուս գրականության գլխավոր և լավագույն հատկությունները՝ ոգու ազնիվ խոյանքը, բարոյական պաթոսը, մարդասիրությունը, քաղաքացիությունը, պատմականությունը, կյանքի երևույթների խոր հասկացողությունը, գաղափարական ու գեղարվեստական անդուլ որոնումները, նրա անկապտելի ճշմարտացիությունը: Իր արտակարգ հարուստ բանաստեղծական տաղանդը, խորաթափանց միտքը, իր մշտատրոփ ասպետական սիրտը, այս ամենն ամբողջովին, անմնացորդ, շիտակ ու անշահախնդրորեն նա նվիրել է ռուս ժողովրդի ճակատագրի, փոփոխվող աշխարհում մարդու ճակատագրի մասին ճշմարտության որոնմանը և հավասարապես բարձր մնացել և՛ որպես բանաստեղծ, և՛ որպես քաղաքացի, իր հայրենիքի զավակ: Իր մեծ նախորդներից՝ Պուշկինից, Լերմոնտովից հետո, մեր հայրենիքում նա դարձավ ռուսական պոեզիայի այն գագաթը, որին տեսանելի են և՛ մարդկային հոգու ողջ խորությունն ու բոլոր հույզերը, և՛ երկրի, ժողովրդի պատմական ուղիները, դարաշրջանի մթնոլորտը, ժամանակի քայլքը:

Ալեքսանդր Բլոկը ռուսական պոեզիա մուտք գործեց XX դարի սկզբին: Մեռավ նա՝ քառասունը հազիվ բոլորած, 1921 թվականին: Նրա ստեղծագործական կյանքի երկու տասնամյակը կապված է բարդ ու պայթուցիկ, վիթխարի իրադարձություններով հագեցած պատմական ժամանակաշրջանի՝ հին աշխարհը քանդող, նորի սկիզբը դնող երեք հեղափոխությունների ժամանակաշրջանի հետ:

Ձևավորվելով ռուս մտավորականության փայլուն միջավայրում, դաստիարակված հայրենի կուլտուրայի լավագույն ավանդույթներով, մինչև ուղն ու ծուծը համակված նրա հոգևոր ու բարոյական վեհ սկզբունքներով, Բլոկն իր պոետական կյանքն ապրեց ոչ գեղեցիկ գրականության զտված ոլորտում և ոչ փղոսկրյա աշտարակում, այլ անվեհեր դուրս եկավ «բքաշունչ հրապարակ», կանգնեց հենց «ահեղ անդունդի» եզրին, իր զգայուն սիրտը բացեց բոլոր փորձությունների, «հողմերի», այն ամենի առաջ, ինչ բերում էր իր հետ հեղափոխության փոթորիկը:

1919 թվականի սկզբին, պատրաստելով իր ստեղծագործությունները նոր հրատարակության, Բլոկն իր օրագրում գրել է. «Ահա ես՝ մինչև 1917 թվականը, ճանապարհ հեղափոխությունների միջով. ճշմարիտ ճանապարհ»: Դժվարին, ողբերգական էր այդ ճանապարհը, լի ներքին պայքարով ու հակասություններով: Բայց և իրոք ճշմարիտ, վեհ ու գեղեցիկ, ազգային բանաստեղծին արժանի ճանապարհ էր այդ, քանզի ոչ թե մեկուսանում էր հայրենիքի ու ժողովրդի ուղիներից, այլ միանում, հարազատանում էր դրանց, որքան էլ ծանր լինեին, դառնում դրանց մասն ու արտահայտությունը, և պոետի անձնական ճակատագիրն ու ստեղծագործությունը համակվում էին համընդհանուր բովանդակությամբ, ստանում պատմական նշանակություն:

Բլոկն սկսել է որպես պոետ-սիմվոլիստ և ռոմանտիկ, հակված միստիկական տրամադրությունների ու մոտիվների, «իդեալական» խոյանքների: Երկրայինից դեպի երկնայինն էր ձգտում նա, գռեհիկ, մռայլ, քաոսային իրականությունից՝ «աստղային հեռուները», պատրանքների ու տեսիլքների աղոտ աշխարհները: Այդպիսիք էին հասարակական կյանքի ու գիտակցության սուր ճգնաժամի մթնոլորտից ծնված ու սնված ժամանակի հովերն ու ազդեցությունը. միստիկայի «վիրուսը» թափանցում ու տարածվում էր գեղարվեստական կուլտուրայի, արվեստի, փիլիսոփայական մտքի ոլորտը, իշխում մարդկանց հոգիներին, յուրովի դուրս բերելով նրանց անշարժությունից, ընճացումից, երևան հանելով հիվանդագին անբավարարվածությունը շրջապատող կյանքից:

Երիտասարդ Բլոկի քնարերգության մեջ իշխում էին անուրջներն ու ցնորքները, հոգու ալեծուփ մեղեդային հույզերը, «մշուշն» ու «գաղտնիքը», վերերկրյա լույսի և երկրային խավարի հակասական հակադրումները: Կյանքը, ուր «ամենուրեք ժողովուրդները ոսկու կամ հացի մասին են աղմկում», առտնին մտահոգություններով, գռեհիկ, ձանձրալի հոգսերով լի կյանքը վանում էր, այդ բոլորն օտար էր նրան, որքան հեռու դրանցից, այնքան լավ, մտածում էր նա և ապրում «տեսիլքների, երազների, հեռվում հնչող ձայների» ներքո, ապրում, զգում և երգում էր իր զգացմունքները, ինչպես «աստղային աշխարհից» երկիր իջած մի հրեշտակ, օտար՝ օտարների մեջ, կարոտով հիշում իր նախկին հայրենիքը, երկնային ջինջ կապույտով պատած, արշալույսի վարդագույն լույսով ողողված «հարազատ ափերը»: Ինչպես պատկերավոր ձևով նկատել է Բլոկին լավ իմացող ու հասկացող Կոռնեյ Չուկովսկին, «Իրոք նրա այն ժամանակվա բանաստեղծությունները երբեմնի հրեշտակի հուշեր էին»:

Բլոկի երազանքների երկնագույն ու վարդագույն աշխարհում ծաղկում էր պոետի ասպետական սերը, տեղի էր ունենում նրա բոլորանվեր, ողջախոհ ծառայությունը Չքնաղ Տիկնոջը, «լուսաճաճանչ սիրեցյալին»: Այդ շրջանում երիտասարդ Բլոկն իրոք իրական, երկրային սեր է տածել Լ. Դ. Մենդելեևայի նկատմամբ, որի հետ և կապել է իր կյանքը: Բուռն, ռոմանտիկ ու անաղարտորեն վերապրելով իրական, «երկրային» իր սերը՝ Բլոկը, իրեն հատուկ պոետական անկաշկանդ երևակայությամբ, վեհ իդեալի տենչանքով, հոգեկան գերագույն մաքսիմալիզմով վերակերտել է այն իբրև միֆ հավերժական կանացիությունը մարմնավորող Չքնաղ Տիկնոջ, որը կարող է դուրս բերել այստեղի մշուշից, փրկել սարսափից, տառապանքից, տանել հավերժական ուրախության, լաջվարդի ու արևի «երանավետ աշխարհները»:

Բլոկի առաջին գիրքը՝ Բանաստեղծություններ Չքնաղ Տիկնոջ մասին ըստ էության նվիրված է մի թեմայի՝ սիրո թեմային, որը պոետի հոգում ստացել է միստիկական երանգ ու իմաստ, և վեց տարում ստեղծված ավելի քան վեց հարյուր բանաստեղծությունները հորդել են ինչպես հարահոս մի հեղեղ, քնարական ելևէջների դյութիչ մի նվագ, դառնալով ռուսական ռոմանտիկական պոեզիայի գոհարներից մեկը: Հատկանշական է, սակայն, որ երիտասարդ Բլոկի սիրային լիրիկան, ձգտելով իդեալին, այդուհանդերձ իդիլիկ չէր հնչում: Այն լի էր մռայլ խոհերով, խռովքով ու տագնապով, երբեմն՝ նույնիսկ ողբերգական երանգով: Անձնական ամենաինտիմ ապրումներում սողոսկում էր սոցիալական փոթորկի նախազգացումը:

Հետհոկտեմբերյան Կատիլինա ակնարկում Բլոկը գրել է. «Կատոլլոսի, ինչպես և ամեն մի պոետի անձնական կիրքը հագեցած էր դարաշրջանի ոգով. դրա ռիթմը, դրա չափը այնպես, ինչպես և պոետի բանաստեղծությունների ռիթմն ու չափերը, ներշնչել էր ժամանակը»: Այս միտքն առաջին հերթին վերաբերում է իր՝ Բլոկի ստեղծագործությանը, նրա կյանքի տարբեր ժամանակաշրջանում և, մասնավորապես՝ Չքնաղ Տիկնոջը նվիրված շարքին: Նրա պատանեկան ինտիմ հույզերը ևս համակված էին ժամանակակից ոգով՝ նույնպես հագեցած իր դարաշրջանի փոթորկով ու տագնապով:

1910 թվականին Բլոկը գրել է իր հուշատետրում. «Կախարդությամբ քաոսի անէացումը՝ «Բանաստեղծություններ Չքնաղ Տիկնոջ մասին» շարքը, արդեն բարոյական դավանանք է, արդեն հասարակայնություն»: Բլոկը փոր-

ձում էր իր բանաստեղծությունների իդեալով, դրանց բարոյականությամբ ու երաժշտությամբ չեզոքացնել այն ամենը, ինչ նա կոչում էր քաոս— ծառացած տարերքը, մոտեցող փոթորկի տագնապահույզ զգացումը, որն այնքան ակներև էր դարաշրջանի մթնոլորտում: Բայց Բլոկը շուտով գիտակցեց «քաոսի չեզոքացման» այդ փորձի անհնարինությունը, և նրա հայացքը, նրա սիրտն ու լսողությունը, նրա պոեզիան սկսեցին վերացական, երազային հեռուներից ավելի ու ավելի դառնալ դեպի կենդանի կյանքը, կրքերն ու հույզերը, իրականության հակասական երևույթներն ու ծանր պատկերները, պայքարի ու տագնապի աշխարհը, դեպի քաղաքի առօրյա աղմուկը, պոետի պետերբուրգյան բնակարանի լուսամուտներից այն կողմ ահագնացող ամպրոպը:

Պոետի համար վճռական խթան հանդիսացավ **1905** թվականի հեղափոխությունը: Նա կարողացավ տեսնել «կյանքի անթափանց սարսափը», գիտակցել հասարակական բարդ ու լարված իրավիճակը և այդուհետ նրա ստեղծագործության մեջ սկսեց զարգանալ խոր սոցիալական թեման, ռեալ իրականության հակասություններից ծնված հոգեբանական ու բարոյական մոտիվները:

Փոխվեց Բլոկի լիրիկական հերոսը: Նա այլևս մարդկանցից օտարված գեղեցիկ Տիկնոջ գալստյանն սպասող պատանին չէր: Նա դուրս էր եկել «քաղաք», քաղաք՝ իր խուլ նրբանցքներով ու ծայրամասերով, «կուշտերով» ու «քաղցածներով», անհամար «դեղին պատուհաններով», որոնցից այն կողմ անուրախ կյանքն էր, իր ծխարձակ գործարաններով և մարդկանց սպանող, անեծքի նման ծանր աշխատանքով, իր մութ անկյուններով, ուր մարդիկ մոռացում են որոնում գինու, կրքի, «էլեկտրական արթմնի երազների» մեջ:

Բլոկը ո՛չ միայն թախծով ու հանդիսավորությամբ հրաժեշտ տվեց իր պատանեկությունը գերող անիրական կերպարին—

Ты в поля отошла без возврата
Да святится Имя Твое!—

այլև նոր բանաստեղծություններում ու քնարական դրամաներում նա ցավով հեգնեց իր երբեմնի հավատը, պսակազերծեց միստիկական տրամադրությունները, ոչնչացրեց դրանք չար ու դառը ծաղրով:

Բլոկի և նրա գրական բարեկամների՝ սիմվոլիստների, ճանապարհները բաժանվում են: Պոետի երեկվա խանդավառ, նրա երգեցիկ տողերի գաղտնիքներով ու հմայքով արբեցած երկրպագուները գրական մամուլում ամենայն արությամբ կշտամբում, պարսավում են նրան:

Բայց խռովահույզ ռոմանտիկ, մարդկային մեծ սրտի տեր բանաստեղծ Ալեքսանդր Բլոկը, ի տարբերություն իր գրական շրջապատի, արդեն հաղթահարել էր միստիկայի և սուբյեկտիվիզմի մշուշը, դուրս եկել «զուտ պոեզիայի» նեղ աշխարհից, նրա հոգում արթնացել ու հնչում էր դարի ճշմարտության սուր զգացումը, արթնացել էր արվեստագետի և քաղաքացու՝ իր ժողովրդի և երկրի նկատմամբ պատասխանատվության ու պարտքի զգացումը:

«Արվեստը պետք է արտացոլի կյանքը»,— գրում է Բլոկը **1906** թվականին, իսկ 1907 թվականի գրական ընդհանրացումներ հոդվածում ասում է, որ գրողի համար գլխավոր հարցն այժմ այն է, թե «ինչպե՞ս վարվել, ի՞նչ անել բանվորի ու գեղջուկի հետ, որը հենց հիմա, այս րոպեին, անհետաձգելիորեն հարցնում է՝ ի՞նչ անել»: Նրա բանաստեղծություններում հնչում են կարիքի, ստրկական աշխատանքի, խեղճության ու աղքատության մոտիվները:

Мы встретились с тобою в храме
И жили в радостном саду,
Но вот зловонными дворами
Пошли к проклятью и труду.
Мы миновали все ворота
И в каждом видели окне,
Как тяжело лежит работа
На каждой согнутой спине...

Քաղաքի մշուշում Բլոկը լսում է ապստամբության ձայնը: Եվ ահա ռուս-ճապոնական ամոթալի պատերազմից հետո բռնկվում է **1905** թվականի հեղափոխությունը: Հեղափոխության իրադարձությունները նոր ապրումներ են ծնում պոետի հոգում, որոնց արձագանքն է դառնում բանաստեղծությունների՝ 1905 վերնագիրը կրող շարքը՝ զետեղված նրա երկրորդ գրքում: Բլոկի պոեզիան ակնհայտորեն ուղղվում է ռուս մեծ գրականության ավանդների հունը՝ հարստանում կենդանի կյանքի կերպարներով, խնդիրներով, իրականության «անիծյալ» հարցերով, հոգածու ուշադրությամբ, տագնապով ու ցավով մարդու համար, հայրենիքի ու ժողովրդի բախտի վերաբերյալ տառապալից խոհերով: Առավել անհաշտ է դառնում նա իրեն շրջապատող իրականության հանդեպ, առավել հստակ է գիտակցում վիթխարի և, իր պատկերացմամբ, աղետային մոտալուտ իրադարձությունները:

«Այն իրոք մեծ, իրոք տառապալից անցման դարաշրջանը, որում մենք ապրում ենք, զրկում է մեզ բոլոր հմայքներից,— գրել է նա 1908 թվականին,— և բոլոր խաչմերուկներում մեզ դարանակալում է ինչ-որ թանձր խավար, իրադարձությունների ինչ-որ հեռավոր բոսորագույն հրացոլք, իրադարձություններ, որոնց մենք այրող կարոտով սպասում ենք, որոնցից սոսկում ենք, որոնց նկատմամբ հույս ենք տածում... Այո՛, մենք մեծ խռովության նախօրեին ենք: Մենք իրադարձությունների նախօրեին ենք և այն, ինչ չի հաջողվել առաջին, երկրորդ և երրորդ անգամ, չորրորդ անգամ կհաջողվի»:

Թե ինչպիսի բացառիկ ուժով էր արձագանքվում այդ խռովահույզ դարաշրջանը մեծ պոետի զգայուն, կանխագուշակելու ձիրքով օժտված հոգում, ինչպես էր այն արտացոլվում նրա հույժ լարված պոեզիայում, գեղեցիկ ձևով ասված է Բորիս Պաստեռնակի՝ Բլոկին նվիրված տողերում.

Блок на небе видел разводы.
Ему предвещал небосклон
Большую грозу, непогоду,
Великую бурю, циклон.

Блок ждал этой бури и встряски
Ее огневые штрихи
Боязнью и жаждой развязки
Легли в его жизнь и стихи.

Բլոկն զգում էր, որ աշխարհը չպետք է լինի այնպիսին, ինչպիսին է, և պոետական արտասովոր ուժով ժխտում էր այդ աշխարհը, դրա անմարդկային, անբարոյական էությունը: Նրա քնարերգության մեջ այդ աշխարհն ընկալված և արտահայտված է իբրև «ահավոր աշխարհ» (այդպես է կոչվում նրա լավագույն բանաստեղծական շարքերից մեկը), ուր ամեն ինչ խեղված է ու խառնակ: Այդ իսկ պատճառով Բլոկի քնարական հերոսի ձայնի մեջ այնպես ուժգին են թախիծն ու հուսահատությունը: Այդ պատճառով էլ այդպես թախծոտ է նրա դեմքը և ողբերգականորեն երկատված է նրա հոգին լույսի ու խավարի, հույսի ու անհուսության, հավատի ու անհավատության, լինելության հմայքի, կյանքով արբենալու և դառը հուսահատության միջև: Այդ է պատճառը, որ Բլոկի քնարերգության մեջ այնպես առատ են «իրիկունները» ու «գիշերները», այնպես սակավ՝ «արշալույսները», և նրանցում իշխող տարերքը «արևը» չէ, այլ՝ «քամին», ուժգին, ամպակուտակ, հողմագալար, ձյունախառն քամին: Այդ է պատճառը, որ մարդու՝ Բլոկի մոտ այնպես բարձրահունչ հումանիստական թեման, ըստ էության, վեր է ածվում «բարությունից ու լույսից» զուրկ աշխարհում մարդու կործանման թեմայի:

Նրա ողջ քնարերգության մեջ միայնակ, կործանվող մարդն է, ողբերգական մի կերպար, որով մենք պատկերացում ենք կազմում կյանքի սահմռկեցուցիչ հանգամանքների մասին: Հին աշխարհում մարդու կործանման ողբերգությունը Բլոկը հասկացել և արտահայտել է պոետական վիթխարի ուժով:

Մեծ գեղագետի ստեղծած բնավորությունները միշտ այս կամ այն չափով ներառում են որոշակի միջավայրի, ժամանակի մարդկանց տիպական հատկանիշները, և այդպիսով պատկերացում տալիս հասարակական օրինաչափությունների մասին: Քնարերգության մեջ այդ ներկայանում է յուրօրինակ ձևով, իբրև մարդկային կոնկրետ ապրումներ, որոնցով և ընթերցողը դատում է դրանք ծնող կյանքի մասին: Այդպիսին է և Բլոկի քնարերգությունը: Երբ նա գրում է, թե

Земное сердце уставало
Так много лет, так много дней...
Земное счастье запоздало
На тройке бешеной своей!—

ապա այդ անհուսությունը միայն պոետի անձնական տրամադրության արտահայտությունը չէ: Դրանում դրսևորված է կյանքի նկատմամբ մարդու որոշակի վերաբերմունքը՝ ծնված այդ իսկ կյանքից: Բլոկն արտացոլել է այն ծանր հոգեվիճակը, որը երկու հեղափոխությունների միջև ընկած ժամանակաընթացքում այնպես բնորոշ էր ռուս մտավորականության լայն շրջաններին:

Не таюсь я перед Вами,
Посмотрите на меня:
Я стою среди пожарищ,
Обожженный языками
Преисподнего огня—

ասում է Բլոկը, սակայն նրա բանաստեղծությունները մակերեսորեն ընկալողը միայն կարող է տեսնել դրանցում «կյանքը հրո ճարակ դարձնելու» պոեզիա: Չնայած խորապես անհատական է Բլոկի քնարերգությունը, հիմնըված անձնական կենսափորձի վրա, բայց արտացոլում է հասարակական կյանքը, հասարակական է իր նշանակությամբ ու նպատակայնությամբ:

Ողբերգական, խռովահույզ է հնչում Բլոկի պոեզիայում սիրո թեման: Բուրժուական բարոյազուրկ իրականության «ահավոր աշխարհում» սերը կորցնում է վսեմ, ոգևորող ուժը, իր լույսն ու անաղարտությունը, այն «անուրդի» է դրվում, և Նվաստացում բանաստեղծության մեջ, վշտանալով «սրիկաների» կողմից նվաստացված, ոտնահարված սիրո համար, պոետը դառնությամբ հարցնում է.

Разве это мы звали любовью?
Разве так суждено меж людьми?

Սերը կորցնում է իր ոգեշնչվածությունը, մարդկային էությունը, օրհնյալ կրքից վեր է ածվում անիծյալ կրքի, անհագ «սև արյան»: Սերը դառնում է մոռացումի, վերացման ուղի:

Миры летят. Года летят. Пустая
Вселенная глядит в нас мраком глаз.
А ты душа, усталая, глухая,
О счастии твердишь,—который раз?
...Когда ж конец? Назойливому звуку
Не станет сил без отдыха внимать...
Как страшно все! Как дико!—
Дай мне руку,
Товарищ, друг! Забудемся опять.

Սակայն Բլոկի սիրո լիրիկայի, ինչպես և նրա ողջ պոեզիայի անանց թովչանքի ու հըմայքի աղբյուրը ո՛չ միայն անողոք ճշմարտությունն է «սարսափի» ու «խավարի» մասին, այլև նրա լուսավոր, ոգեշունչ, հրճվագին հընչեղությունը: Բացառիկ հարուստ են պոետի սիրային հույզերի նրբերանգները և, հիրավի, կախարդիչ ուժով ու վարպետությամբ է արտահայտել նա այդ զգացմունքի բոլոր ելևէջները՝ սիրո առաջին նրբագեղ քնքշանքից մինչև լիակատար ոգեշունչ-սիրո բերկրանքը, անակնկալ հանդիպումից ծնված հոգու անըշմարելի հույզից մինչև գլխապտույտ կրքի կանխազգացումը: «Միայն սիրահարվածը իրավունք ունի մարդ կոչվելու», ասում էր երիտասարդ Բլոկը, ոտք դնելով «հսկայածավալ աշխարհը»: Եվ չնայած այդ աշխարհը բերեց նրան հոգեցունց, ծանր հուսախաբություններ, բայց նա չկորցրեց հավատը, հոգին չսառեց, չմարեցին երազանքը, լույսը, կրակը, նա միշտ հակված էր սիրահարվածության: Դրա վկայությունն է Բլոկի սքանչելի, դյութիչ բանաստեղծությունների երկու շարքը՝ Ձյունե դիմակը և Կարմենը, որոնք սիրային լիրիկայի անմահ գլուխգործոցներ են:

Բլոկի քնարերգության գլխավոր հմայքը,— ինչպես նկատել է Կոռնեյ Չուկովսկին,— «նրա զարմանալի երկվությունն է, հեգնանքով բզկտվող պաթոսը, քնարերգությամբ պարտվող հեգնանքը, լուտանք ու գովերգ՝ միաժամանակ: Ամեն ինչ նրա հոգում երկատվում էր, և անսովոր էին հավատի ու անհավատության այդ համադրությունները, որոնք այնպես հարազատացնում էին նրան ժամանակակցի հոգուն... Ուրիշներից լավ գիտեր նա, որ կանայք, որոնց ինքը համբուրում է, ստվարաթղթից են, բայց, այնուամենայնիվ, երգում էր նրանց այնպես դյութիչ, որ նրա սիրո երգերը ողջ սերնդի համար դարձել էին սիրո աղոթագիրք: Ո՞վ չի հիշում, որ մեր սերնդի մարդիկ, սիրահարվելով, դիմում էին Բլոկի պոեզիային, որովհետև Բլոկն ու սերը մեզ համար անանջատ էին: Հենց այն, որ սիրո այդ հիմները զուգորդվում էին սիրո ծաղրի հետ, դարձնում էր դրանք ժամանակակից: Բլոկը մեր բանաստեղծը չէր լինի, եթե երկատված չլիներ»:

Հիրավի բազմալար է Բլոկի պոեզիան: Ո՛չ միայն թախիծ, հուսահատություն, ո՛չ միայն կծու հեգնական ծաղր, ո՛չ միայն հոգու ամայացման ողբերգություն, ահավոր աշխարհում մարդու կործանում, «անիծյալ» իրականության պսակազերծում, այլ և կրքոտ զայրույթ ու ցասում, և՛ ընդվզումի, և՛ ապստամբության կոչ: Քաղաքացիական քնարերգության իր հիանալի շարքի՝ Յամբեր-ի համար նա բնաբան է ընտրել Յուվենալիուսի «Զայրույթն է բանաստեղծություն ծնում» արտահայտությունը: «Արհամարհանքը հասունանում է զայրույթից, իսկ զայրույթի հասունությունը խռովությունն է»,— գրել է Բլոկը, իսկ բանվորին ուղղված մի այլ բանաստեղծության մեջ նա կոչ է անում.

Эй, встань и загорись и жги!
Эй, подними свой верный молот,
Чтоб молнией живой расколот
Был мрак, где не видать ни зги!

Եվ նա դիմում էր ինքն իրեն՝ իբրև պոետի և քաղաքացու:

На непроглядный ужас жизни
Открой скорей, открой глаза,
Пока великая гроза
Все не смела в твоей отчизне,—
Дай гневу правому созреть,
Приготовляй к работе руки...
Не можешь — дай тоске и скуке
В тебе копиться и гореть...
Но только—лживой жизни этой
Румяна жирные сотри,
Как боязливый крот, от света
Заройся в землю—там замри,
Всю жизнь жестоко ненавидя
И презирая этот свет,
Пуская грядущего не видя,
Дням настоящим молвив: н е т!

Բլոկի՝ շրջապատող իրականությունը ժխտող, մերկացնող պոեզիան միաժամանակ լի էր կյանքի նկատմամբ տածած սիրով, ապրելու կրքոտ տենչով, ապագայի, մարդու նկատմամբ հավատով: «Բլոկի հոգում կար ուրախության ու լույսի նույնպիսի աղբյուր, ինչպես և հուսահատության ու հոռետեսության»,— ասում է պոետի կինը՝ Լ. Դ. Մենդելեևա-Բլոկը:

О, я хочу безумно жить!
Все сущее—увековечить,
Безличное — вочеловечить,
Несбывшееся — воплотить!

Пусть душит жизни сон тяжелый,
Пусть задыхаюсь в этом сне,—
Быть может, юноша веселый
В грядущем скажет обо мне:

**Простим угрюмство—разве это**
**Сокрытый двигатель его?**
**Он весь—дитя добра и света,**
**Он весь—свободы торжество!**

Այս բանաստեղծությունը կարելի է դարձնել Բլոկի ողջ ստեղծագործության բնաբանը:

Մարդ-«բարության ու լույսի զավակ», մարդ-«բերկրանք ազատության». այդպիսին էր այն հիմնական նպատակը, որին ձգտում էր Բլոկը, այդ էր նրա իդեալը: Հանուն այդ իդեալի Բլոկը ժխտում էր «ներկա օրերը», դրանով ստուգում էր իրեն, բարձր էր գնահատում իր մեջ կյանքի հավիտենական այրումը:

Благословляю все, что было,
Я лучшей доли не искал.
О, сердце, сколько ты любило!
О, разум, сколько ты пылал!

Բլոկյան սիրո ուժը, նրա սրտի ու մտքի վեհ կրակը, խոր հավատը արտացոլվել են հատկապես Ռուսաստանի, հայրենիքի, նրա ուղիների ու ճակատագրի թեմային նվիրված ըստեղծագործություններում (ինչպես և նրա շատ հոդվածներում ու նամակներում):

«Երկրի ապագան, ժողովրդի ճակատագիրը, նրա դերն աշխարհում հասկանալու, զգալու, գուշակելու բուռն ձգտումը», ինչպես իրավամբ ասել է Գորկին, միավորում էր բոլոր ռուս մեծ գրողներին, որքան էլ տարբեր լինեին նրանք իրենց ստեղծագործական անհատականությամբ:

1908 թվականին Բլոկն առաջարկում է գեղարվեստական թատրոնին՝ բեմադրել Ճակատագրի երգը պիեսը, որում նա ձգտել է հաղորդել իր՝ «փոթորկի կանխազգացումը» և որին նա շատ մեծ նշանակություն էր տալիս: Այդ պիեսի առնչությամբ Կ. Ս. Ստանիսլավսկուն նա գրել է. «...Իմ թեման ռեալ, կենդանի կյանքն է, այն մեծ է ո՛չ միայն ի ն ձ ն ի ց, այլ՝ մեր բոլորից և այն մեր համընդհանուր թեման է: Մենք՝ բոլոր ո ղ ջ ե ր ս, այսպես թե այնպես կգնանք դեպի այն. Մենք չենք գնա, նա ինքը կգա դեպի մեզ, արդեն գ ա լ ի ս է: Բացենք մեր սիրտը, հնամակի ցնծությամբ, նոր հույսերով, նոր ուժերով... Չբացենք մեր սիրտը— կմեռնենք (գիտեմ այդ, ինչպես երկու անգամ երկուսը՝ չորս): Հարյուր ու կես միլիոնանոց ուժը կգա մեզ վրա, որքան սվիններ էլ դեմ հանենք նրան, և ս ր բ ո ր ե ն ո տ ն ա տ ա կ կանի մեզ, մեր կուլտուրան... Քարը քարին չի թողնի: Այդ տեսքով է հառնում իմ առաջ իմ թեման, Ռուսաստանի թեման (մտավորականության և ժողովրդի հարցը՝ մասնավորապես): Գիտակցաբար և անդառնալիորեն այս թեմային եմ ես ն վ ի ր ո ւ մ կ յ ա ն ք ս»:

Իսկ մի անգամ, արդեն կյանքի վերջին տարիներին, պոեզիայի երեկոներից մեկում, երբ մի քանի բանաստեղծություն արտասանելուց հետո խնդրեցին նրան արտասանել Ռուսաստանին նվիրված բանաստեղծություններ, նա պատասխանեց. «Այդ բոլորը Ռուսաստանի մասին է»: Եվ, անշուշտ, իրավացի էր: Քանի որ ինչի մասին էլ նա գրել է, ըստ էության, գրել է Ռուսաստանի մասին, նրան են նվիրված իր ցավը, տառապանքը, իր սերը, հույսն ու հավատը, և դրա համար էլ Ալեքսանդր Բլոկի անվան հետ է կապվում պատկերացումը ազգային մեծ պոետի մասին:

Ռուսաստանի զգացումը, խոհը Ռուսաստանի մասին արտակարգ կերպով բնորոշ են Բլոկի քնարական հերոսին, և դրանցում երևան են գալիս իրականության երևույթների նկատմամբ նրա վերաբերմունքի նույն բարդությունն ու հակասականությունը: Կյանքի նկատմամբ պոետի հարափոփոխ, բարդ ու խոր վերաբերմունքը («Ե՛վ նողկանքը կյանքից, և՛ խենթ սերը նրա հանդեպ») այստեղ ևս՝ զարգացող այս թեմայում, ծնում է հույզերի ու խոհերի բազմերանգություն:

Տարբեր կերպ է ներկայանում Ռուսաստանը Բլոկի բանաստեղծություններում: Ե՛վ լուսավոր, արտասովոր, գեղեցիկ, և՛ խավար, մթամած ու մեղսավոր, և՛ հեզ, լացակումած, և՛ քաջակորով, հերոսական: Սակայն այդ ամենով հանդերձ կերպարանափոխվող Ռուսաստանը Բլոկի մոտ միշտ իրենն է, բլոկյան անկրկնելի Ռուսաստանը՝ «լացակումած ու հինավուրց գեղեցկությամբ».

Все та, что была, и не та...

Այդ պոետական կերպարը նման տպավորիչ ուժով հառնում է Բլոկի սրտահույզ տողերից, որովհետև դրանցում պարզորոշ հնչում է քնարական խոր ենթատեքստը. իր՝ պոետի հուզաթաթավ ապրումները, կենդանի անմիջական զգացմունքը՝ արտահայտված անկրկնելի, միայն Բլոկին հատուկ ձայներանգներով: Նա արտակարգ կերպով ընդլայնեց շրջանակներն այն քնարերգության, որը կոչվում է հայրենասիրական: Նրա հայրենասիրությունը բարդ,

երկակի զգացմունք է— սեր-քնքշանք և սեր-թշնամանք, հոգատար և պահանջկոտ սեր, «խիստ», «վոլգյան», «գործիական», ինչպես կոչում էր այն ինքը՝ Բլոկը: Ռուսական իրականության ահավոր կողմերի մասին Բլոկը միշտ գրում էր առավել խստությամբ, բայց Ռուսաստան-հայրենիքը ամենևին էլ նրա համար նույնական չէր այդ իրականությանը. այն նրա համար լայն հասկացություն էր: Նա ասում էր, որ «այդ հասկացությունն առավել հարազատ են բնորոշում «ժողովուրդ», «ժողովրդական ոգի», «տարերք» բառերը, սակայն դրանցից ամեն մեկն առանձին այնուամենայնիվ չի սպառում «Ռուսաստան» բառի երաժըշտական ողջ իմաստը»: Այն նրա համար անծայրածիր ու ազատ տարածք էր, երկիր ու բընություն, պատմություն ու ժողովուրդ, կուլտուրա և լեզու, այն նրա համար և՛ անցյալ էր, և՛ ներկա, ապագա, Կուլիկովյան մարտադաշտի, անցյալի հերոսական մարտերի Ռուսաստան, և՛ «երազային Ռուսաստան», հեղափոխության հզոր, թարմացնող հողմով բռնված, նոր ուղիներ ելնող Ռուսաստան:

Հայրենիքի մասին Բլոկը միշտ գրել է զարմանալիորեն անձնական ձայներանգով.

Русь моя, жизнь моя, вместе ль нам
маяться?
. . . . . . . .
О Русь моя! Жена моя! До боли
Нам ясен долгий путь...

Ռուսաստան-հայրենիքը՝ նրա «սիրելին» հարսնացու-աղջկա, կնոջ, մոր կերպարանքով մնում է Բլոկի ամենախոր, քնարական թեման, միակ լուսավորը կյանքում, դրա իմաստն ու արդարացումը: Նրա այդ «երազային Ռուսաստանն» է միայն ունակ ուղի ցույց տալու ուղեկորույս պոետին, «հնչեցնելու նրա զանգերը»,

Чтобы распутица ночная
От родины не увела,

Վերջին ողջերթ բանաստեղծության մեջ անցած կյանքի անուրախ օրերն ասես ամփոփող նրա քնարական հերոսի աչքի առջև իբրև տեսիլք, «դրախտի թեթև կերպար», հառնում է իր «սիրելին»՝ իր Ռուսաստանը: Այդ վերջին ժամին հարազատ վայրերի, ռուսական համեստ բնապատկերի մասին իր հիշողություններում արտացոլված է նրա ողջ թախծոտ սերը.

...Что ж, конец?
Нет... Еще леса, поляны,
И проселки, и шоссе,
Наша русская дорога,
Наши русские туманы,
Наши шелесты в овсе...

Վեհ հայրենասիրությամբ է համակված Բլոկի Կուլիկովյան մարտադաշտում պատմահերոսական շարքը: Հերոսական անցյալի թեման հնչում է որպես այրող արդիականության թեմա, միայնության թախիծը, ցավը, պոետի ողբերգական կանխազգացումները միահյուսվում են սրտահույզ հայրենասիրությանը և ժողովրդի, նրա գալիք հաղթանակի նկատմամբ անսասան հավատին:

«Ռուս գրականության էջերում,— գրել է Բլոկը,— Պուշկինից և Գոգոլից մինչև Տոլստոյ, XIX դարի տառապյալ ռուս հասարակական գործիչների հառաչանքներում, ռուս գեղջուկների լուսավոր ու անկաշառ, սուսկ ժամանակավորապես մթագնած հայացքներում մեզ կտակված է կենդանի, հզոր ու պատանի Ռուսաստանի վիթխարի (միայն դեռևս չբանտված մտքի երկաթյա օղակով) կոնցեպցիան:

...Եթե կա մի բան, որով կարելի է ապրել, ապա միայն այդ է: Եվ, եթե որևէ տեղ Ռուսաստանն «առնականանում է», ապա, անշուշտ, միայն ռուսական հեղափոխության սըրտում՝ բառիս ամենալայն իմաստով, ներառյալ այստեղ ռուսական գրականությունը, գիտությունն ու փիլիսոփայությունը, և՛ երիտասարդ գեղջուկին իր «մեն-միակ խոհով», և՛ ճշմարտաշող դեմքով պատանի հեղափոխականին, և՛ ընդհանրապես այն բոլորը, ինչ լի է խռովքով, շանթ ու փոթորկով, էլեկտրականությամբ: Այդ փոթորկի դեմ անզոր է ամեն շանթարգել»:

«Կենդանի, հզոր, պատանի Ռուսաստանի» այս ըմբռնումից ծնվում էր ապագայի հանդեպ Բլոկի անսասան հավատը, որով տոգորված էին նրա Յամբերը, և ցարական ինքնակալության ու նրա կողմից ստեղծված կենսակարգի նկատմամբ այն բուռն հեղափոխական ատելությունը, որով թաթավված էր, ինչպես գրել է Բլոկն իր մայրիկին, նրա Հատուցում սքանչելի պոեմը: Այդ պոեմի խորիմաստ բնաբանը՝ Իբսենի «Պատանեկությունը՝ դա հատուցում է» արտահայտությունը, նույնպես բացահայտվում է հենց «կենդանի, հզոր ու պատանի Ռուսաստանի» կոնցեպցիայի լույսի ներքո:

«Հանճարն ամենից առաջ ժողովրդային է», — հավաստում է Բլոկը: Եվ դարասկզբի բազմազան գրականության մեջ նա անսխալ ընտրում, առանձնացնում էր իրեն հոգեհարազատ ձայները, որոնք արձագանքն էին ժողովրդի ոգու և սրտի խորախոր հույզերի: Ահա ինչու այդքան բարձր էր դասում նա Գորկու դերը ռուսական կյանքի ու գրականության մեջ, այդպիսի ջերմությամբ ողջունեց պատանի Եսենինի ասես ժողովրդական ակունքներից հորդացող ջինջ ու հստակ ձայնը. ահա ինչու այդքան մոտ ու հարազատ եղավ նրան և հայ ժողովրդի սրտի մեծ թարգման Ավետիք Իսահակյանը: Բլոկը նրան համարեց այդ ժամանակաշրջանում «ողջ Եվրոպայում թերևս նմանը չունեցող թարմ ու անմիջական մի տաղանդ» և սիրով իր ժողովրդի սեփականությունը դարձրեց հայ պոեզիայի մեծ վարպետի քնարական երգերը:

Գեղագետի մեջ նա ամենից բարձր է գնահատել կապը ժողովրդի հետ, այդ կապի գիտակցումը, սեփական պարտքի գիտակցումը, պատասխանատվությունը ժողովրդի առաջ, ժողովրդի ձգտումներն ու խոհերն արտահայտելու ունակությունը: Այդպիսին էր հենց ինքը՝ Բլոկը, որ իր ճակատագիրն ու ստեղծագործությունն ամբողջովին կապեց հարազատ ժողովրդի ճակատագրի ու կենսատենչ ձգտումների հետ: Ահա ինչու այդպես օրինաչափորեն, այդքան մեծ ոգևորությամբ ողջունեց և ընդունեց Ալեքսանդր Բլոկը Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը: Դեռևս նախահոկտեմբերյան օրերին նա գրել է. «Նոր անձնական ոչինչ չկա, իսկ եթե լիներ իսկ, անհնար կլիներ այն զգալ, քանզի կյանքի ողջ բովանդակությունը դառնում է համաշխարհային հեղափոխությունը, որի գլուխ կանգնած է Ռուսաստանը»: Երբ կատարվեց այդ հեղափոխությունը, Բլոկն ընդունեց այն անմիջապես և աներկբայորեն: Թերևս ռուսական մտավորականության ներկայացուցիչներից առաջինն էր նա, որ մամուլի «Կարո՞ղ է մտավորականությունը գործել բոլշևիկների հետ» հարցին պատասխանեց՝ «Կարող է և պարտավոր է»: Եվ նա պրոլետարական հեղափոխությանը նվիրեց այն ամենը, ինչ ուներ՝ տաղանդը, սերը, կյանքը: Այնքա՜ն շատ հեղափոխական եռանդ ու կամք կար Բլոկի մեջ, որ նա դրանով վարակում էր բոլորին, ովքեր այս կամ այն կերպ շփվում էին իր հետ: «Պետք էր ամբողջովին քարացած ու ոսկրացած լինել,— հիշում է Բլոկի կինը,— նրա կողքին ապրելու և չըհասկանալու համար հեղափոխության պաթոսը»:

Հոկտեմբերին հաջորդած առաջին իսկ ամիսներին Բլոկն ապրեց ստեղծագործական բարձրագույն վերելք: 1918 թվականի հունվարին նա հանդես եկավ Մտավորականությունը և հեղափոխությունը հոդվածով, որն ավարտեց «Ողջ մարմնով, ողջ սրտով, ողջ գիտակցությամբ ունկնդրեք հեղափոխությանը» նշանավոր կոչով: Նույն տարվա սկզբին էլ Բլոկը գրեց իր խոշորագույն և վերջին ստեղծագործությունները՝ Տասներկուսը պոեմը և Սկիֆները:

Տասներկուսը պոեմն առաջին խոշոր ստեղծագործությունն է, ուր պոետական վիթխարի ուժով ներկայացվել է հեղափոխական կենդանի արդիականությունը: Այս է Ալեքսանդր Բլոկի պատմական մեծ սխրանքը. պոեմն ավարտելու օրը իր օրագրում ամենայն իրավամբ նա գրել է. «Այսօր ես հանճար եմ»:

Այն օրերին, երբ պոետն արարում էր Տասներկուսը պոեմը, հաճախ էր հանդիպում Ա. Վ. Լունաչարսկուն և սովետական իշխանության ու բոլշևիկյան կուսակցության այլ ականավոր գործիչների: «Ձեզ հետաքրքրում է քաղաքականությունը, կուսակցության շահերը,— ասել է Բլոկը այդ հանդիպումներից մեկի ժամանակ.— Ես, մենք՝ պոետներս, որոնում ենք հեղափոխության ոգին: Այն սքանչելի՜ է: Եվ այստեղ մենք բոլորս ձեզ հետ ենք»: Հենց հեղափոխության ոգին է ձգտել մարմնավորել իր պոեմում Բլոկը: Այն օրերի իրականության ռոմանտիկայում պոետը դեռևս աղոտ էր նըշմարում պրոլետարական հեղափոխության ըստեղծագործական շարժիչ ուժերը, բայց և «թռիչքից, թևավորությունից» բացի կռահում էր և «բոլշևիզմի գործնական կողմը»: Ամենից առաջ նա ողջունում էր ավերումի տարրերը, հին աշխարհի կործանումը: Պոեմում Բլոկը ձգտում էր բացահայտել իր կողմից թեկուզ և վերացականորեն ընկալված մեծ, սխրանքների տանող ճշմարտությունը: Հե՛նց այդ էլ նա կոչում էր «հեղափոխության սքանչելի ոգի»:

Ալեքսանդր Բլոկի հոկտեմբերյան պոեմը, որ ծնվեց սովետական գրականության ակունքում, անմահ է, որպես հեղափոխական արվեստի հանճարեղ հուշարձան:

Կնոջը հղած նամակներից մեկում Բլոկը գրել է. «Մի՛ մոռացիր երբեք պարտքի զգացումը. այդ միակ երաժշտականն է: Առանց պարտքի չկա կյանք և կիրք»: Այս մի քանի բառերում ասես խտացված են Ալեքսանդր Բլոկի անձնավորության ու պոեզիայի էությունն ու գեղեցկությունը: Իր ողջ կյանքը նա ապրել է պարտքի խոր գիտակցությամբ, և այդ գիտակցությամբ տոգորված նրա պոեզիան ըստացել է խոր երաժշտականություն, մարդկանց հոգիների վրա ներգործելու վիթխարի, անանց ուժ:

«Բլոկը հիանալիորեն գեղեցիկ էր իբրև բանաստեղծ և իբրև անձնավորություն, նախանձելիորեն գեղեցիկ... Հավատացե՛ք Բլոկին», ասել է Գորկին:

Երախտագետ սերունդների սրտերում անմար է հավատը, սերը Ալեքսանդր Բլոկի նըկատմամբ:

# ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵԼ ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Ինչպես հանրապետական, նույնպես և շրջանային լրագրերը լայնորեն լուսաբանում են ՍՄԿԿ XXVI համագումարը արժանավայել դիմավորելու նպատակով ծավալված համաժողովրդական մրցության ընթացքը: «Նոր ուղի», «Արևածագ», «Գարուն», «Աբաքս» շրջանային լրագրերի օրինակով փորձենք ցույց տալ, թե հանրապետության Մասիսի, Կալինինոյի, Ղուկասյանի, Մեղրու շրջանների աշխատավորները ինչպիսի գործերով ու նախաձեռնություններով են գնում դեպի մեր կուսակցության մեծ համաժողովը, ինչպես են ավարտում տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին ու ոտք դնում նոր, տասնմեկերորդ հնգամյակը:




Շրջանային «Նոր ուղի» լրագիրը **ՍՄԿԿ** հունիսյան պլենումից հետո օպերատիվ ու գործարար կերպով, պարբերաբար լուսաբանում է նախահամագումարյան սոցմրցության ընթացքը, պրոպագանդում ու տարածում առանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարող աշխատավորական կոլեկտիվների, առաջավորների փորձը:

Մասիսի շրջանում ևս հուշ է դարձել գյուղերի հին անցյալի պատմությունը, դրանց տեղ հառնել են նորերը, հին անունները փոխարինվել են Հովտաշատ, Ջրահովիտ, Դարակերտ, Գեղանիստ, Նորաբաց, Արևաբույր և այլ ախորժալուր անուններով... Իրենց անվան պես գեղեցիկ, բարենորոգ գյուղեր՝ մարդկանց երջանիկ այսօրով, ավելի պայծառ ապագայով:

Շրջանը հարուստ է պտղատու, խաղողի այգիներով ու բանջարանոցներով: Բերքահավաք 80-ի մասին են հաղորդում լրագրի բազմաթիվ համարները: Արբաթի, Սայաթ-Նովայի, Նիզամիի սովխոզների բանվորները, հաղթահարելով կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով առեղծված դժվարությունները, կարողացան լավ մշակության շնորհիվ բարձր բերք ապահովել իրենց հողատարածություններից: Այդ մասին է հաղորդվում Կարտոֆիլագործների հաղթանակը հոդվածում (№ 96): Մտնելով **ՍՄԿԿ XXVI** համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ՝ նրանք գերակատարել են առանձնած պարտավորությունները:

Մուրսալ Ռաֆիևը իր Բրիգադի հպարտությունը հոդվածում պատմում է Սայաթ-Նովայի սովխոզի № 3 բրիգադի մասին, որը հավաքել է 250 տոննա բանջարեղեն, 155 տոննա կարտոֆիլ: Բորիս Ապրեսյանի ղեկավարած այդ ինտերնացիոնալ բրիգադի բանվորներից իրենց ջանասիրությամբ ու ակտիվությամբ աչքի են ընկնում բանջարաբույծներ Ռոզա Բաբայանը, Ռիմա Թադևոսյանը, Թերեզա Դարիբյանը և ուրիշներ:

Շրջանում ամենքին հայտնի են Ղուկասավանի օժանդակ-փորձարարական տնտեսության՝ Ս. Գևորգյանի ղեկավարած բանջարաբուծական բրիգադի հաջողությունները բանջարեղենի, կարտոֆիլի մշակության, բարձր բերքի հասնելու գործում: Ակնբախ են հասումները նաև խաղողագործության բնագավառում: Հոկտեմբերյան հեղափոխության և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանների ասպետ, բրիգադավար Ս. Գևորգյանի բրիգադի աշխատանքը բարձր է գնահատվել պետության կողմից: Օղակավարներ Էմմա Մարկոսյանը, Իլյա Սարգսյանը, ջրվոր Վաչիկ Եղիազարյանը պարգևատրվել են Աշխատանքային գերազանցության համար մեդալով, Նվարդ Վարդանյանը՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

**ՀԿԿ** Մասիսի շրջկոմի բյուրոյում քննության է առնվել այս բրիգադի առաջավոր փորձը և հանձնարարվել է շրջանի բոլոր կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպություններին՝ բրիգադի օրինակով բոլոր միջոցները գործադրել **ՍՄԿԿ XXVI** համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները գերակատարելու, հնգամյակի վերջին տարվա և ողջ հնգամյակի պլանը անթերի կատարելու համար:

Մեծ դժվարությունների գնով աճեցված բարձր բերքն անկորուստ հավաքելու գործին երիտասարդների հետ մեկտեղ, ձեռնամուխ են եղել նաև աշխատանքի վետերանները: Լրագրի № 89-ում հրապարակված է կենսաթոշակառուների շրջանային խորհրդի՝ Մենք սպասում ենք ձեզ, աշխատանքի վետերաններ կոչը՝ ուղղված շրջանի կենսաթոշակառուներին: Օգնել, իրենց աշխատանքի փորձն ու հմտությունը հաղորդել երիտասարդներին, անկորուստ հավաքել հողագործի քրտինքով աճեցված բերքը՝ ահա այդ կոչի իմաստն ու պահանջը:

Դաշտավարների ու մեխանիզատորների, թռչնապահների ու անասնապահների, բանջարաբույծների, պտղատնկարանային տնտեսության, այգեգործների աշխատանքային առօրյան, նրանց ծավալած սոցիալիստական մրցությունն են արտացոլում լրագրում հրապարակված շատ ու շատ այլ հոդվածներ, որոնց հեղինակներն են տնտեսությունների ղեկավարները, սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարները, բրիգադավարները, մասնագետները, շարքային աշխատողները:

Կոլտնտեսությունների, սովխոզների հաջողությունները ներկայացնող հոդվածների կողքին լրագրում զետեղվում են և թերությունները վերհանող, եռ մնացողներին քննադատող հոդվածներ, որոնց կարևորությունը ևս կասկածից վեր է: Նման հրապարակումներով հանախակի հանդես է գալիս լրագրի հատուկ թղթակից Պարգև Սիմոնյանը (Անմխիթար վիճակ, **№ 102**, Ջամհարում բերքահավաքը չի ղեկավարվում, **№ 104**, Հաջողությունների կողքին նաև թերություններ, **№ 110**, Պլանները չեն կատարվում, ինչո՞ւ..., **№ 115 և այլն**):

**Լրագրի՝** Արժանավայել դիմավորում ՍՄԿԿ XXVI համագումարին, Դեպի ՍՄԿԿ XXVI համագումարը խորագրերի ներքո զետեղված հոդվածներում արծարծվում են կոմունիստների անելիքներն ու խնդիրները, ներկայացվում է և արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքը: Այսպես, «Հայբնագույն» քարերի բյուրեղապակու արտադրամասում ծավալված սոցիալիստական մրցությունն է արտացոլված Նրանց բյուրեղապակու ծիածանը (№ 95), «Գոֆրոտարա» ֆաբրիկայինը՝ Լրացուցիչ պարտավորություններ (№ 99) հրապարակումներում: Գորգագործների հաղթանակը հոդվածում (№ 100), պատմվում է «Հայգորգ» արտադրամիավորման Մասիսի գորգագործական ֆաբրիկայի մասին: Միավորման համակարգում գործող տասնչորս ձեռնարկությունների մրցության մեջ այն գրավել է երրորդ տեղը: Այստեղ սկսվել է «Ծիրվան—35», «Երևան—110», «Անահիտ», «Արգիշտի» մակնիշներով գորգերի արտադրությունը:

Աշխատանքային հաջողությունների հասնելու էական ազդակ է նյութական խրախուսանքը, որի կարևորության մասին խոսվում է լրագրի շատ նյութերում: Սայաթ-Նովայի սովխոզի դիրեկտոր Համայակ Սարգսյանն իր Մրցությունից դուրս կգանք պատվով հոդվածում (№ 101) պատմում է, որ բերքահավաքը լավագույն ձևով կազմակերպելու նպատակով սովխոզը սահմանել է երեք կարգի դրամական մրցանակ՝ 700, 500, 300 ռուբլու չափով:

**ՍՄԿԿ XXVI** համագումարի պատվին ծավալված մրցության արդյունքները լուսաբանելիս լրագիրը չի սահմանափակվում սոսկ Մասիսի շրջանով: Կարճ լուրեր, Մեր հրապարակումները, Հայրենի երկրում և այլ խորագրերի ներքո այն ընթերցողներին է ներկայացնում մեր հանրապետությունում, ինչպես և եղբայրական մյուս հանրապետություններում տեղի ունեցող իրադարձությունները, աշխատավորական կոլեկտիվների լավագույն նախաձեռնությունները:

«Նոր ուղի» լրագիրը համակողմանի ներկայացնում է գյուղի աշխատավորներին համակած աշխատանքային այն խանդավառությունն ու նվիրումը, որով նրանք պատրաստվում են դիմավորելու հարազատ կուսակցության XXVI համագումարը:

**ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ**

**Արևածագ**

Կալինինոյի շրջանի աշխատավորները, մեծ ոգևորությամբ, հայրենասիրական խանդավառությամբ ընդունելով կուսակցության XXVI համագումարի հրավիրման մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թ. հունիսյան պլենումի որոշումը, նոր պարտավորություններ են ստանձնել ու կանգնել նախահամագումարյան հարվածային հերթափոխի: Այդ մասին համակողմանի ինֆորմացիա ենք ստանում ՀԿԿ Կալինինոյի շրջկոմի և ժողովրդական դեպուտատների շրջանային սովետի օրգան «Արևածագ» լրագրում զետեղված թղթակցություններից, հոդվածներից, ակնարկներից և այլ նյութերից:

Շրջանի գյուղատնտեսության աշխատողները պայքար են ծավալել ժամկետից շուտ կատարելու տասներորդ հնգամյակի առաջադրանքները, անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելու տասնմեկերորդ հնգամյակի հաջող մեկնարկի համար: Շրջանի անասնապահները չորսուկես տարում կատարել են պետությանը միս և բրդի հանձնման հնգամյա առաջադրանքները: Հացահատիկի վաճառքի պլանը շրջանը կատարեց չորս տարում:

«ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել դիմավորելու համար սոցիալիստական մրցության մասին» Կենտկոմի որոշումը ուղենիշ է դարձել շրջանի աշխատանքային բոլոր կոլեկտիվների համար: «Արևածագ»-ը օպերատիվ և գործարար կերպով է լուսաբանում նախահամագումարյան սոցիալիստական մրցության ընթացքը, պրոպագանդում ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարող կոլտնտեսությունների ու անհատների փորձը:

Սպառողներին լավ հայտնի է Կալինինոյի գլխամասային պանրագործարանի բարձրորակ արտադրանքը՝ «Լոռի», «Չանախ» և այլ տեսակի պանիրները: Այստեղ է պատրաստվում մեր երկրում արտադրվող շվեյցարական պանրի զգալի մասը: Վ. Կարապետյանի հոդվածից (№ 108) տեղեկանում ենք, որ արդեն 50-ամյա այդ ձեռնարկությունը հանրապետության մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության զարգացման գործում ունեցած մեծ ավանդի համար պարգևատրվել է ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության պատվոգրով, այն հաղթող է ճանաչվել նաև հնգամյակի չորրորդ տարվա սոցիալիստական մրցության արդյունքներով և արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿխ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին, նրա անունը գրանցվել է ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի համամիութենական պատվո տախտակին: Ձեռնարկության կոլեկտիվը զեկուցել է նաև տասներորդ հնգամյակը բոլոր ցուցանիշներով ժամկետից չորս ամիս շուտ կատարելու մասին: Այդ հաջողություններում մեծ է նաև արտադրության վարպետների դերը: Լրագրից տեղեկանում ենք, որ պանրագործարանում մեծ հարգանք է վայելում պանրագործվարպետ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Միխայիլ Արեֆևը:

Բնորոշ է, որ ձեռնարկությունը հաջողությունների է հասել հատկապես արտադրության տեխնիկական կատարելագործման, կաթնամթերքների թողարկման առաջավոր տեխնոլոգիայի կիրառման, առաջավոր փորձի ներդրման ու տարածման շնորհիվ: Պատասխանատվության բարձր զգացումով ձեռնարկության դիրեկտոր Ս. Հովհաննիսյանը հավաստիացնում է, որ այսուհետ ևս սպառողներին կհանձնըվեն միայն պետական որականիշով կաթնամթերքներ: Հավատում ես, որ աշխատանքային ավանդույթներով հարուստ այս կոլեկտիվը անպայման կկատարի իր խոստումը և ՍՄԿԿ XXVI համագումարը կդիմավորի նորանոր նվաճումներով:

Պանրագործարանի հաջողությունը մեծապես պայմանավորված է վերամշակվող կաթի որակի և կաթնապրանքային ֆերմաների օրինակելի սանիտարական կուլտուրայով: Այդ աշխատանքում մեծ հասումներ ունեն Մեծավանի սովխոզը, նրա առաջավոր անասնապահները, որոնք արժանացել են Հայկական ՍՍՀ մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության մինիստրության և անդարդյունաբերության բանվորների արհմիության հանրապետական կոմիտեի երրորդ կարգի մրցանակին ու պատվոգրերին (№ 111):

Հատկանշական է, որ լրագրի էջերում պատշաճ տեղ է հատկացվում պարգևների հանդիսավոր հանձնումներին նվիրված երեկոներին ու ժողովներին: Լրագիրը պարբերաբար հրապարակում է թղթակցություններ, որոնցում մեծարվում են սոցիալիստական մրցության հաղթողները:

Դեպի ՍՄԿԿ XXVI համագումարը խորագրի ներքո զետեղված նյութերը համակողմանի լուսաբանում են շրջանի արտադրական կոլեկտիվների գործունեությունը, երկրագործների, անասնապահների, մեխանիզատորների, բանվորների, շինարարների և աշխատանքային այլ ճակատների առաջավորների հաջողությունները:



Հնգամյակի աշխատանքային վերտառությամբ հոդվածները (№№ 80, 112) մի անգամ ևս վկայում են, որ, չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, Կալինինոյի շրջանի բազմազգ աշխատավորական կոլեկտիվները արտադրական լավագույն ցուցանիշներով են դիմավորում կուսակցության առաջիկա համաժողովը:

Կուսակցական կազմակերպությունները ղեկավարում, գլխավորում և գործուն կերպով մասնակցում են նախահամագումարյան համաժողովրդական մրցությանը, աշխատավորության ջանքերը մղում տնտեսական ու կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրների լուծմանը: Լրագրում հանդես են գալիս կուսակցական կազմակերպությունների քարտուղարներ, շարքային կոմունիստներ (№№ 75, 76, 86): Նրանք տեղեկացնում են կոլեկտիվների, գործընկերների, իրենց անձնական պարտավորությունների կատարման մասին, բացահայտում թերությունները, նշում դրանց վերացման ուղիները:

Կալինինոյի կոմերիտականները, արձագանքելով երիտասարդական հարվածային գործերի համամիութենական շարժմանը, աշխատում են Առաջադրանքը՝ կոմերիտական լրացուցիչ տոննաներ, Բերքին՝ կոմերիտական հոգատարություն նշանաբաններով: Պրիվոլնոյեի, Սարատովկայի կոլտնտեսություններում, Լեռնահովտի սովխոզում և մյուս տնտեսություններում կերի կուտակման կամպանիային ակտիվ մասնակցեցին կոմերիտականներն ու երիտասարդները (№№ 78, 101, 109):

Լրագրի Սոցմրցություն—80 մշտական խորագրի ներքո զետեղված հաղորդումները սոցմրցության յուրատեսակ օրացույց են, որտեղ նշվում են շրջանի տնտեսությունների ամենօրյա ցուցանիշները, ներկայացվում օրվա հաղթողները, որոնց հայրենանվեր գործերի շնորհիվ Կալինինոյի շրջանն այսօր ընթանում է հանրապետության առաջավորներին համաքայլ:

Հարուստ են «Արևածագ»-ի խորագրերը: Արդյունավետության և որակի համար, ՍՍՀՄ ԺՏՆՑ-ն՝ առաջավոր փորձի դպրոց վերտառություններով տպագրվել են հետաքրքրական շատ հոդվածներ, որոնց նպատակն է շրջանի տնտեսություններում տարածել ու ներդնել ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի դափնեկիրների փորձը, ինչպես նաև պրոպագանդել առաջավորների հասումները (№№ 95, 97, 99): Առաջավոր փորձի պրոպագանդման ու տարածման համար «Արևածագ»-ն այս տարի ևս արժանացել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի երկրորդ կարգի դիպլոմին: Դա լրագրի համամիութենական հինգերորդ պարգևն է: Պարգև, որը պարտավորեցնում է խմբագրությանը՝ ավելի աշխուժացնել ստեղծագործական որոնումները, բարձրացնել հրապարակվող նյութերի ժուռնալիստական մակարդակը:

Լրագիրը շրջանի հայելին է, այնտեղ արտացոլվում է նրա տնտեսական, հասարակական, մշակութային կյանքը: Բայց եթե Կալինինոյի շրջանի տնտեսական-արտադրական առօրյայի մասին «Արևածագ»-ի էջերից կարելի է ընդհանուր պատկերացում ստանալ, ապա հազիվ թե նույնը հնարավոր է ասել հասարակական ու մշակութային կյանքի վերաբերյալ: Թերթը պետք է ձգտի ավելի բազմակողմանիորեն ներկայացնել շրջանի առօրյան, մինչդեռ նրա էջերը, հաճախ ոչ անհրաժեշտությունից ելնելով, լցվում են պաշտոնական նյութերով: Քիչ են ակնարկներն ու ռեպորտաժները, որտեղ երևա մարդը՝ իր հետաքրքրություններով, հուզաշխարհով, կենցաղով... Թերթելով «Արեվածագ»-ի համարները՝ համոզվում ես, որ այդ ամենը վեր չէ նրա ստեղծագործական կոլեկտիվի ուժերից: Խնդիրն այդ ուժերը ավելի արդյունավետ ու նպատակայալաց օգտագործելն է:

**ԱԻԴԱ ՀՈՎՆԱՆՅԱՆ**

**ԳԱՐՈՒՆ**

Ղուկասյանի շրջանի աշխատավորները խանդավառությամբ ու ոգևորությամբ են դիմավորում կուսակցության XXVI համագումարը: Այդ իր արտացոլումն է գտնում «Գարուն» լրագրի էջերում, որը պարբերաբար լուսաբանում է արտադրության մարդկանց ձեռք բերած հաջողությունները:

Լրագրի գրեթե բոլոր համարներում կարելի է հանդիպել ՍՄԿԿ XXVI համագումարին ընդառաջ, Արժանավայել դիմավորենք ՍՄԿԿ XXVI համագումարը, Դեպի XXVI համագումարը վերտառությունների:

Իր առաջնորդողներից մեկում (№ 79) թերթը հայտնում է, որ շրջանի անասնապահները ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի օրը զեկուցեցին կաթի ու մսի հանձնման տասներորդ հնգամյակի առաջադրանքը ժամկետից շուտ կատարելու մասին. նախատեսված 13 հազար 259 տոննայի փոխարեն մինչև հունիսի

մեկը շրջանում մթերվել է 32 հազար 790 տոննա կաթ: Մսի վաճառքի առաջադրանքը գերակատարվել է 200 տոննայով: Այնուհետև նշվում է, որ, ի պատիվ համագումարի կանգնելով աշխատանքային հերթափոխի, նրանք վճռել են մսի մթերումների տարեկան պլանը կատարել մինչև նոյեմբերի 20-ը, իսկ համագումարի օրը՝ կաթ ստանալ 1982 թվականի հաշվին:

Առաջադրանքը գերակատարվում է (№ 78) հոդվածում Ջ. Ամիրյանը հայտնում է, որ Զույգաղբյուրի պետտնտեսության ոչխարաբույծները լուրջ հաջողությունների են հասել: Տնտեսությունը կատարել է պետությանը բրդի հանձնման հնգամյա պլանը և խոստացել պլանից դուրս հայրենիքին հանձնել ևս 70—80 ցենտներ բուրդ:

ՍՄԿԿ XXVI համագումարի պատվին ծավալված մրցությունը նոր թափ է հաղորդել Սիզավետի պետտնտեսության կթվորուհիների աշխատանքին: Նրանք խոստացել են մինչև տարեվերջ իրենց խնամքին հանձնված ամեն մի կովից ստանալ 3000—3300 կգ կաթ (№ 100): Սիզավետցիներից ետ չեն մնում ձորաշենցիները: Խելացի օգտագործելով առկա հնարավորությունները ու ռեզերվները՝ նրանք զգալիորեն ավելացրել են կաթի արտադրությունը և մթերումների ծավալը:

Փոքր Սեպասարի միջսովխոզային ձեռնարկության անասնապահների լավագույն աշխատանքի մասին է պատմում թերթն իր 122-րդ համարում: Ինն ամսում նրանք մթերակայան են հանձնել 1071 գլուխ անասուն, որոնց միջին կենդանի քաշը հասնում է 331 կիլոգրամի: Պետությանն է հանձնվել 3800 ցենտներ բարձրորակ միս. նրանք պարտավորվել են մթերակայան ուղարկել ևս 1000 գլուխ անասուն:

Պատահական չէ, որ ՀԿԿ շրջկոմի և շրջսովետի գործկոմի ժյուրին, ամփոփելով աշխատավորների 1980 թվականի ինն ամիսների սոցիալիստական մրցության արդյունքները, հաղթող է ճանաչել Փոքր Սեպասարի միջտնտեսային ձեռնարկությանը:

Շրջանի անասնապահների լավագույն աշխատանքի վկայությունն է այն, որ 1979—1980 թվականների ձմռան ժամանակաշրջանում անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու համար հանրապետության անասնապահության աշխատողների միջև ծավալված մրցությունում նրանք հաղթող են ճանաչվել և արժանացել են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրին:

Ոգևորված ձեռք բերած հաջողություններով, շրջանի անասնապահները նոր եռանդով ձեռնամուխ են եղել ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարները բարձր ցուցանիշներով դիմավորելու, եկող հնգամյակի համար լավագույն նախադրյալներ ստեղծելու գործին (№ 122):

Իսկ հիմնարկ-ձեռնարկությունների, արդյունաբերական ու շինարարական կազմակերպությունների միջև ծավալված մրցությունում հաղթող ճանաչվեց «Ռաստր» գործարանի կոլեկտիվը: Խրախուսելի է նաև կենցաղսպասարկման կոմբինատի, № 8 ՇՄՇ-ի տնտհաշվարկային տեղամասի, կապի հանգույցի, շրջկոոպի, գլխավորող պանրագործարանի, № 44 ՇՄՇ-ի, «Պետկոմգյուղտեխնիկայի», կոմունալ սպասարկման և բարեկարգման, բեռնատեղափոխող ավտոտրանսպորտային ձեռնարկությունների կոլեկտիվների աշխատանքը:

Պարտավորությունները կատարելու ձգտումով (№ 85) հոդվածում թղթակից Վ. Խաչատրյանը պատմում է դաշտավարության աշխատողների հայրենանվեր գործերի մասին: Նրանք խոստացել են ռոռգման հնարավորությունն արդյունավետ օգտագործելու, բազմամյա խոտաբույսերի հունձը սեղմ ժամկետում ավարտելու շնորհիվ այդ տարածություններից երկրորդ բերքն ստանալ:

Փոքր Սեպասարի միջսովխոզային ձեռնարկության դիրեկտոր Զ. Մուրադյանը հայտնում է, որ տնտեսությունում գործարար մրցություն է ծավալվել հնգամյակի ավարտական տարին բարձր ցուցանիշներով փակելու համար: Ձեռնարկության մարդիկ, ճիշտ օգտագործելով հնարավորությունները, լավ բերք են աճեցրել և կկատարեն կերի կուտակման առաջադրանքները: Դրանով իսկ նրանք ամուր հիմք կստեղծեն նոր հնգամյակը բարձր տեմպերով սկսելու, կուսակցության համագումարն արժանի գործերով դիմավորելու համար: Բարձր ցուցանիշներով (№ 99), Հողը վարձահատույց է լինում (№ 107), Հացն հանապազօրյա (№ 104), Առաջադրանքը ժամկետից շուտ (№ 109), Ցրտահերկին արագ տեմպ (№ 125) և այլ հոդվածներում ևս պատմվում է շրջանի դաշտավարների աշխատանքային առօրյայի մասին:

Լրագիրը չի մոռացել և շինարարներին, արդյունաբերության աշխատողներին, հանախակի հանդիպող հոդվածներում լուսաբանվում է նաև նրանց առօրյան: Լրագրի էջերում հանդիպում ենք նաև մասնագիտական հոդվածների, որոնց հեղինակներն իրենց խորհուրդներով օգնում են գյուղատնտեսության աշխատողներին՝ ճիշտ կազմակերպելու հողի մշակությունն ու անասունների խնամքը:

Լրագրում քիչ չեն առաջավորներին նվիրված ակնարկները, ընդհանուր առմամբ վատ տպավորություն չի թողնում նաև նրա ձևավորումը: Այդուհանդերձ, խմբագրության ստեղծագործական կոլեկտիվը պետք է հաղթահարի նյութերի միօրինակությունը, դրանց զուտ ինֆորմացիոն բնույթը, պետք է ավելի լայնորեն օգտվի ժանրային այն հարուստ զինանոցից, որ ունի սովետական մամուլը:

ՇԱՀԱՆԴՈՒԽՏ ԱՎԱԳՅԱՆ




Մեղրու շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների, արդյունաբերական ու տրանսպորտի ձեռնարկությունների աշխատողները ՍՄԿԿ XXVI համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարում են ժամկետից՝ շուտ ու բարձր ցուցանիշներով: Խանդավառությամբ համակված նրանց աշխատանքային առօրյան իր արտացոլումն է գտնում ՀԿԿ Մեղրու շրջկոմի և ժողովրդական դեպուտատների Մեղրու շրջսովետի օրգան «Արաքս» լրագրի էջերում:

Լրագրի յուրաքանչյուր համարում ներկայացվում են համագումարն արժանավայել դիմավորելու համար սոցիալիստական մրցությունում ծավալած այս կամ այն կոլեկտիվի լավագույն գործերը: Մեղրու կոլտնտեսության № 2 բրիգադի հաջողությունների մասին է գրում Ս. Խաչատրյանը (№ 78): Հնգամյակի եզրափակիչ տարին պատվով ավարտելու համար բրիգադի անդամներն ամեն ինչ անում են՝ կատարելու ստանձնած պարտավորությունները: Կոլտնտեսականները հնձել, դեզանոց են փոխադրել 48 տոննա խոտ: Իրենց անդուլ աշխատանքով աչքի են ընկել Ռ. Ստեփանյանը, Գ. Հայրապետյանը, Վ. Խաչատրյանը, Հ. Միրզոյանը:

Նույն համարում տպագրված Մրցության ավանգարդում վերնագրով հոդվածում (Ս. Սարգսյան) կարդում ենք ավտոձեռնարկությունում ծավալված սոցիալիստական մրցության մասին: Բեռնատար ավտոմեքենաների վարորդները ժամանակին են շինանյութ փոխադրել Մեղրի—Քաջարան ավտոճանապարհ կառուցողներին: Նրանց հայրենանվեր ջանքերով էր նաև, որ Հայաստանում սովետական իշխանության հաստատման ու ՀԿԿ կազմավորման 60-ամյակի տոնակատարության նախօրյակին շահագործման հանձնվեց Մեղրի—Քաջարան ավտոճանապարհը:

Ճանապարհաշինարարների սխրանքների մասին է պատմում Մեծ գործի ավարտը վերնագրով հոդվածը (№ 131): Վարչության է վերածվել ճանշինշինորոգման երբեմնի փոքրիկ գրասենյակը: Դեռևս ապրիլին կատարելով հնգամյա պլանը, ճանապարհաշինարարները հետագա ամիսներին ևս գործեցին մեծ ոգևորությամբ ու եռանդով և ավարտեցին այս կարևոր նշանակություն ունեցող խճուղու կառուցումը: Իրենց ջանադիր աշխատանքով աչքի ընկան Կ. Ծարաֆյանը, աշխղեկներ Ա. Հարությունյանը, Ռ. Գալստյանը, բուլդոզերավարներ Գ. Ղազարյանը, Մ. Բաբաջանյանը, էքսկավատորավարներ Կ. Միրզոյանը, Ժ. Ավագյանը, վարորդներ Ս. Խաչատրյանը, Մ. Հումբաթովը, ասֆալտագործների, բետոնագործների բրիգադները:

Լրագիրն ըստ արժանվույն է անդրադարձել ու գնահատել անցած 60 տարիների ակնբախ վերընթացը շրջանի տնտեսական, հասարակական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում: Մեղրին հանրապետության այն շրջաններից է, որի նորաստեղծ արդյունաբերական ձեռնարկությունները լուրջ հաջողությունների են հասել: 1980 թվականի երրորդ եռամսյակում շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները հաղթող ճանաչվեցին հանրապետական մրցությունում և արժանացան ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշին ու առաջին կարգի դրամական մրցանակի: Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի կոլեկտիվի հաջողությունների մասին է պատմում կուսկոմիտեի քարտուղար Հ. Մկրտչյանը (Առաջատարին վայել գործերով, № 136): Գերակատարվել է արտադրանքի իրացման, համախառն և ապրանքային արտադրանքի թողարկման տասն ամսվա պլանը:

Մրցանակը պարտավորեցնում է վերնագրով հոդվածում (№ 135) պահածոների գործարանի դիրեկտոր Յու. Առաքելյանը գրում է իրենց գործարանի առաջընթացի մասին: Կոլեկտիվը երրորդ եռամսյակում արտադրանքի իրացման և համախառն արտադրանքի թողարկման պլանները գերակատարել է և ստանձնել նոր պարտավորություններ:

Շրջանի անասնապահները նույնպես, մտնելով ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել դիմավորելու համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության մեջ,

լուրջ հաջողությունների են հասել: Մեղրու կոլտնտեսության անասնապահների մասին է գրում Ս. Բերբերյանը (Նվաճելով նոր բնագծեր, № 97): Այս ինտերնացիոնալ կոլեկտիվում իրենց բարեխիղճ աշխատանքով աչքի են ընկել կթվորուհիներ Շ. Հախվերդյանը, Ս. Հասանովան, հովիվներ Ա. Հովհաննիսյանը, Շ. Գուլիևը, Յ. Հաշիմովը և ուրիշներ:

Գերակատարման հաշվին (№ 130) թղթակցությունում Վահրավարի կոլտնտեսության անասնապահական ֆերմայի վարիչ Ռ. Մարգարյանը ներկայացնում է տնտեսության հաջողությունները: Անասնապահները մսի մթերման առաջադրանքը կատարել են 106,3, կաթինը՝ 100,5 տոկոսով և շարունակում են աշխատել կրկնապատկված եռանդով, պետությանն են հանձնում բարձրորակ արտադրանք:

Բերքահավաքը շարունակվում է վերնագրով (№ 95) թղթակցությունից տեղեկանում ենք, որ Նյուվադիի պտղագործները հնգամյակի եզրափակիչ տարում պահածոների գործարան են հանձնել 110 տոննա ծիրան, վաղահաս դեղձ: Երկու օրում հավաքել և գործարան է հանձնվել 700 կգ թուզ:

Իսկ Նյուվադիի կոլտնտեսության պտղաբույծ-օղակավար Բ. Գասիմովը ընթերցողներին ծանոթացնում է իր օղակի աշխատանքային գործունեությանը (№ 111): Այգիների լավ մշակության, հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարելու շնորհիվ նորատունկ այգիներից ստացվել է 240 ցենտներ բերք:

Ալդարայի կոլտնտեսության խաղողագործների սխրանքների մասին է գրում Լ. Սհարոնյանը (Ոսկե վազերի մեջ, № 113): Ա. Աբդուևովի ղեկավարած բրիգադը խոստացել է պլանից ավելի ստանալ 15—20 տոննա բերք: Նրա օրինակին են հետևում Ա. Բախշիևան, Ֆ. Նուրաշովան և ուրիշներ: Հեղինակը դրվատանքի խոսքեր է ասում տնտեսության վարորդների հասցեին, որոնք ժամանակին ու անկորուստ բերքը մթերակայան են փոխադրում:

Լրագրում լուսաբանված է և մասնաճյուղային արտադրական ձեռնարկությունների առօրյան: Այսպես, Երևանի տեխնոլոգիական սարքավորումների գործարանի Շվանիձորի մասնաճյուղի արտադրամասի վարպետ Ս. Միքայելյանը (Վերընթացի ուղիով, № 126) պատմում է իրենց ձեռնարկության մասին: Հիմնադրման առաջին տարիներին ծանր էր ձեռնարկության վիճակը: Մասնաճյուղի կոլեկտիվը ձեռնամուխ եղավ դժվարությունների հաղթահարմանը: Գործադրված ջանքերը տվեցին իրենց արդյունքը: Այժմ այն թողարկում է պետական որականիշով տասնյակ դետալներ: Իրենց լավ աշխատանքով աչքի են ընկնում տեխնոլոգ Ա. Գրիգորյանը, հղկողներ Ա. Թումանյանը, Ս. Առաքելյանը և ուրիշներ:

Արտադրանքի տեսականին ընդլայնելու մասին է պատմում Երևանի «Էլեկտրասարք» գործարանի՝ Մեղրու մասնաճյուղի կուսկազմակերպության քարտուղար Է. Համբարձումյանը:

Հարկ է նշել, որ լրագրի բազմաթիվ հրապարակումներ սխեմատիկ բնույթ են կրում: Չի երևում մարդը, իր հոգևոր և կուլտուրական առօրյայով: Խմբագրությունը պետք է ձգտի այն բանին, որ լրագրի էջերում ավելի լայնորեն ներկայացվի աշխատավորական կոլեկտիվների բազմաբովանդակ կյանքը:

ՋԵՖՅՈՒՌ ԱՍԱՏՐՅԱՆ



# ԳԻՐՔ ՔԱՋԱՐԻ ՄԱՐՏԻԿՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ֆաշիստական ագրեսորների նկատմամբ Սովետական Միության պատմական հաղթանակը սոցիալիստական հայրենիքը փրկեց մահացու վտանգից, համաշխարհային քաղաքակրթությունը՝ բարբարոսությունից: Սովետական զինված ուժերը ցույց տվին սոցիալիզմի անխորտակ հզորությունը, ջախջախեցին Հիտլերի հրեշավոր ռազմական մեքենան, ազատեցին ժողովուրդներին ստրկացումից: Նրանց անմահ քաջագործությունների մասին ստեղծվել է վիթխարի քանակությամբ գրականություն, մեր և արտասահմանյան շատ երկրներում մարտիկ-ազատարարների պատվին կանգնեցվել են բազում հուշարձաններ, հրապարակվել են հազարավոր գիտական ու գիտամասսայական աշխատություններ, ստեղծվել են հարյուրավոր վավերագրական և գեղարվեստական կինոնկարներ:

Ընթերցողների շրջանում լայն մասսայականություն են վայելում իրադարձությունների անմիջական մասնակիցների վավերագրական-հուշագրական աշխատությունները, որոնք վառ կերպով պատկերում են ռազմական դաժան իրականությունը, կենդանի ու մեռած հերոսների սխրագործությունները: Այդպիսի ռազմապատմական գրականության օրինակ է Սովետական Միության հերոս, գեներալ-մայոր Ա. Վ. Ղազարյանի վավերագրական ակնարկների եռհատորյակը, որը վերջին տարիներին լույս է ընծայել «Հայաստան» հրատարակչությունը:

Ձոնված այս ակնարկներում խոսքը հիմնականում հայազգի զինվորականների մասին է, ներկայացված են նաև ռուս, ուկրաինացի և այլ ազգության զինվորական մի շարք ականավոր ղեկավարներ, որոնց հետ հեղինակը ծառայության բերումով ունեցել է սերտ կապեր: Հեղինակը անկեղծ ջերմությամբ է արտահայտվել նրանց գործունեութան մասին: Ա. Վ. Ղազարյանի եռապատումն ամողջովին համակված է ինտերնացիոնալիզմի, Սովետական Միության բոլոր ազգությունների եղբայրական բարեկամության ոգով:

Ակնարկներն ստեղծվել են աղբյուրագիտական հարուստ բազայի, այդ թվում՝ արխիվային նյութերի, ատեստացիայի տվյալների, մարտական բնութագրերի, պարգևատրման թերթիկների, կուսակցական որոշումների, հրապարակված հետազոտությունների ու պաշտոնական հրապարակումների, ինչպես և իրադարձությունների մասնակիցների և իր՝ հեղինակի հիշողությունների հիման վրա: Նրան հաջողվել է ժողովել ու սիստեմավորել գրքի հերոսների կյանքին և մարտական սխրագործություններին վերաբերող վավերագրական հսկայածավալ նյութեր: Ինչպես իրավամբ նշվում է գրքում, ներկայացված յուրաքանչյուր մարդ տարբեր է իր բնավորությամբ, անհատական հատկանիշներով, գործած սխրանքներով: Բայց նրանց համար ընդհանուրն այն է, որ բոլորն էլ սովետական աշխատավոր ընտանիքի զավակներ են, որոնց կոմունիստական կուսակցությունը դաստիարակել է բոլորանվեր հայրենասիրության ոգով: Սովետական ժողովրդին բնորոշ, համընդհանուր հատկանիշ դարձած աշխարհայացքը, հայրենասիրությունը, մարդասիրությունը և ինտերնացիոնալիզմը հանդիսացան մեր հաղթանակի կարևորագույն գործոնը: Մեր ծանր, բայց հաղթական պատերազմի, ռազմաճակատի ու թիկունքի համաժողովրդական հերոսության ընդհանուր ֆոնի վրա համոզիչ և ճշմարտացի բացահայտվում են գրքի հերոսների անհատականությունները, մասնակցությունը մեծ հաղթանակին, կուսակցական և քաղաքացիական պարտքի նրանց վեհ զգացումը: Այդ հերոսների կենսագրական տարեգրությունը հիանալի արտացոլումն է սոցիալիզմի հզորության, որը հնարավորություն ընձեռեց աշխատավոր ժողովրդի զավակներին՝ բանվորներին, գյուղացիներին, կրթություն ստանալու, դառնալու քաղաքականապես հասուն և ձեռք բերելու մարտական վարպետություն, սխրանքներ գործելու հանուն ժողովուրդների ազատության ու երջանկության: Կարդալով Ա. Ղազարյանի եռապատումը՝ զգում ես նոր հասարակարգի կերտման պատմական օրինաչափ պրոցեսի զարկերակը, այն հասարակարգի, որի հիման վրա ձևավորվում է նոր մարդը՝ հայրենասերն ու ինտերնացիոնալիստը. նա ունակ է անհավատալի

* А. В. Казарьян, «Война, люди, судьбы», книга первая—1975, книга вторая — 1977, книга третья—1980, изд. «Айастан»:

ջանքերով պաշտպանելու այդ հասարակարգը, հաղթելու ուժեղ և նենգ թշնամուն:

Խոսելով գրքի արժանիքների մասին՝ հարկ է առանձնապես նշել, որ հեղինակը խուսափելով շաբլոնից և քիչ բան ասող բնութագրումներից, կարողացել է ընդհանրացնել սովետական բնավորությունը, սոցիալիստական բանակի ռազմիկների հատկանիշները, ցույց տալ մեր ժողովրդի մասսայական հերոսության աղբյուրները: Այսպես, երկրորդ գրքի 48-րդ էջում կարդում ենք. «Մեր մեծ հաղթանակն ապահովեցին ողջ ժողովրդի հերոսությունն ու քաջությունը... Այդ հաղթանակն էր նաև մեր ոգու զորության, ժողովուրդների լենինյան բարեկամության, կոմունիստական կուսակցության դաստիարակած սովետական բնավորության»: Նշելով զորքերի մարտական գործողություններում կուսակցական-քաղաքական աշխատանքի և բանակի քաղաշխատողների մասին՝ հեղինակն ընդհանրացնում է. «Նրանք մի զենք ունեին— կուսակցական ճշմարտության կենդանի խոսքը, և մեկ իրավունք— միշտ լինել զինվորական զանգվածների կենտրոնում, այնտեղ, ուր ամենից դժվար է» (երկրորդ գիրք, էջ 94): Բացահայտելով մեր կադրերի ոսկե ֆոնդի սոցիալ-քաղաքական բնույթը՝ հեղինակը եզրակացնում է. «Աշխարհում չկա մի այլ երկիր, որն այնքան հարուստ լինի ժողովրդի ծոցից ելած տաղանդավոր մարդկանցով, որքան մեր սովետական պետությունն է» (երրորդ գիրք, էջ 114):

Ա. Ղազարյանի աշխատությունը հետաքրքրական է և այլ առումով. նա բնութագրել է զինվորական քաջարի ղեկավարների՝ հայ ժողովրդի այն զավակների հերոսագործությունները, որոնք մինչ այդ քիչ կամ բոլորովին անհայտ էին ընթերցողների լայն շրջաններում: Նրանցից են՝ գեներալ-գնդապետ Ս. Ա. Սարդարովը, գեներալ-մայորներ Ս. Բ. Կազբինցևը, Խ. Ն. Ալավերդովը, Վ. Ռ. Վլասովը, Վ. Ի. Սուրոբեկովը, Տ. Վ. Դեդեօղլին, Գ. Մ. Թոլմաչևը, Խ. Մ. Ջելաուխովը, Գ. Ա. Բեժանովը, Կ. Ա. Լազարևը, Ի. Ա. Միրզախանովը, Վ. Ն. Սահինովը, փոխ-ծովակալ Զ. Մ. Արվանովը և ուրիշներ: Հայ ժողովրդի արժանավոր զավակներն են սրանք, որոնցից շատերը քաջի մահով ընկան ռազմի դաշտում, մյուսներն ապրեցին մինչև հաղթանակի երջանիկ օրը և պատերազմից հետո շարունակեցին ծառայությունը պատասխանատու պոստերում, ոմանք վաստակած հանգստի են անցել, շարունակելով ակտիվ մասնակցել աճող սերնդի ռազմահայրենասիրական դաստիարակության գործին, իսկ մի քանիսը այժմ էլ իրենց անմիջական լուման են ներդնում մեր զինված ուժերի հետագա հզորացման բնագավառում:

Բնության օրենքներն անողոք են. Հայրենական պատերազմի մասնակիցների շարքերը հետզհետե ավելի են նոսրանում: Սակայն ժողովուրդը հավերժ կհիշի պատերազմի վետերանների հերոսագործությունները: Նրանց կյանքը, հայրենասիրական սխրանքները կոգեշնչեն նորանոր սերունդների, կմղեն հերոսության՝ հանուն սոցիալիստական հայրենիքի պաշտպանության, հանուն կոմունիզմի հաղթանակի:

Աշխատավորության կոմունիստական դաստիարակությունը կոմունիզմի կառուցման գլխավոր խնդիրներից մեկն է: Մեր ժողովրդի գաղափարախոսական, աշխատանքային, բարոյական և ռազմահայրենասիրական դաստիարակությունն անքակտելի են: Պատերազմ, մարդիկ, նակատագրեր եռայրատումը նման դաստիարակության լավ ձեռնարկ է: Այն հետաքրքրությամբ են կարդում և՛ վետերանները, և՛ բանակի ու նավատորմի երիտասարդ մարտիկները, և՛ քաղաքի ու գյուղի աշխատավորները, և՛ ուսանողներն ու դպրոցականները:

Ա. Վ. Ղազարյանի աշխատությունն արգասիք է բազմամյա մանրակրկիտ աշխատանքի, վավերագրական տվյալների և նյութերի որոնումների ու հմուտ ուսումնասիրության: Ներկայացվող փաստերը հակիրճ են, համոզիչ, գրված են զինվորական գործին և մարտական գործողությունների օրենքներին խորագիտակ պրոֆեսիոնալ ռազմական գործչի ու փորձառու գրողի գրչով: Մարդկանց, նրանց ռազմական սխրագործությունների մասին այդպես հուզմունքով, ճշմարտացի ու պատկերավոր լեզվով կարող է գրել միայն նա, ով անցել է զինվորական ծառայության երկար ուղի, պատերազմի դաժան դպրոց, ապրել դրա ծանր առօրյան, վիշտն ու ուրախությունը: Ծնվելով գյուղացու աղքատ ընտանիքում, դառնալով պրոֆեսիոնալ զինվորական, Ա. Վ. Ղազարյանը զինվորից դարձել է գեներալ, առաջինից մինչև վերջին օրը մասնակցել Հայրենական պատերազմին, եղել տանկիստ-հրամանատար, թշնամու հետ մղած մարտերում հինգ անգամ վիրավորվել, իր սխրագործությունների համար արժանացել է Սովետական Միության հերոսի վեհ կոչման ու մարտական այլ պարգևների: Այսօր ևս պատերազմի երախտավոր վետերանը մարտական պոստում է՝ հանրապետության զինվորական կոմիսարն է նա և օգնում է հայրենիքի պաշտպանական հզորության հետագա ամրապնդմանը: Ցանկանք նրան ռազմահայրենասիրական նորանոր երկերի հրապարակումներ:

**Մ. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ**

Պատմական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր, պահեստի գնդապետ

# 1980 թվականին «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## ՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ









## ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ



## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 110-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ԱՌԱՋՆՈՐԴԻ ԿԵՐՊԱՐԸ ԺՈՂՈՎՐԴԻ ՍՐՏՈՒՄ



## ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԸՆԴԱՌԱՋ



## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԿԿ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 60-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

Адрес редакции: 375033. Ереван-33 ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 1.12.80—10.12.80; Ստորագրված է տպագրության 19.12.80. ՎՖ 06101. Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15.782: Պատվեր 2787:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Իսահակյանի փող. № 28:*

Типография издательства ЦК КП Армении. 375009, Ереван-9, ул. Исаакяна 28.


## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Լենինյան կուրսով: Հ. 7: *«Հայաստան» հրատ., 1980:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Ճառ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումում *1980 թվականի հոկտեմբերի 21-ին:* ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումը: *«Հայաստան» հրատ., 1980:*

Կ. ԴԵՄԻՐՃՅԱՆ— Սովետական Հայաստան: *«Հայաստան» հրատ., 1980:*

Է. ՇԵՎԱՐԴՆԱՁԵ— Սովետական Վրաստան: *«Հայաստան» հրատ., 1980:*

Հավերժ բարեկամություն: *Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի տոնակատարության նյութերը: «Հայաստան» հրատ., 1980:*

Ալբերտ Էյնշտեյն: *Ծննդյան 100-ամյակի առթիվ: Խմբագրությամբ Վ. Համբարձումյանի: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Վ. ՀԱՄԱԶԱՍՊՅԱՆ— Սովետական Հայաստանը և սփյուռքը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Գ. ԱՆԱՆՅԱՆ— Չարենցի հետ: *Ե., «Լույս» հրատ., 1980:*

Ե. ԿԱՍԱԲՈՎԱ— Աշխատանքի պաշտպանության իրավական նորմերը զարգացած սոցիալիզմի հասարակությունում: *Ե., ԳԱ հրատ. 1980:*

Մ. ՄԻՆԱՍՅԱՆ— Արտադրական կոլեկտիվի զարգացման դիալեկտիկան արդի պայմաններում: *«Հայաստան» հրատ., 1980:*

Զ. ԿՈՄԻԴՈՎՍԿԻ— Բիբլիական ավանդապատումներ: *«Հայաստան» հրատ., 1980:*

Թող չփչի խավարը: 18-րդ դարի մատերիալիստները աթեիզմի, կրոնի, եկեղեցու մասին: *Հեղինակային կոլեկտիվ: «Հայաստան» հրատ., 1980:*

Լ. ԱՅՈՒՆՑ— Դատիարակությունը Ուլյանովների ընտանիքում: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Ս. ԲԱՍԿԻՆԱ— Երբ պատասխանատու ենք երկուսով: *Ե., «Լույս» հրատ., 1980:*

Վ. ՍԻՐԶՈՅԱՆ— Աշխատանքը առաջին կենսական պահանջմունք: *«Հայաստան» հրատ., 1980:*

В. И. ЛЕНИН — **О социалистическом преобразовании сельского хозяйства. Сборник** М., Политиздат, 1980.

**XXV съезд КПСС: единство теории и практики.** Вып. 6. М., Политиздат, 1980.

Н. ТИХОНОВ — **Избранные речи и статьи.** М., Политиздат, 1980.

**Забота партии и правительства о благе народа.** Сборник документов (1974 г. — февраль 1980 г.). Кн. 2, М., Политиздат, 1980.

А. ВИШНЯКОВ — **Политика КПСС: методологические проблемы и практика.** М., «Мысль», 1980.

**Советский Союз на международных конференциях периода Великой Отечественной войны.** 1941—1945 гг., т. 5. Сборник документов. М., Политиздат, 1980.

**Рассказы о партии.** Т. III. Изд. третье, доп., М., Политиздат, 1980.

**Народное хозяйство Армянской ССР за 60 лет.** К 60-летию Армянской ССР и Компартии Армении. Изд. «Айастан», 1980.

**Развитие советского народа — новой исторической общности.** М., Политиздат, 1980.

Г. СМИРНОВ — **Советский человек.** Формирование социалистического типа личности. Изд. 3-е, доп. М., Политиздат, 1980.

В. БОЛЬШАКОВ — **Бизнес на правах человека.** М., «Мысль», 1980.

**Наука и актуальные проблемы развития народного хозяйства.** М., «Наука», 1980.

**Эффективность социалистического производства.** М., «Экономика», 1980.

Р. БЕЛОУСОВ — **Развитие демократических начал в управлении социалистическим производством.** М., Профиздат, 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130--8114

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԼՐԱԳՐՈՂ

Պերմի Վ. Ի. Լենինի անվան մեքենաշինական գործարանում լույս տեսնող լրագրի խմբագրությունը համալրվեց արտասովոր մի աշխատակցով՝ ձեռնարկության էլեկտրոնային հաշվիչ մեքենայով։ Նրա բազայի վրա ստեղծվել է հրատարակման գործը դինամիկ կառավարելու ավտոմատ սիստեմ, որն օգնում է լուծելու մոտ 100 տարբեր խնդիրներ։

ԷՀՄ-ն ուշադրությամբ «կարդում է» լրագրի յուրաքանչյուր համար՝ հաշվի առնելով և վերլուծելով նյութերի թեմատիկան, դրանց ժանրերն ու «աշխարհագրությունը», ձևավորումը և նույնիսկ համարում թույլ տրված սխալները։ Այն հիշողության մեջ պահում է խմբագրության բոլոր արտահաստիքային թղթակիցներին (իսկ նրանք հազարից ավելի են), լրագրողներին մատակարարում է օպերատիվ ինֆորմացիա ձեռնարկության արտադրամասերի ու տեղամասերի աշխատանքների մասին։ «Հսկիչ» հատուկ ենթասիստեմը հնարավորություն է ընձեռում հետևելու լրագրի ելույթների նկատմամբ ցուցաբերվող վերաբերմունքին։

## ՆՈՐ ՍԱՐՔ

ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի աշխատանքի հիգիենայի և պրոֆհիվանդությունների գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները «Էլեկտրոնիկա» գիտահետազոտական ինստիտուտի մասնագետների հետ մեկտեղ մշակել են մարդու տեսողական ընկալման արագությունն ու սրությունը որոշող սարք։ Այն կիրառվում է գիտնականների լաբորատորիաներում, կլինիկաներում, պրոֆեսիոնալ կողմնորոշման կաբինետներում, ինչպես, օրինակ, հատկապես ճշգրիտ և տեսողական լարվածություն պահանջվող աշխատանքների համար մասնագետներ ընտրելիս։

## ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍԱՅԻՆ «ՖՈՏՈՆ—2» ՀԱՄԱԼԻՐ

Չելյաբինսկի պոլիտեխնիկական ինստիտուտում գործում է ԷՀՄ-ին միացած հեռուստատեսային-էլեկտրոնային սարքավորման ինքնատիպ համալիր, որը հնարավորություն է ընձեռում առավել ինտենսիվացնել ուսումնական պրոցեսը։ Այդ սարքավորման օգնությամբ կարելի է ցանկացած պահին դասախոսությունը լուսաբանել կինոծրագրով, տեսագրությամբ, դիապոզիտիվով, նկարով, գծագրով, ֆորմուլայով, խոշորացնել և առանձնացնել մանրամասները, որոնց վրա հարկ է բևեռել ուշադրությունը։ Ցանկացած պահին կարելի է նաև ստուգել, թե ուսանողների կողմից նյութը ինչպես է յուրացվում։

## ԻՆՉՊԵՍ ԲԱՇԽԵԼ ՕՐԱԲԱԺԻՆԸ

«Նախաճաշը կեր ինքդ, ճաշը կիսիր բարեկամիդ հետ, իսկ ընթրիքը տուր թշնամուդ». այս հանրահայտ խորհրդին հակառակ, շատերը սովորություն ունեն չնախաճաշել՝ քնի համար շահելով ևս մի քանի րոպեներ, աշխատավայրում բավարարվում են բուտերբրոդով ու թեյով, իսկ երեկոյան կուշտ ընթրում են։ Պարզ է, որ օրաբաժնի նման բաշխումը վատ է անդրադառնում գիշերվա քնի վրա։ Ռ. Գետի հետազոտությունը (Նյու-Յորքի համալսարան) ցույց է տվել, որ բացի դրանից՝ նման սովորույթը նպաստում է նաև գիրացմանը։

Մեր օրգանիզմի ողջ կենսագործունեությունն օրվա ընթացքում ենթակա է որոշակի փուլային փոփոխությունների։ Դա վերաբերվում է նաև արյան մեջ եղած ինսուլինի մակարդակին։ Այն երեկոյան ժամերին հասնում է իր բարձրակետին, որը և նպաստում է ճարպի արագ անջատմանը։ Փորձերը ցույց են տվել, որ առավոտյան ժամը 7-ին 2000 կալորիայի գործածումը չի ազդում մարմնի քաշի վրա և նույնիսկ պակասեցնում է այն, իսկ երեկոյան ժամը 6-ից հետո նույն քանակության ընդունումը ավելացնում է քաշը։

Գետին առաջարկում է երեկոյան ժամերին ուտել ցերեկային օրաբաժնի 30 տոկոսից պակաս բաժինը, իսկ առավոտյան՝ ոչ պակաս 35 տոկոսից։ Նախաճաշը պետք է պարունակի զգալի քանակությամբ սպիտակուց։